# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՎԱՐՈՒՑ

# ՌՕՊԻՆՍՕՆԻՆ

ՔՐՈՒԶՕԷ

ԹԱՐԳՄԱՆԵԱԼ Ի ԳԱՂՂԻԱԿԱՆ ԼԵԶՈՒԷ
ՅԱՇԽԱՐՀԱԲԱՐ

Ի Հ. ՄԻՆԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԷ ԲԺՇԿԵԱՆ
Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ

ԿՐԿԻՆ ՏՊԱԳՐԵԱԼ




Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՍՈՒՐԲՆ ՂԱԶԱՐ

1836

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Փիլիսոփաներն ըսին թէ ամէն մարդ միակերպ ըստեղծուած է. ամենուն հոգին և բնական կատարելութիւնն մէկ է. միայն կրթութիւն ու քաղաքավարութիւնն է որ մարդ մարդէ և խելք խելքէ կորոշէ. որը շատ որը քիչ կատարեալ կըլնէ. որ ըսել է թէ մարդս կրթութեամբ ամէն կատարելութիւն կրնայ ստանալ. և առանց կրթութեան անքաղաքավար մնալով մարդկութէն կելլէ, անասնոց կարգը կըմտնէ:

Ահա զայս ճշմարտութիւնը յայտնի կընէ Ռոպէնսոնին վարքը. որ անկիրթ մնալով ուսկից ուր հասաւ, և եւրոպայի մէջ մեծնալով ինչ կերպ թանձրամիտ և անհնազանդ մնաց: Իսկ անմարդաբնակ երկիրները այն խեղճ առանձնութեան մէջ զինքը կրթելով, որչափ կատարելութիւն ստացաւ: Ահա մէկ հայելի մը եղաւ, որ ամէն վիճակի մէջ եղողները կրնան մէջը նայել: Ուստի այս պատմութիւնը ոչ միայն մարդկային մտաց ուժը,

Առջի պատմիչը այսպէս կըվկայէ. «Այս
» պատմութիւնը (կըսէ) թէպէտ շատ զար-
» մանալի է, բայց չինծու ձեւացուցած բան
» չէ. այլ ճշմարիտ պատմութիւն է, և բա-
» րոյական խրատ ամէն մարդու »։ Առջի
գրված պատմութեան մէջ ընդարձակ կըդնէ
Ռոպէնսոնին օրագրութիւնը. որ ամէն օր
գլխուն եկած բաները՝ իրեն ծառէ շինած
օրացուցին վրայ կընշանէ եղեր. որ ետքը
գրիչ թուղթ որ գտաւ՝ բոլորը կարգի գրաւ
գրեց ամէն պարագաներով։

Սակայն աւելի օգտակար և ախորժելի
եկաւ մեզի այս համառօտը թարգմանել,
քան թէ ընդարձակը. թէպէտ տեղ տեղ
ծանօթութեան մէջ օրագրութենէն պէտք
եղած բաները նշանեցինք, և վերջնալ յա-
ւելուած ըրինք Ռոպէնսոնին մնացած վարքն
ալ պատմելով. որպէս զի մեր մանկանց ա-
խորժակը բանանք. որ աւելի ջանան բան
սորվիլ, նաև Ռոպէնսոնին վարքը իրենց
խրատ ընելով առաքինի ըլլան։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՆՈՐ ՌՕՊԷՆՍՕՆԻՆ [1]

### Ա. Դիպուած:

Համպուրկ քաղաքը մէկ մարդ մը կար Ռօպէնսօն անունով. այս մարդս իրեք որդի ունէր. անդրանիկը ուզեց զօրական ըլլալ և զինուոր գրուեցաւ. ետքը մեռաւ պատերազմի մէջ Փրան-

1 Ռօպէնսօնին առջի գրուած պատմութիւնը այսպէս կըսկըսի. „Ես ծնած եմ յամի տեառն 1632. հայրս էր Ինկիլթէռայի Եօրք քաղաքէն. վաճառականութ̅բ եկաւ հոս մօրս հետ պսակուեցաւ. բայց մօրս ցեղին անունը Ռօպէնսօն ըլլալուն համար՝ մենք ալ Ռօպէնսօն կոչուեցանք, թէպէտ իմ անունս էր Քռուզօէ:

սրզներուն դէմ [1]: Երկրորդ-
որդին կամեցաւ ուսումնական
կարդացող ըլլալ. բայց օր մը
շատ խմելով կուրծքի հիւան-
դութին եկաւ վրան. վերջապէս
գլուխ չազատեց մեռաւ: Մնաց
պզտի որդին որ կըսուէր Քրու-
սօէ Ռօպէնսօն. Հօրն ու մօրը յոյ-
սը մնաց միայն այս մէկ հատիկ
տղուն վրայ, որ իրենց աչքի
լուսին պէս կըսիրէին. սակայն
ասոնց սէրը անկարգ ըլլալուն
համար, թող տուեր էին, որ ի-
րենց սիրական զաւակը իր ամէն
կամքը կատարէ. ուստի աւելի
կախորժէր խաղալ, քան թէ
աշխատիլ և բան սորվիլ. գրե-
թէ բոլոր օրը խաղալով կանցը-
նէր առանց բան մը սորվելու:

Մեծցաւ այս Ռօպէնսօն, բայց

1 Ամպուրկ է մեծ քաղաք գեղեցիկ և հարուստ 120 հազար բնակիչ ունի. նեմ-ցեստանի Ճոթը էլպա գետին վրա շինած է, որ մեծ ծովը կըթափի. ամէն աշխարհքէն նաւ կուգայ այս քաղաքը:

ամենևին իրեն պետք եղած բաները չգիտէր. Հայրը կըփափաքէր որ տղան վաճառականութիւն սորվի. իսկ տղան ամենևին կամք չունէր բան մը սորվելու. վասն զի աւելի կըխորհէր քաղքէ քաղաք պտըտիլ. և ամէն օր նոր նոր բաներ լսել և նոր նոր տեղեր տեսնել [1]: Սակայն այս պատանին խիստ անմտութեամբ այս բանը կը մտածէր. իրաւի էր եթէ առաջուց սկսած ըլլար բան սորվելու, ճամբայ ընելը աղէկ կրնար ըլլալ, բայց այսպիսի խեղճ տղան որ բան չգիտէր՝ ինչպէս պիտի աշխարհք տեսնէր, և ինչ շահ իրեն պիտի ըլլար: Երբոր Հանդիպի քաղաք մը երթալ՝

1 Ռոպէնսոն կըսէ, թէ հայրս խելացի բարակ մարդ ըլլալով՝ շատ երևելի դպրատուններ դրաւ զիս որ գիտութիւն և արուեստ սորվիմ, բայց ես խելքս միտքս տվէր էի ժուռ գալու, ինձի ձանձրութիւն կուգար: Շատ անգամ զիս խրատելով գլխուս գալիքները մարգարէի պէս առաջս կըդնէր, ու ես մտիկ չէի ընէր:

պէտք է առաջ աշխարհագրութեան և վաճառականութեան լաւ տեղեկութիւն ունենալ. բայց Ռոպէնսոն մինչև անատենը մտքէն ալ չէր անցուցած բան սորվիլ և տեղեկութիւն ունենալ, որ արդէն 17 տարուան էր՝ իր ժամանակին մեծ մասը ճամբաները քալելով անցուցեր էր։

Ուրիշ բան չիյտէր բայց եթէ ամէն օր նեղութիւն կուտար հօրն որ իրեն հրաման տայ ճամբորդութիւն ընելու. իսկ հայրը պատասխան կուտար, թէ ամենևին մտքէն չանցընէ և իրեն չըսէ անանկ բան, վասն զի չուզէր լսել ճամբորդութեան խօսքը։ Իսկ խեղճ մայրն ալ քանի որ կը լսէր այս բանը լալով կաղաղակէր. որդեակ իմ որդեակ իմ նստէ այս քաղքիս մէջն ու բան սորվէ։ Օր մը ինչպէս որ սովորութիւն ըրեր էր՝ դուրս ելաւ պարապ ժուռ կուգար, պատահեցաւ ընկերներուն մէկին, որ նաւապետի մը

որդի ըլլալով նոյն օրը իր հօրը հետ ճամբայ պիտի ելլէին դէպ 'ի Լօնտռա երթալու։ Ընկերը հարցուց իրեն, թէ կուզէ՞ս դուն ալ մեզի հետ գալ։ Պատասխան տուաւ Ռօպէնսօն, թէ ո՜ւր էր խիստ շատ կուզէի, բայց իմ ծը-նողքս չէին ուզեր։ Կրկնեց ընկե-րը. թէ եկո՛ երթանք միատեղ. շատ կուրախանաս, ինչպէս կար-ծեմ՝ ահա իրեք շաբթըվան մէջ կը դառնանք կուգանք. իսկ հօրդ մօրդ կողմանէ ուրիշ բան չես ը-ներ, բայց եթէ ուրիշի ձեռքով կիմացընես երթալդ։ Հապա ես ծոցս ստակ մը չունիմ ըսաց։ Հոգ չէ ըսաւ ընկերը, ես քու տեղդ կը վճարեմ բոլորը, մինչև որ դառնանք[1]։

1 Ռօպէնսօն երկար կըպատմէ այս չար ընկերին խօսքերը. այնչափ որ կըսէ՝ խելքս գլխէս առաւ. առանց ծնողացս օրհնութը առնելու, և առանց բանի մը նայելու խղճմտանքիս դէմ ըրի, որ դեռ ողջ էր, չէր մեռած խիղճս։ Նաւը մտած օրս էր սեպտեմբերի մէկը 1651 ին։

Այս միջոցս Ռոպէնսոն քիչ մը ինքնիրեն մտածեց, ու մէկէն ընկերոջը խօսքին հետեւելով կանչեց. լա՛ւ ըսիր եղբայր՝ ես քեզի հետ եմ. շուտով նաւն երթանք։

Յետոյ մէկ բարեկամին ապսպրեց որ երթայ հայրը գտնէ, ու պատմէ իրեն ճամբորդութիւնը և ըսէ, թէ միայն ինկիլթէրա տեսնելու համար կերթայ, հոգ մընէր քիչ ատենէն պիտի դառնայ։ Եւ այսպէս այս երկու բարեկամները գացին նաւը մտան։

Նաւավարները նաւին երկաթը վերուցին և առագաստները բացին, սկսաւ հովին առաջ տանել նաւը. նաւապետն ալ մնա՛ք բարով ըսելով նետեց 10 անգամ թնդանօթը (թօփը)։ Իսկ Ռոպէնսոն նաւին վրայ կեցեր ընկերոջը հետ կը զուարճանար ճամբայ երթալուն համար, որ նոր տեղեր պիտի տեսնէ։ Ելած օրերնին խիստ գեղեցիկ էր օդը.

հովին ալ այնչափ յաջող էր, որ շուտ մը աներևոյթ եղաւ Ամպուրկ քաղաքը, և հետևեալ օրը հասան մինչև Ռիզէպուլթէլ. ուր տեղէն որ Էլպա գետը կանցնի կը թափի մեծ ծովը. նոյն օրը մտան գերմանական ծովը [1]:

Նաւատէնը երբոր Ռօպէնսօն բացաւ աչքը նայեցաւ՝ ուրիշ բան չի կրցաւ տեսնել, միայն երկինք ու ջուր կար աչքին առաջը. վասն զի ելած երկիրները կամաց կամաց աներևոյթ եղան առջևէն: Անանկ որ այլ բան չէր տեսնէր բաց 'ի մեծ Ճրագէն, որ կրվառեն Հէյլկնէլանտ կղզին. անալ շուտով աներևոյթ եղաւ. ուստի Ռօպէնսօն նայեցաւ, որ

1 Էլպա գետը մեծ և շատ շահաբեր գետ է, որ Ամպուրկին քովէն կանցնի կերթայ գերմանական ծովը կը վազէ. որ է ահագին ովկիանոսին մէկ ծոցը պալթիկ ծովին մօտ. այս տեղէն անցան մտան մեծ ծովը: Ռօպէնսօն կըսէ թէ առջի խեղճութիւն եղաւ, որ անսովոր ըլլալով ծովը գլուխ բռնեց չարաչար կը նեղէր:

վրան երկինքն է, և չորս դին ծով։

Երկու օր խիստ յաջող և լաւ էր հովը, բայց երրորդ օրը երկինքը ամպով գոցվեցաւ, օդը մթընցաւ և հովը սաստկացաւ։ Մ՛էյմը կըփայլատակէր՝ կարծես թէ բոլոր երկինքը կը վառի. մէյ մը անանկ կըմըթննար, որ կերևնար թէ խաւար գիշեր է. ետքը սկսաւ ամպը սաստիկ գոռալով որոտում ընել, անանկ որ չի դադրեցաւ մինչև ետքը։ Անձրևը գետի պէս կուգար, և փոթորիկը ահագին ալէկոծութի̃ կընէր ծովուն մէջ. իսկ ալիքները լեռան պէս կելլէին կիջնէին։ Տեսնելու բան էր նաւը, թէ ինչպէս ալիքներուն մէջ մէյ մը վեր կելլէր, մէյ մը վար կիջնէր. երբեմն մէկ ալիքը կառնէր մինչև ամպը կըհանէր, և երբեմն մինչև անդունդը կըձգէր. երբեմն մէկ կողմը կըպառկէր, երբեմն մէկալ կողմը։ Չըւաններուն ձայնը և նաւին աղաղակը ողոր-

մեւլի կը լավէր . ամէն մարդ մէյ-մէկ քանի քունէր կը դողայի՛ն , որ վար չիյնի՛ն ։

Իսկ Ռոպէնսոն՝ որ քանի մը ընելու կարողութի՛ն չունէր , խելըքը դարձած ընկեր էր հիւանդ , անանկ սիրտը կըխառնըվէր , որ կերեւնար թէ հոգի՛ն պիտի տայ . անդադար խեղճ ընելով կաղաղակէր . ո՛հ իմ ծնօղքս , իմ ողքալի ծնօղքս մէյմալ զիս չպիտի տեսնէք . ի՛նչ անխելքութի էր որ ես ըրի , ու ասանկ կըտանջըվիմ ։

Այս միջոցիս մէջ ձայն մը լըսվեցաւ վերէն . սկսաւ նորէն աղաղակել , երեսը մեռելի գոյն , ձեռքերը իրար փաթթած կը պօռար յուսահատութեա՛ ։ Արդեօք երկինք ողորմեցաւ մեզի . այս ի՛նչ ձայն է , կըհարցընէր կիսամեռ վախուն ։ Ահա կորանք կըսէր , կայծակը զարկաւ կտոր կըտոր ըրաւ կայմը (տիրէկը) . ահա՛ մեծ կայմն ալ անանկ որ-

կարացաւ , որ հիմա պիտի կտո-
րի ծովն իյնի ։

Նորէն կաղաղակէր ․ կորանք կորանք ․ ահա նաւը ջուր առաւ չորս ոտքէն աւելի ։ Ասանկ խօսելով պառկեր էր Ռօպէնսօն տախտակին վրայ՝ նայիս գլորեցաւ ընկաւ ․ և բոլոր ճանաչմունքը կորսընցուց բան չէր իմանար ։ Նաւին մէջ ամէնքը վազեցին ջրհանին (Թուլումպային) քով ․ որ հնարքով ջուրը պարպեն ազատին վտանգէն ․ որոնք չափէն աւելի կաշխատէին ։

Նաւատէնը մէկ նաւավար մը եկաւ Ռօպէնսօնին քով շարժեց զինքն ըսելով , թէ դուն մինակ կաս ասանկ անշարժ ընկած առանց աշխատելու ․ ահա բոլոր նաւին մարդիկը չափազանց կաշխատին , դուն ինչո՞ւ չես աշխատիր ․ ինչևիցէ ճար ըրաւ վեր ելաւ , թէպէտ շատ տկար էր , գընաց ջրհանին քով աշխատողներուն օգնութիւն ընելու ։

Իսկ նաւապետը քանի մը անգամ թընդանօթը նետեց, որ եթէ մօտ տեղեր նաւ գտնըվին, նշան տայ թէ վտանգի մէջ են, չի հեռանայ գայ իրենց օգնէ։ Ռօպէնսօն այս բանը չգիտնալով թէ ի՞նչ կը նշանակէ. երբոր լըսեց այս ձայները կարծեց թէ նաւը կործանեցաւ. ուստի նորէն ընկաւ մարեցաւ. մէկ նաւավար մը իր տեղն անցաւ, ու տաքով մէկ դի հրեց զայն, թողուց անանկ գետինը բռված՝ կարծելով թէ մեռած է։

Շարունակ կըքաշէին ջըհանը ամենայն ջանքով. բայց ջուրը միշտ կը բարձրանար նաւին գոգը. անանկ որ նաւն սկսաւ երթալ ծովին տակը. ուստի թեթեւցընելու համար՝ ամէն բան ծովը նետեցին, թնդանօթները, գնտակները, տակառները (փչիները), եւն. սակայն ամենեւին շահ չըրաւ։ Մէկ նաւ մը հեռուէն լսեց ասոնց տված նշանը՝

մակոյկը (սանտալը) խորկեց, որ զասոնք ազատէ. բայց այս մակոյկը չի կրցաւ մօտենալ նաւին. վասն զի ալիքները սաստիկ վեր կը վերցընէին. վերջապէս նաւին գլխուն դիէն մօտեցաւ, որ կարենայ չուան նետել նաւին մէջի եղողներուն. որպէս զի մակոյկը կարենան իրենց մօտեցընել: Եւ այս ճամբայով կարողութ̃ի ունեցողները ձաթկեցին մակոյկին մէջ: Իսկ որովհետև Ռոպէնսօն ոտքի վրայ չէր կրնար կենալ, մէկ քանի նաւավար խըղճալով բռնեցին զինքը մակոյկը նետեցին: Հազիւ թէ բաժնըվէր էին նաւէն, մէկէն նաւը գնաց ծովին տակը: Նայիս ալէկոծութ̃ին ալ սկսաւ քիչ քիչ դադրիլ. թէ չէ ալիքները կընկղմէին մակոյկները, որոնց մէջ այնչափ մարդիկ լեցուն էին: Այս վըտանգներէն անցնելէն ետև գնացին հասան նաւին, և ամէնքը մտան հոն ազատեցան: Զորս օ-

ին եւ նաւը հասաւ Թամիզ գետին բերանը և հինգերորդ օրը երկաթ նետեցին Լօնտրայէն ուջին [1]։

Նաւատէնը ամէնքը գետինն ծնկած կուրախանային որ անանկ մեծ վտանգէ ազատեցան ։ Իսկ Ռօպէնսօն ամէն բանէն առաջ աչքը վերցուց Լօնտրա քաղքին նայեցաւ ։ և այն կետին մէջ բոլոր քաշածները ու չարչըքները մոռցաւ ։ Յետոյ ըստամոքսը իրեն հասկըցուց , թէ անօթի է՝ պէտք է բան ուտել , և ապրուստ ճարել եթէ կուզէ ապրիլ այն մեծ քաղքին մէջ ։ գնաց որ իր նաւապետը գտնէ , որուն հետ միատեղ գացեր էր ։ և խնդրեաց որ շնորհք ընէ իրեն

1 Թամիզ է երևելի գետ Ինկիլթէռայի ։ նաւերով լեցուն է ։ որ կըլթայի մեծ ծովը Լօնտրայէն հեռու ։ Ռօպէնսօնին նաւը պա գետէն ելաւ մտաւ մեծ ծովը ։ անկէ նեղուցէն անցնելով եկաւ Թամիզ գետին քովէն Լօնտրա հասաւ ։

սեղանն առնէ զինքը։ Անալ բա-
րերարութին ընելով սեղանն ա-
ռաւ․ կերակուրին ատենը հար-
ցուց, թէ ի՞նչ պատճառաւ Լօն-
տոա եկեր էր․ և ո՞վ զինքը հոն
խրկեց։ Ռօպէնսօն շիտկէ շիտակ
պատմեց անոր, թէ ուրիշ բանի
համար չէր ըրած այս ճամբոր-
դութիւնը, բայց եթէ զբօսանաց
համար, և առանց ծնողացն հրա-
մանին եկած էր․ նաև չէր գի-
տէր թէ ի՞նչ պիտի ըլլայ անկէ
ետև։

Նաւապետը կանչեց բոլորո-
վին դողալով, և դանակը ձեռ-
քէն վար ձգելով ըսաց․ Առանց
ծնողացդ հրամանի՞ն եկար։ Տէր
ա̃ծ, ես ինչո՞ւ համար առա-
ջուց չգիտցայ․ հաւատացի՛ր ան-
խոհէ՛մ պատանի, թէ որ առա-
ջուց գիտնայի Ամպուրկ քաղա-
քին մէջ՝ ո՛չ երբէք քեզ նաւս
կառնէի․ թէպէտև բիւր հազար
ոսկի վարձք տայիր։ Ռօպէնսօն
առջին նայելով ամօթն երեսը

կարմրցուց, ամենևին ձայն չէր հաներ. իսկ բարեպաշտ նաւապետը շարունակելով իր խօսքը՝ առաջարկեց ինծի ըսելով, թէ դուն ամենևին աղէկութիւն և հանգիստ չպիտի գտնես, մինչև որ խելքդ գլուխդ չի ժողվես, ու ծնողացդ օրհնէնքը չառնես: Ռօպէնսօն սկսաւ լալ սաստիկ: Հապա ես հիմա ի՞նչ պիտի ընեմ, հարցուց: Գիտե՞ս ի՞նչ պիտի ընես՝ ըսաւ նաւապետը. դարձի՛ր շուտով ծնողացդ տունը. ոտքերնին ինկի՛ր, ու ճշմարիտ սրտով զղջա՛, և ինչպէս անառակ որդի մը թողութիւն խնդրէ ըրած անկարգութեանդ համար, ահա՛ այս է քու ընելու պարտքդ:

Խնդրեմ, ըսաց Ռօպէնսօն կըտանի՞ս զիս Ամպուրկ: Ե՞ս տանիմ՝ ըսաց նաւապետը, ուրեմն մոռցար, որ իմ նաւս ալէկոծութեն կորաւ. ես չեմ կրնար դառնալ Ամպուրկ՝ մինչև որ ուրիշ նաւ մը չի գտնեմ. և այս բանս

հարկաւ կուշանայ․ դուն չես կրնար այնչափ ժամանակ հոս մնալ։ Ահա առջի նաւն որ կերթայ Ամպուրկ, մտի՛ր մէջը գնա՛․ մի՛ ուշանար, նայէ օր մը առաջ հասնիս։

Բայց ես ստակ մը չունիմ ըսաց Ռոպէնսոն․ պատասխանեց նաւապետը, թէ ես քեզի քանի մը կինէ փոխ կուտամ՝[1], արովհետեւ հիմա ինծի շատ ստակ պէտք չէ․ ունեցածս ինծի բաւական է։ Ուրեմն գնա՛ շուտով նաւահանգիստը մէկ նաւ մը բռնէ՛ մտի՛ր մէջը․ եթէ քու զըղջումդ ճշմարիտ է, Ած քեզի հետ կըլլայ ճամբորդութեդ մէջ, և անանկ մը փառաւորէ քեզ որ մարդու մտքէն չէ անցած։ Զասանք ըսելէն ետեւ ձեռքը բռնեց

1 Կինէն ինկլիզի ոսկի է, և հոն գործածական ստակն է, որ իբր երկու մաճառ ոսկիի արժողջէք ունի․ Ռոպէնսոնը ամերիկայէն դառնալէն ետեւ այս փոխ առած ըստակը տվաւ նաւապետին․

թոթվեց բարեկամաբար՝ երթա՛ս բարով ըսաց։ Ռօպէնսօն ալ մնա՛ս բարով ըսելով գնաց։

Երբոր կերթար նաւահանգիստին Համբան՝ մտքին մէջ զանազան բաներ կըպտըտէր. կըմտմըտար թէ հիմա իմ ծընօղքս ի՞նչ պիտի ըսեն երբոր տուն դառնամ. յայտնի է, թէ զիս չարաչար պիտի պատուհասեն ըրած բանիս համար, և ընկերներս ալ ո՞րչափ վրաս պիտի խնտան, որ ասանկ շուտով դարձայ. գրեթէ երկու իրեք Համբայէն 'ի զատ ուրիշ բան չի տեսայ Լօնտոնայի մէջ։ Ասանկ մըտմըտուքով պաշարած էր, երբեմն կորոշէր որ չերթայ. երբեմն միտքը կը բերէր նաւապետին ըսած խօսքը, թէ մինչև որ ծնողացդ տունը չերթաս՝ աղէկութիւն չես գտնէր։

Երկար ատեն չխտէր թէ ո՞րն որոշէ, վերջապէս գնաց նաւահանգիստը, հարցուց հասկըցաւ,

թէ շիտակ Ամպուրկ երթալու պատրաստական նաւ չիկայ: Այս լուրն իրեն տուօղ մարդը նաւապետ էր, որ պիտի երթար Կիւինէ քաղաքը Ափրիկէի, որ ծովուն մօտ ըլլալով հոն շատ վաճառականութ̃ի կըլլայ [1]: Այս նաւապետը կախորժէր որ Ռօպէնսօնին հետ երկար խօսի, հրաւիրեց, որ իրեն նաւն երթայ գաւաթ մը չայ խըմէ · անալ հետեւելով գնաց նաւը:

Երբոր հասկըցաւ նաւապետը, թէ Ռօպէնսօն կըփափաքի ճամբորդութ̃ի ընել և քաղաքներ տեսնել, նաև ակամայ Ամպուրկ պիտի երթայ, իրեն ա-

[1] Կիւինէ մեծ քաղաք է Ափրիկէի, ոսկի շաքար և փղոսկր շատ կելլէ · ուստի եւրոպացոց մեծ վաճառականութ̃ե տեղն է · բայց բնակիչներն են սև մոլի և կատաղի մարդիկ, որ 50 տարիէն աւելի չեն ապրիր · երկիրը տաք ըլլալով ոչխարները բուրդի տեղ մազ ունին, և մարդիկ մազի տեղ բուրդ ունին: Այս երկիրը շատ զանազան քաղաքներ կըբաժնուի:

ռաջարկեց, որ Կիւրոն երթայ հետը: Ռօպէնսօն առջի բերանը սոսկաց այս խօսքիս վրայ, բայց Նաւապետը հասկըցուց անոր, Թէ այս ճամբորդութիւնը խիստ զըւարճալի գեղեցիկ պիտի ըլլայ. և իրեն հետ ընկեր ըլլալով ամենևին բան չի վճարէր, և առանց կերակուրի կերթայ. մանաւանդ որ այս ճամբան ընելով կրնայ շատ բան վաստըկիլ գացած տեղը:

Այս բաները լսելով մէկէնիմէկ սիրտը վառեցաւ և անանկ փափաքեցաւ այս ճամբորդութիւն ընելու, որ շուտ մը մոռցաւ մէկալ բարեպաշտ Նաւապետին իրեն տուած խրատները. և ինչոր քիչ մը առաջ մտքին մէջ դրեր էր, բոլորը Թողուց[1]: Ռօպէնսօն

1 Այսպէս կըգրէ Ռօպէնսօն. կարծէի Թէ քաղաքս որ դառնամ ամէնքը զիս ծաղր պիտի ընեն. մանաւանդ ծնողացս առջին ինչպէս պիտի ելլեմ. որչափ որ շատ մտածելով ատեն անցաւ, քաշած նեղութիւներս

քիչ մը մտմըտալէն ետև ըսաց, խիստ լաւ. բայց ես իրեք կինե֊էն 'ի զատ բան մը չուզիմ. այսչափ ստակով ի՞նչ պիտի ընեմ, և ի՞նչ բան պիտի գնեմ. որ գացած տեղս վաստակ ընեմ։ Պատասխան տուաւ նաւապետը, թէ ես քեզի կուտամ հոգ մընէ՛ր, շատ բան պէտք չըլլար գնելու. քիչ բանով շատ բան կրնանք վաստըկիլ հոն, եթէ բաղդերնիս բաց է։ Հարցուց Ռօպէնսօն, թէ ի՞նչ բան կտանին հոն ծախելու։ Անալ ըսաց, պէտք է տանել տղոց խաղալիք ամէն տեսակէն, սուտ մարգըրիտ, մկրատ, կացին, հրացան, ժապաւէն (շէրիտ) ևն։ Ասանկ բաները խիստ շատ կսիրեն սև ափրիկեցիք, որ հարիւր անգամ աւելի կըվճարեն ասոնց տեղը ոսկի, փղոսկր, և ուրիշ բան։ Ռօպէնսօնին խելքը գլխէն գը֊

ալ կամաց կամաց երևակայութէս ելան. ուստի աւելի հաւանեցայ որ ճամբայ երթամ։

նաց, և մէկէն հանեց մտքէն ծընողքը՝ բարեկամները, և հայրենիքն, ու սկսաւ ուրախանալով կանչել. կուգամ հետդ պարոն նաւապետ։ Ան ալ ըսաց, խօստ բարի. ձեռք ձեռքի տալով որոշեցին, որ միատեղ երթան։ Խեղճ ողորմելին չգիտէր, թէ ծնողքին դէմ ըրածը՝ ինչ պատիժին կուգայ. ահա ամէն պատիժին պատճառն ինքն եղաւ, որ զինքը ողորմելի պիտի ընէ, մոլորած ոչխարի պէս չգիտէ թէ ինչ պիտի գայ գլխուն. ասանկ զաւակին վրայ պէտք է որ ամէնքնիս ալ լանք։ Ինչ և իցէ Ռոպէնսօն ունեցած ստըկովը գնաց նաւապետին ըսած վաճառելու բաները գնեց՝ բերաւ նաւը դրաւ. քանի մը օրէն ետև հովը յաջող ըլլալով նաւապետը նաւին երկաթն առաւ, առագաստը բացաւ, ճամբայ ելան [1]։

1 Այսպէս կըխօսի Ռոպէնսօն տաճկի գը-

## Բ. Դիպուած.

Ռօպէնսօնին այս երկրորդ ճամբորդութենին ալ խիստ յաջողութիւն սկսաւ, որ առանց մէկ պատահմունքի մը անցաւ կիրճերը (պօղազները), և մտաւ Ատլանդեան ովկիանոսը: Շատ օր անցնելէն ետև մէկ հակառակ հով մը ունեցան, որ զիրենք միշտ

րած պատմութե մէջ. Երանի՛ թէ դառնայի ծնողացս քով. որոնք լսելով մեր նաւին կորուստը հարկաւ պաշարուած էին տրտմութ. արդար է որ զիս կըպատժէ. ատանկ անհընազանդ զաւակին արժանի է: Ո՛հ թէ որչափ պիտի ուրախանար հայրս զիս որ տեսնէր. սուրբ աւետարանին առակին պէս, տեսնելով անառակ որդին իրեն դարձած՝ շատ մեծ ցնծութի պիտի ընէր: Ռօպէնսօնին այս խօսքերը երանի՛ թէ գրվէին ամէն տղոց սրտին վրայ, որ մեծերուն հնազանդ ըլլան. ծնողաց խօսքը մտիկ ընեն. ու օգտակար բաներու հետ ըլլան քան սորվին. որ ետքը պարապ տեղը չի լան. վասն զի ետքի զղջումը օգուտ մը չունի:

դէպ 'ի Ամերիկա կըհեռացընէր, որչափ որ նաւը կըջանար իր ճամբան ընէ առաջ երթայ, այնչափ կըստիպէր հեռանալ հովին բըռնութէն. վերջապէս չդիմացան թող տվին որ հովն առաւ գըրէնք դէպ 'ի Ամերիկա կըտանէր [1]:

Մէկ իրիկուն մը նաւապետը իմացուց՝ թէ հեռուն կրակ մը կըտեսնեմ, նաև քանի մը թընդանօթի ձայն կըլսեմ այն կողմէն. ամէնքը վեր վազեցին տեսան կրակը, և շատ թնդանօթի ձայն ալ առին. նաւապետը սկըսաւ աշխարհացոյց թղթին վրայ քննել նայել, հասկըցաւ որ այն կողմերը ցամաք չ՚կայ, հարիւ-

1 Այս նաւը Լոնտոնայէն ելաւ Թամիզ գետն անցնելով հասաւ հիւսիսային ովկիանոս. անկէ դէպ 'ի արևմուտք դարձուց անցաւ կիրճերը մտաւ Ադլանդեան Ովկիանոսը. ուր չհասած քանարեան կղզիները անցնելով այխափ երթար Ափրիկէի ցամաքը. անկե Կիւինէ աչխափ երթար. բայց հովը հեռացնելով Ամերիկայի դին ձգեց:

րաւոր մղոն հեռուն են ցամա-
քէն . ուստի ամենքը միաբան դա-
տեցին, թէ այն կրակը ուրիշ բան
չէ, բայց եթէ մէկ նաւ մը կերի .
և որոշեցին որ խեղճերուն եր-
թան օգնութ̃ հասնին . նաւը այն
կողմը դարձուցին, շատ չանցաւ
տեսան որ ըրած կարծիքնին ի-
րաւ ելաւ . վասն զի յայտնի տե-
սան որ մեծ նաւ մը բռընկեր էր ։
Նաւապետը շուտով պատուի-
րեց, որ հինգ թնդանօթ նետե-
լով նշան տան անոնց, թէ մօտ
տեղ նաւ կայ, կը պատրաստուին
իրենց օգնութ̃ երթալու . բայց
հազիւ թէ այս գործողութ̃ ը-
րին, նայիս ահագին ձայնով վա-
ռած նաւը մէկէն երկինքը ելաւ
ու խնջաւ ծովուն տակը՝ կրակը
մարեցաւ ։ Այս բանէն յայտնի
եղաւ թէ կրակը հասեր էր վա-
ռօդին կամ ճէպխանէին տեղը .
բայց չի հասկըցաւ թէ մարդեօք
նաւին մէջի եղողներուն բոլորը
կորա՞ն, թէ չէ . վասնզի չէր կարելի

եր որ նաւը վեր չելած ոմանք մակոյկին մէջ մտեր փախեր էին։ Այս պատճառաւ նաւապետը բոլոր գիշերը շարունակ թնդանօթ կրնետէր. որպէս զի վտանգի մէջ եղողները լսեն ու հասկրնան, թէ որ կողմն ալ ըլլան՝ կուգեն ասոնք իրենց օգնութիւն հասնիլ. նաև բոլոր կանթեղները կախեցին, որ խեղճերը կարենան զիրենք աղէկ մը տեսնել։ Առաւօտանց որոշ տեսան զիտակով երկու մակոյկ լեցուն մարդ. որոնք ալիքներուն մէջ կելէին կինչէին. նաև տեսան որ հոծն իրենց հակառակ ըլլալով շատ դժուարութիւ կրքաշէին թի քաշելով դէպ իրենց գալու։ Նաւապետը դրօշակ (պայրախ) դնել տըվաւ, որ հասկընան թէ զիրենք տեսան, և պատրաստ են զիրենք ընդունելու։ Անտանկը բոլոր ուժով դէպ՝ի վրանին գացին, և կէս ժամուն մէջ հոն հասան. որոնք էին 60 անձինք, այր

կին և տղայ. որ եղան ասոնց նաւը ազատեցան ։

Տեսնելու բան էր, թէ ինչէ՞ր ըրին խեղճերը երբոր նաւը մը-տան. ոմանց ուրախուէ̃ն լեզու-նին կապված էր. ոմանք անանկ կըպօռային, որպէս թէ վտանգը նոր պիտի սկըսէր. ոմանք աս-դին անդին կըցաթկէին նաւին մէջ խելագարի պէս. ոմանց գոյ-նը փոխած ձեռք ձեռքի վրայ դրած կեցեր էին. ոմանք խենդի պէս կը ծիծաղէին, և պար խա-ղալով ուրախութե̃ ձայն կըհա-նէին, և ոմանք ալ վար ընկած անլեզու և անզգայ մ̃նացեր էին, մինչև խօսք մը չէին կրնար խօ-սիլ ։

Երբեմն ոմանք ծնկան վրայ կելլէին, թևերնին երկինքը վեր-ցուցած բարձր ձայնով մ̃յ չնոր-հակալ կըլլային, որ նախախնա-մելով զիրենք ազատեց այսպիսի հրաշքով. և երբեմն յանկարծ վեր կըցաթկէին տղու պէս կը-

խաղային, լաթերնին կըպատռէին. յետոյ լալով կխնէին անշարժ, ու հազիւ կրնային վրայ գալ: Ո՛րչափ խստասիրտ մարդ ըլլար հոն, այս խեղճութիւնները տեսնելով չէր կրնար զինքը բռնել որ չիլայ:

Այս խեղճերուն մէջ մէկ երիտասարդ եկեղեցական մը կար, որ ամէնէն արժանաւոր և բարեպաշտ էր: Երբոր նաւը մտաւ, մէկէնիմէկ անանկ երեսը գետինները քսելով թռվեցաւ, որ կարծէիր թէ մեռած է. նաւապետը մօտեցաւ իրեն որ զգաստացընէ կարծելով թէ մարած է: Բայց քահանան հանդարտ կերպով շնորհակալ եղաւ նաւապետին, որ իրենց այս ողորմութիւն ըրեր էր: Քիչ մը համբերէ կըսէր, իմ երկնաւոր ստեղծողիս շնորհակալութիւն ընեմ մեր ազատուելը համար. յետոյ դառնամ քեզ ալ սիրտի ընեմ, որ իմանաս թէ ինչպէս սրտանց կըճանչնամ ը-

րած բարերարութիդ ։ Նաւապետը այս խօսքերէն ամընչնալով եւ քաշուեցաւ ։

Րահանման քիչ մը ատեն ալ մնաց անանկ խոնարհ երեսի վրայ ընկած . յետոյ ելաւ ուրախութ գնաց Նաւապետին , որ անոր ալ յայտնէ իր երախտագիտութիւնը ։ Վերջը դարձաւ իրեն ընկերներուն ըսաց . Իմ սիրելի՛ բարեկամներ . քիչ մը սրտերնիդ թող հանդարտի . ամենաբարի արարիչը կամեցաւ իր հայրական ձեռքը մեր վրայ տարածել . պարտական էք , որ մտքերնիդ իրեն դարձնէք . ինչո՞ւ կուշանաք շնորհակալութի ընելու , որ ձեր կորած կեանքը ձեզի բաշխեց ։

Շատ մարդիկ մտիկ ընելով այս տված խրատը կատարեցին ։ Անկէ ետև սկսաւ պատմել ինչ որ իրենց պատահեր էր ։ Կը պատմէր թէ երած նաւը մէկ Փրանսըզ վաճառականի մը նաւ էր մեծ . որ պէտի Քէպէք քաղաքն

երթար [1]. կրակը պատահեցաւ
նաւապետին խուցին մէջ, և ա-
նանկ արագ բռնկեցաւ, որ չի
կրցանք ճար մը մտածել այս վը-
տանգին, միայն մէկ քանի թըն-
դանօթ նետելու ատեն ունե-
ցանք. հազիւ թէ մակոյկին մէջ
կրցանք զմեզ ձգել, առանց գիտ-
նալու թէ ի՞նչ պիտի ըլլանք։
Այս սոսկալի կետիս մէջ խիստ
զարհուրելի էր ալէկոծութին,
որ անդադար ալիքները մակոյ-
կին վրայ գալով կըխռովէին։
Թո՛ղ զայն որ անօթի ծարաւ կոր-
սըլվէինք պիտի. վասն զի երած-
նաւէն չի կրցանք պաշար առնել.
միայն քանի մը օրուան համար
հաց ու ջուր առինք։ Այս խեղ-
ճուն մէջ լսեցինք քանի մը թըն-

1 Քէպէք մեծ և գեղեցիկ քաղաք է Ա-
մերիգայի, ուր շատ վաճառականներ և շատ
վանքեր կան, պատուական նաւահանգիստ
ունի, և վաճառականութեն խիստ յարմար
տեղ է։ Անատենը Ֆռանսըզներուն ձեռքն
էր, անոր համար հոն կերթար այս նաւը։

դանօթի ձայն ինկիլիզ նաւի, և
մէկէն որոշելով հեռուէն տե-
սանք ճրագներ . անատենը յոյս
մը ունեցանք . բայց վախին ու
յոյսին մէջ մնացինք, բոլոր այն
տրտմալի գիշերը ալիքները ան-
դադար եւ կըհրէին մեզ, թէ-
պէտ մենք ամէն ուժով կըջա-
նայինք առաջ դէպ 'ի ձեր նաւը
գալ: Վերջապէս առաւօտը ծա-
գեցաւ, որուն այնչափ կըփափա-
քէինք, բոլոր ըրած հոգերնիս
վերջացաւ, եկանք հոս ազատե-
ցանք: Իսկ Ռօպէնսօն բոլոր այս
ատենս զարհուրելի մտածմունք-
ներով խռոված էր . մինչև ինքն
իրեն սկսաւ ըսել . յայտնի է թէ
ա͞ծ ամենաբարին այսչափ մարդ-
կանց մէջ շատ բարի հոգիներ
ունեցաւ, որ այս ահագին վը-
տանգէն ազատեց . եւ ինչ յոյս
պիտի ունենամ, որ ասանկ ա-
պերախտութ͞ն ըրած եմ ծնողացս
դէմ: Այս մտածմունքը անանկ
սիրտը տրորեց, որ կարծէր թէ

լեռ մը սրտին վրայ ինջաւ․ չա-
րագործի պէս մէկ դի քաշուած
անխօս և դեղնած, ձեռքերն ի-
րար կապեր նստեր էր, ու չէր
համարձակէր որ աղօթք ընէ․
վասն զի յոյս չունէր թէ ա̃ծ իրեն
պիտի ողորմի ։

Իսկ ազատողներն՝ որ հալած
մաշած էին աշխատանքով, հան-
գիստ առին զօրացան․ նայիս ի-
րենց գլխաւորը ձեռքը քսակ մը
լեցուն ստակ մօտեցաւ նաւապե-
տին ըսելով։ Այս ստակս բաժ-
նէ՛ անոնց որ եկան նաւով մեզ
ազատեցին․ և այս մէկ պզտի նը-
շան մը թո՛ղ ըլլայ երախտագի-
տութե̃ն, որ ամէնքս պարտական
ենք ձեզի մեր փրկութե̃ը համար ։
Պատասխան տուաւ նաւապետը,
թէ՝ ա̃յ դէմ կըլլայ, թէ որ քու
ընծայդ ընդունիմ․ վասն զի ես
ուրիշ բան չըրի ձեզի, բայց ինչ
որ մարդկային բնական գութն
ինձի ընել տուաւ ։ Ստոյգ գիտեմ
որ եթէ դուք մեր տեղն ըլլայիք,

ու մենքալ ձեր վիճակին մէջ դը
տնըրվէլինք՝ հարկաւ այս բանը կը-
նէիք մեզի ։

Երախտագէտ մարդը պարապ
տեղը կըստիպէր որ առնէ ըն-
ծան․ ամենևին չընդունեց նա-
ւապետը, նաև աղաչեց որ այլ
չիխօսի ։ Անկէ ետև սկսան մտա-
ծել, թէ այն ազատածները ու՞ր
պէտք էր տանել․ վասն զի Կիւ-
նէ երթալ անոնց խիստ յարմար
չէր երկու պատճառի համար․
նախ՝ այս խեղճերը պիտի պար-
տաւորէին այնչափ երկայն ճամ-
բայ ընելու․ ուր տեղ մէկ շահ
մը չէին կրնար ընել․ Երկրորդ՝
ճամբու պաշարնին քիչ կուգար
այնչափ մարդիկներուն այն եր-
կայն ճամբորդութեն մէջ ։ Վերջա-
պէս քաջ նաւապետը որոշեց, որ
այնչափ հարիւրաւոր մղոն պը-
տոյտ ընելով շատ չաշխատի այն
խեղճերուն համար․ հապա տա-
նի զիրենք Նոր երկիրը Ամերի-
գայի մօտ․ ուր տեղ շատ նաւեր

կըգտնըվին Փրանսըզ վաճառա-
կաններու, որ ձուկ կառնեն ան-
կէ, որոնց հետ դիւրաւ Փրանսա
կընային դառնալ[1]:

Ուստի տարաւ հանեց զանոնք
Նոր երկիրը ուր ձկանց առատու-
թեն ատենն ըլլալով շատ նաւեր
կային հոն. որոնք ընդունեցին
խեղճերն, որ Փրանսա տանին:
Անոնց շնորհակալութը և երախ-
տագիտութին որ ըրին նաւապե-
տին, չի պատմըվիր:

Իսկ նաւապետը զանոնք Փրան-
սըզի նաւերուն մէջ դրաւ, ու
ինքը շուտով դարձաւ առջի ճամ-
բան դէպ 'ի Կիւինէ քաղաքը յա-
ջող հովով. նաւը անանկ կըճըգ-

1 Նոր երկիրն է մեծ կղզի Ամերիգայի
կողմը 900 մղոն է բոլորտիքը. լեռնային ըլ-
լալով մեծ բերքն է պաքալա և մէրլուցցո
ձուկը. որուն համար ֆռանսըզներն ու Ին-
կիլիզները բնակութ ունին հոն. որ նաւեր
կերթան բեռցընեն կը բերեն Եւրոպա. և
ամէն տարի 60 նաւ գաղղիացի և 30 նաւ
ինկիլիզ կըլլան հոն: Այս երկիրը գտաւ մէկ
վէնէտիկեցի մը 1497 ին:

քեր ծովը կերթար, ինչպէս թռչունը օդը կը ճղքէ. որ քիչ ժամանակին մէջ հարիւրաւոր մղոն առաջ գնաց։ Ահա՛ այս էր Ռոպէնսօնին ուղածն, որ կը փափաքէր շուտով առաջ երթալ. վասն զի միշտ անհանդարտ էր սիրտը։ Միշտ դէպ՚ի հարաւ կերթային, քանիմը օրէն ետև յանկարծ տեսան մէկ մեծ նաւ մը, որ իրենց վրայ կուգար. քիչմալ անցաւ դիտեցին տեսան որ ալէկոծութեն քաշելով մէկ կայմը կոտրած էր. սկսան իրենց նաւն ալ այն նաւին վրայ շտկել. երբոր խիստ մօտեցան, որ կրնային խօսիլ. մէկալ նաւին մէջինները ձեռքերնին վերցուցած՝ խեղճ ընելով պօռացին այսպէս. ո՜վ ողորմած մարդիկ օգնեցէ՛ք այս խեղճ նաւին, որ ողորմելի մարդիկներով լեցուած է. եթէ չողորմիք մեզ, ամէնքնիս պիտի կորսուինք։ Ասոնք ալ հարցուցին, թէ ինչ է ձեր խեղճութիւնը. ա-

նաւաստեները մէկը իրենցմէ այսպէս պատասխան տըւաւ ։ Մենք ինկըլլիզ ենք . Ճամբայ ելանք որ մարթինիկ կղզին երթանք Ֆրանսըզներուն . գացինք հոն որ նաւը խահվէ բեռցընենք . երբոր երթալու վրայ էինք, նաւահանգըստին մէջ, մեր նաւապետը և երկըրորդական նաւապետը միատեղ դուրս ելան, քաղաք գացին բան գնելու ։ Այս միջոցիս մէջ նայիս յանկարծ փոթորիկ մը ելաւ . անանկ սաստիկ ալէկոծութի հանեց, որ խարսխին չուանը կտրեցաւ . հովը մեզ նաւահանգստէն դուրս նետեց մեծ ծովը ձգեց ։ Այս սոսկալի հովն, որ ուռական [1] կըսվի, իրեք օր իրեք գիշեր շարունակ փչեց կատաղու-

1 Ուռականն է հինտիստանցոց բառ, որ կընշանակէ մեծ փոթորիկ . վասն զի այն ծովերուն մէջ շատ հովեր իրար խառնըվելով այս փոթորիկը կը պատճառեն . անանկ որ երկինք գետին իրար կանցնին 3 օր և 3 գիշեր ։

թի. Նաւուն կայմը կոտրեց, և հարիւրաւոր մղոն հեռացուց։ Սոսկալի խեղճութիւններ ունեցանք, որ մէջերնիս մէկը նաւավարութիւն չգիտէ, որ նաւը կառավարէ. և ահա ինը շաբաթ է, որ ընկերենք ծովուն մէջ մէկ դիէն մէկալ դին կերթանք. բոլոր կերակուրնիս հատաւ. շատը մեր մէջ կիսամեռ ընկած են անօթի։

Մորիճ նաւապետը շուտմը պատուիրեց, որ մակոյկը ծովն ինջեցընեն. ուտելու բան ալ առաւ հետը մտաւ մակոյկին մէջ Ռօպէնսօնին հետ միատեղ գնաց խեղճերուն նաւը։ Տեսան որ խիստ ողորմելի վիճակի մէջ են. ամէնքը անօթի ծարաւ մնացեր են. շատը հազիւ թէ ոտքի վրայ կրնային կենալ. սակայն երբոր վար ինջան նաւուն մէջ՝ ինչ սոսկալի խեղճութիւններ տեսան հոն. մէկ կնիկ մը իր տղան և աղախինը երկնցած էին, կերևնար թէ մեռած են անօթի. կինը

բոլորովին անզգայ ընկած էր ։ երեսը նաւուն կողին տուած . իսկ աղախինը անոր քով բռուած էր ձեռքը տախտակին վրայ . տղան ալ ընկած էր վար՝ բերանը կաշիի կտորմը կար, որ ձեռնոցի (էլտիվէնի) կտոր էր կեսը կրծած ։

Որոնք պատուաւոր անձինք էին, որ Ամերիկայէն ինկիլթէռա պիտի երթային . կնիկը այնչափ շատ կը սիրէր զաւակն, որ ամենեւին բան չէր կերած, միայն տըղուն կուտար որ ուտէ ու չի մեռնի . բարի տղան ալ չէր ուտեր մօրը կուտար, որ ապրի . Հաւատարիմ աղախինն ալ ինք զինք մոռցերէր բան չէր կերած, որ անոնք ողջ մնան ։

Ողջի բերանը կարծեցին թէ իրեքն ալ մեռած են . բայց փորձելով հասկըցան որ դեռ հոգի կայ վըրանին . վասն զի բերաննին քանիմը կաթիլ տաք ջուր լեցուցածնուն պէս, սկսան քիչ քիչ աչվըննին բանալ. բայց մայրը խիստ

տկար ըլլալով բան չուտելովը՝ հա-
զիւ նշան մը տվաւ զաւակը հո-
գալու. բայց շատ չանցաւ ընկը-
սաւ շունչ առնել: Տղան ու ա-
ղախինը որովհետև տարիքնին
քիչ էր դեղերով վրայ եկան. որ
նաւապետին մեծ հոգ ունենալո-
վը հազիւ ապրեցան. սակայն եր-
բոր տղան աչքը դարձուց մօրը,
տեսաւ որ մեռածի պէս ընկած
է, կսկծուն նորէն ընկաւ մարե-
ցաւ. այնչափ աշխատեցան, շատ
դժուարաւ խելքը վրան բերին.
ինչևիցէ յաջողեցաւ որ մէկա-
լոնց ալ խելքը գլուխնին եկաւ,
ամէնքն ալ ազատեցան:

Անկէ ետև նաւապետը հոգ-
տանելով նաւին վրայ որչափ կա-
րելի էր բոլոր բաները նորոգեց
իր նաւավարներուն ձեռքովը, և
իրենց առաջին ընկաւ Ճամբան
սորվեցուց, որ դէպ 'ի մօտ եր-
կիրը երթան ցամաքն ելլեն, որ
դանարեան կղզիներն էին. հոն
որ հասան նորէն Ճամբու պատ-

րաստութիւններ տեսան [1] ։ Այս
կղզիներուն մէկը կըսվի Մատեռ.
ուր քանարեայ թռչունները լե֊
ցուն են. անոնց հետ հոս հասաւ
իրենց նաւը՝ Ռոպէնսոն դուրս
ելաւ, երբոր երկրին գեղեցկու֊
թիւը և պարարտութիւը տեսաւ՝
չէր կրնար կշտանալ. նաև աչքը
վերցընէր հեռուն որ կը նայէր
լեռներուն աղուորուեը, որ խա֊
ղողով ծածկած էին, բերնին ջր֊
բերը կը վազէր տեսնելով պա֊
տուական խաղողի կուզերը գեղե֊
ցիկ կախված ։ Ինչպէս կուրա֊
խանար երբ հրաման առաւ նա֊
ւապետէն որ ուզածին չափ ու֊
տէ ։ Հոն այգիներուն մէջ տե֊
սան, որ գինի շինողները չէին

1 Քանարեան կամ Երանելեաց կղզիք են
Ատլանդեան ովկիանոսին մէջ 120 մղոն հե֊
ռու Ափրիկէյէն, մաղրըպին դիմացը կե֊
նին. որոնց տիրեցին Փորդուգէզները 'ի
1393. ետքը անցաւ Սպանիացոց ձեռքը.
բոլորը 13 կղզի են. գլխաւորն է Երկաթի
կղզին. ուր շատ երկրաշարժութիւն եղած է,
որուն շրջապատն է 72 մղոն ։

Ճզմէր խաղողը ծանր բանի տակ, ինչպէս ուրիշ քաղաքները կընեն. Հապա խաղողը կը լեցընեն մեծ տեղ մը և հոն ոտքով կը կոխեն, և ձեռքով կը ճզմեն. ահա ասկէ կըլլայ այն գերազանց գինին, որ կըսուի Մոսքոնեան գինի փոր֊թուգէզներուն[1] ։

Նաւապետը քիչմը ժամանակ հոն մնաց, որ նաւը նորոգէ. ո֊րովհետև վնասած էր. իսկ Ռօ֊պէնսօն քանիմը օրէն ետև ըսկը֊սաւ ձանձրանալ. վասն զի սիրտը հանգիստ չէր, փոփոխութի կու֊զէր. անանկ որ կը փափաքէր թէ ունենալ թռչիլ. որպէս զի քիչ ժամանակին մէջ կարենայ բոլոր աշխարհք տեսնէ, ու շուտով ա֊մէն բանի տեղեակ ըլլայ ։

1 Մատեռա կղզին մեծ՝ հեռու է Լիզ֊պոնայ մայրաքաղաքէն Փորթուքալաց 456 մղոն. ուր շատ անտառ ըլլալով այսպէս կոչ֊ուեցաւ. անանկ աղէկ է օդն որ հոն թու֊նաւոր կենդանի չըլլար, թէ որ ուրիշ տե֊ղաց տանին կըսատկի. այս տեղաց գինին խիստ անուանի է ։

Այս միջոցս հոն մէկ փորթուքէզի նաւ մը հասաւ, որ Լիզպոնայէն կուգար, Ամերիգա պիտի երթար Պրասիլիայի երկիրը. ուր տեղէն կելլէ շատ ոսկի և անգին գոհարներ: Ռոպէնսոն խելքն ու միտքը այս նոր նաւապետին տըւաւ. երբոր լսեց ոսկին և գոհարները, կամք ըրաւ որ Պրասիլիա երթայ, որպէս զի աղէկ մը հարստութ̃բ լեցվի[1]:

Անոր համար ասանկ կը մտածէր. վասն զի մանկունէ ատենը ամենևին կրթըված չէր, որ իր ուզածը չընէ. այս պատճառաւ տեսաւ որ այս Փորթուքէզ նաւապետը պատրաստ է զինքը Ամերիգա տանելու առանց ստըկի, նաև հասկըցաւ որ 15 օրէն աւելի պիտի մնայ հոն Ինկիլիզ նա-

1. Պրասիլիա է մեծ աշխարհք Ամերիկայի. շատ ոսկի և պատուական ակունք կելլեն անկէ. շատ վաճառականութիւն կըլլայ. փորթուքալ թագաւորին ձեռքն է որ տարին 100 միլիոն միայն ոսկի կըհանէ անկէ:

ւապետը, ուստի չի կրնալով եր֊
կար մէկ տեղմը կենալ, ուզեց ա֊
ւելի հեռուն երթալ։ Յետոյ գը֊
նաց համարձակ յայտնեց իր բա֊
րերար առջի նաւապետին, թէ
կուզէ իրմէն զատուիլ Պրասիլիա
երթալ։

Իսկ նաւապետը որովհետեւ
լսեր էր որ Ռոպէնսօն ծնողացը
կամքին դէմ ճամբայ ելեր է, և
առանց հրամանի աշխարհէն կըդ֊
տըտի, ուրախացաւ որ իրմէն պի֊
տի հեռանայ, և ինկիլթէռա ի֊
րեն տված ստակն ալ բաշխեց,
ամէն կերպ բարի խրատներ տա֊
լով ճամբեց։ Անալ գնաց մտաւ
Փորթուքալցի նաւին մէջ, և ըս֊
կըսան երթ ալ Պրասիլիայի ճամ֊
բան, անցնելով Թէնէրիֆ կղզէ֊
ին քովէն. ուր տեղ է այն բարձր
լեռն որ կըսվի Փիքօ [1]։ Խիստ զար֊

1 Թէնէրիֆէ է քանարիա կղզիներուն մէ֊
կը. բայց աւելի մեծ և փարթամ. գինին
խիստ ազնիւ է. և պատուական բերք շատ
ունի։ Մանր լեռներ շատ կան մէջն, որ եր֊

ձկանց թաւչելով ծովուն վրայէն կըբարձրանային. որ փայլուն ըլլալով արծաթի պէս կըցոլային. անանկ որ լուսին ճառագայթին նման պայծառութիւն մը կըհանեին : (Տե՛ս ճեմ. 869) :

Նոնց ճամբորդութիւնը շատ օր յաջող գնաց. բայց յանկարծակի մէկ սոսկալի փոթորիկ մը ելաւ հարաւային կողմէն. ալիքները մէկէն սկսան փրփրելու, ու լեռան պէս երկինքն ելլել, որ վեր վար կընետէին նաւը: Այս սարսափելի ալեկոծութիւնը վեց օր քշեց շարունակ. և անանկ հեռուն ձգեց նաւը, որ նաւավարը չէր հասկընար, թէ ո՞ւր են. վերջապէս իմացաւ, թէ Գարայիպ կղզիներէն շատ հեռու չեն :

Իսկ եօթներորդ օրը երբ ըսկսաւ արևը ծագիլ մէկ նաւավար մը սաստիկ ուրախութեամբ պոռաց յանկարծ. Երկիր [1] : Նայիս ա-

1 Ասկէ տեսան Գարայիպ կղզիները. որ

ամէնքը վեր Թափեցան, որ երկի-
րը տեսնեն. Նաւը շիտակ հոն
կերթար: Սակայն այս կէտին
իրենց ուրախութիւնը փոխուեցաւ,
և զարհուրելի վախի մը մէջ ըն-
կան. վասն զի Նաւը աւազի վրայ
նստելով տարսեցաւ, և Նաւին
վրայի եզօղներն ալ շարժ ելան
ու կանոակի վրայ ընկան. իսկ Նաւ-
ւը անանկ խրեցաւ մնաց, որ կար-
ծես Թէ գամուեցաւ. ու փրփը-
րած ալիքները Նաւուն մէջ լեց-
ուելով ամէնքը վար փախան տա-
կը մտան, որ ալիքները զիրենք
չի տանի: Ան ատենի եղած խեղ-
ճութիւնը՝ աղաղակը՝ և կանչը ա-
պառաժին սիրտը կտոր կտոր կը-
նէր: Մէկը առ ա՟ծ կաղաղակէր.

հարաւային Ամերիկայի մէջ այրեցած գօ-
տիին տակն են, որ կըսուին Անգղիեան կըղ-
զիք. շատ մեծ ու պզտիկ կղզիներ կան հոն.
ասոնցմէ մէկն է Բօամէնաօնին կղզին: Ա-
տոնց հին բնակիչներն էին Գարայիպները.
որ վայրենի ըլլալով Թշնամիները կուտէին,
այնչափ ուժով էին, որ ջրոյ տակով ալ կը-
վազէին. և մինչև 100 տարի կապրէին:

մէկը մազերը կրփեթթէր. ո-մանք ալ վախերնուն անշունչ ընկած էին մեռելի պէս: Անոնց նման անշունչ ընկած էր Ռօպէնսօն, որ առաւել մեռած էր քան թէ կենդանի. նայիս յանկարծ աղաղակ մը ելաւ՝ թէ ահա ընկղմեցանք:

Այս սոսկալի լուրը իրենց նո-րէն հոգի մը տուաւ, որ անանկ խեղճ չի կորսըվին, հապա մէ-կէն վեր վազեցին նաւուն վրան. ու անհնարին արագութ̃բ մա-կոյկը ծովն իջեցուցին, և ա-մէնքը մէջը ցաթկեցին: Բայց որովհետև շատ էին նաւուն մէջ, երբոր ամէնքը հոն լեցուե-ցան, գրեթէ մակոյկը ջրին հա-ւասարեցաւ: Ցամաքը շատ հե-ռուն էր, և ալէկոծութիւնը ա-նանկ սաստիկ, որ ամէնքը կը-սէին թէ անկարելի է որ ցամա-քը հասնինք. սակայն որչափ կա-րելի էր՝ հոգւով մարմնով թիե-րը կըքաշէին. հովն ալ ետևէն

ըլլալով՝ դիւրաւ դէպ ՚ի ցամաքը կերթային ։

Յանկարծ տեսան որ մէկ ալիք մը կուգայ մակոյկին վրայ լեռան պէս ։ Այս սարսափելի ալիքն որ տեսան՝ թողուցին թիերն, ու ամէնքը անշարժ մնացին ։ Ո՜հ, ահա այս էր զարհուրելի րոպէն վերջին վտանգին. ահա այս ահագին ալիքը մակոյկին զարկածին պէս՝ տակն առաւ դարձուց. և ամէնքը խուռն գացին ծովուն տակը[1] ։

1 Ահա անհնազանդութեան պտուղը. ահա նաւապետին խօսքը ելաւ. որ ըսաց թէ մինչև որ ծնողացդ օրհնանքը չառնես աղէկուն չես գաներ ։ Իրաւ է որ անոնք անէծք չէին ըրեր իրեն. բայց թափած արցունքնին պէտք էր որ խեղճ ընէ զինքը ։ Խրատ ըլլայ անհնազանդ զաւականց. որ միայն իրենց կամքը կուզեն կատարել. թող տեսնեն թէ ինչ բաներ կուգայ գլուխնին. և քիչ մը կամքերնին չի կոտրելու համար՝ կամաց կամաց ինչպիսի վտանգներու մէջ կիյնին. վասն զի ով որ աղէկ առիթը կըկորսնցընէ, արժանի կընէ զինքը ձախորդ դիպուածներու. և ով որ աղէկ օրը չի ճանչնար, դէշ օրերու կըհանդիպի ։

## Գ. Դիպուած.

Ռօպէնսօն բոլոր ընկերներովը գնաց ծովուն տակը երբոր մա֊կոյկը շրջեցաւ. բայց այն ահա֊գին ալիքն որ զասոնք տակն ա֊ռաւ, քշեց հետը տարաւ Ռօ֊պէնսօնը և սոսկալի ալէկո֊ծելով վերուց նետեց ապառաժ քարերուն վրայ. անանկ սաս֊տիկ ընկաւ որ ցաւէն թմրեցաւ մնաց հոն [1]: Երբ աչքը բացաւ ու տեսաւ թէ ցամաքին վրան է, որ ամենևին յոյս չունէր, վերջին ջանքն ընելով աշխատե֊

1 Ընդարձակ պատմութեան այսինքն գրա֊գրութեանը մէջ կըսէ Ռօպէնսօն՝ թէ երբոր ոտքս ցամաքը կոխեցի սեպտեմբերի 30 էր: Արեգակը աշնանային գիշերահաւասարին ըլլալով՝ ճառագայթը շիտակ գլխուս վրայ կըծագէր ու սաստիկ տաք կընէր. վասն զի կերևնար թէ այս կղզին 9 աստիճան ու կէս հիւսիսային լայնութեան տակն էր այրեցած գօտիին մէջ:

ցաւ, որ վեր ելլէ ապառաժի մը վրայ: Շատ հոգնելով հազիւ թէ կրցաւ ելլել. բայց ուժը հատաւ հոն ընկաւ մնաց՝ երկար ատեն խելքը գլուխը չէր. ետքը գնաց ցամաքը:

Ուանի՛ աղօթելէն եր երբոր աչքը բացաւ չորս դին նայեցաւ, տեսաւ որ ոչ նաւ կայ, ոչ մակոյկ կայ, և ոչ մէկ ընկերը մնացեր է. ամենևին բան մը չի կայ. բայց եթէ տախտակի կտորըտուք, որ ալիքները դէպ 'ի հոն կըբերէին: Միս մինակ մէկ հոգին մը է, որ ազատեցաւ այն վըտանգէն: Ուրախութիւն ու տրտմութիւը իրար խառնըվեցան. մինչև դողալով ծնկան վրայ եկաւ, թևերը երկինքը վերցուց՝ բարձր ձայնով աչքերն արտասուք լեցուն շնորհակալ եղաւ երկնի և երկրի ստեղծողին. որ այսպիսի մեծ հրաշքով զինքն ազատեց [1]:

1 Ռոպէնսոնին օրագրութենը մէջ գրած

Ահա՛ այսպէս իմաստութիւն մեզ շատ լաւ գիտէ և կըճանչնայ մեր անձին օգուտը. իսկ խեղճ մահկանացու մարդիկ չի ճանչնալով իրենց ճշմարիտ շահը կըզարմանան, թէ ինչո՞ւ համար մինակ Ռոպէնսոնն ազատեցաւ, ու բոլոր մէկալներ կորան: Վասն զի ըստեղծողին իմաստութիւն ու կառավարութիւնը խելքէ մտքէ դուրս գերազանց ըլլալով թոյլ տուաւ. որ մարդ մը չազատի, մինակ Ռօպէնսօն ազատի: Ահա այս բանին մարդու խելք չի հասնիր. մեր միտքը այնչափ կըղոր է, որչափ որ Ած գերեր է. անկէ աւելին չենք կրնար քններ դատեր: Կարելի է որ Ած առաջ գիտնալով, թէ երկար կեանքը աւե-

է՝ թէ ցամաքն որելոյ մէկէն սորտա եա եկաւ. վասն զի ծովուն ջուրը բերանս էր գացեր. աղաւեկեցայ որ քիչ մը հանգչիմ. վախսւս եղայ ասդին անդին ընկայ: Բաւ. այսպէս անճար մինակ հոն մնալուս համար այն կղզին անունը գրի Կղզի յուսահատութեան որուն երկայնութիւն. 24 մղոն էր:

լի Մտապատկեր է ոմանց՝ Թող կուտայ որ կորսուին․ որոնք կամ Թշուառութեց մէջ պիտի իյնէին, և կամ ախտաւոր մոլի պիտի ըլլային․ անոր համար աշխարհքէն կը վերցընէ բարի վարքով, որ հանգչին երջանկութեամբ։

Իսկ Ռօպէնսօնը անոր համար պահեց, որ քաշած նեղութիւնները իրեն խրատ ըլլան ու զինքն իմաստուն ընեն․ որովհետև Աստուած նախախնամող հայր ըլլալով ձախորդութիւն կուտայ, որ մարդիկ խրատուելով ուղղին՝ երբ բարութեամբ տեսնելով չեն շտկիր։ Ուստի երբոր բան մը կըլլայ որ խելքերնիս չի հասնիր, պէտք չէ յանդըգնութեամբ դատաստան կտրել և շուտ մը խելք բանեցընել․ հապա պիտի ըսել՝ թէ Աստուած ինչպէս որ կարգադրէ՝ միշտ մեզի բարի է․ ուրեմն ջանալու ենք մեր կամքը համակերպել իրեն, որ հայրական օրհնութիւնը վարձահատոյց ըլլայ։

Այս պատճառաւ Ռօպէնսօն ալ ճշմարիտ սրտով դարձաւ առ ա՜ծ, երբոր տեսաւ թէ կեանքը անանկ վտանգի մէջ է, և բոլոր աշխարհք իրմէ հեռացած է. սըրտին մէջէն կիմանար թէ իր բըռնած ճամբան որչափ անիրաւ էր, և խիղճմտանքը կըվկայէր որ ա՜յ դէմ էր ըրածը։ Ահա ասոր համար ճշմարիտ զղջումով ծնկան վրայ ընկած կաղաղակէր ա՜յ, որ մեղքերուն թողութիւն տայ, և յատուկ առաջադրութեամբ դիտաւորութիւն դրաւ, որ անկէ ետև ուղղի ու ամենևին խիղճմտանքի դէմ բան մը չընէ։

Ռօպէնսօն այս դիտաւորութիւնը դնելէն ետև վեր ելաւ, իր փըրկութեանը վրայ ուրախանալով, յետոյ սկսաւ մտածել թէ ինչ պիտի ընէ։ Կընայէր չորս դին որ ծառերէն անտառներէն 'ի զատ բան չի կայ. ամէն կողմը կընայէր բան չէր տեսնէր որ անով կարենայ յոյս մը ունենալ,

թէ մարդ ընակեր է հոն. մարդու նշան մը չի կար։ Ասկէ աւելի խեղճութի՛ն չէր ըլլար, որ անանկ աշխարհքին ծոցը մինակ պիտի ընակէր. բոլոր մարմինք կը դողար երբոր կըպօռար, թէ վա՜յ գլխուս ի՞նչ պիտի ընեմ, թէ որ հոս լեռան մարդիկ և կատղած գազաններ ըլլան ինչպէս պիտի ազատիմ։ Այս վախը անանկ պաշարեց զինքն որ անշարժ մնաց և չէր համարձակեր առաջ երթալու. մէկ պզտի ձայն մը լսէր՝ դող կելլէր սիրտը. վասն զի վախուն՝ արիւնը պաղեր էր[1]։

Սակայն սաստիկ ծարաւութիւնը մէկէն իրեն սիրտ տուաւ զօրացուց տկարութէն, մինչև չդի-

1 Երբոր սաստիկ կըվախնայ մարդ՝ բոլոր արիւնը դէպ 'ի սիրտը կըվազէ, անոր համար երեսը կը դեղնի, սիրտը կընեղանէ. երակները բոլոր խառնուած ըլլալով քիչ մը բանով կըսարսափին։ Ռոպէնսոն այնչափ խռոված էր վախուն, որ ներքի տաքութիւնը պաղեր էր՝ անանկ որ կարծէր թէ երկինքը վրան պիտի փլչի։

մնացաւ անանկ մնալ. Ինքն իրեն ու ժ տալով ելաւ այդին անդին ընկաւ որ ջուր կամ առու մը գտնէ։ Բաղդը բանեցաւ, երբոր քիչ մը հեռուէն լաւ յստակ ջուր մը գտաւ՝ վազեց ուրախ խնդալով ծարաւն անցընել. քանի՜ զըւար-ճալի բան է երբոր մէկը ծարաւ մնալով ջուր կը գտնէ։ Ուստի Ռոպէնսոն շնորհակալ եղաւ Այ՝ յուսալով թէ ուտելու բան ալ կուտայ. կըսէր թէ այն ստեղ-ծողն որ թռչունները օդին մէջ կըկերակրէ, թող կուտա՞յ որ ես անօթի մեռնիմ։

Այնչափ անօթութի՜ չէր ի-մանար. որովհետև վախը և քա-շած նեղութիւնը անանկ սիրտը այլայլեր էին՝ որ ամենևին ա-խորժակ (իշտահ) չունէր. ամէն բանէն աւելի կըցանկար քիչ մը հանգչիլ. վասն զի անանկ վշտով չորչարված էր որ հազիւ թէ ոտքի վրայ կրնար կենալ։ Այս պատճառաւ մեծ հոգ ընելով

կըմնացածներ թէ գլուխները ո՛ւր պառկի․ կըվախնար որ չըլլայ թէ գազաններըն և լեռան մարդիկ զինքն ուտեն ։ Ամէն դի կերթար կընայէր ո՛չ տուն կար, ո՛չ խրճիթ կար, և ո՛չ քարանձաւ (մաղարա)․ ուստի կուլար կըհառաչէր անմխիթար, չէյտէր թէ ի՞նչ ընէ ։

Վերջապէս թրթկուն եղաւ, այլ ճարը հատաւ մտածեց որ թռչուններուն նման, և անոնց պէս ծառերուն վրայ բնակարան շինէ․ յանկարծ մէկ ծառ մը տեսաւ․ որուն ճիւղերը խիստ շատ էին, և անանկ խիտ (սըխ) որ դիւրին կընար վրան նստիլ բնակիլ․ ուստի փաթթըվեցաւ ծառն ելաւ, ու սրտանց ա͞յ աղօթք ընելով նստաւ ծառին վըրայ մէկէն սկսաւ քնանալ[1] ։

[1] Սովորաբար քունը կըպատճառի երբոր գոլորշեգները գեալ 'ի ըղեղը կերթան, կենդանական ոգիքը թմրեցով զգայութիւը կըկապեն քուն կուգայ․ բայց Բոսլէնասոնին քունը աւելի հոգնութէն պատճառեցաւ,

Բայց երեւակայութիւնը խռո-
ված ըլլալուն համար՝ բոլոր գըլ-
խուն եկածները երազն եկան.
և շատ մեծ նեղութիւն ունէր ե-
րազին մէջ. կը տեսնէր ալիքնե-
րուն որոտումը՝ նաւին փառա-
տիլը, ընկերներուն և նաւա-
վարներուն աղաղակով խղդը-
վիլը: Անկէ ետև կը տեսնէր իր
ծնողքը, որոնք տրտմութեամբ և
դառնութեամբ լեցված կըվշտանային
իրեն կարօտուն. Հառաչանքով
կուլային ու թեւերնին վեր վեր-
ցուցած կաղաղակէին, որ Աստուած ի-
րենց մխիթարութիւն տայ: Երբոր
զասոնք ասանկ տեսաւ երազին
մէջ, բոլոր մարմինը ջուր կտրե-
ցաւ պաղ քրտինքով մը. մինչև
բարձր ձայնով կանչեց, թէ ա-
հա՛ ես. ահա՛ ես հոս եմ սիրելի
ծնողք իմ. այսպէս պոռալով

որ բոլոր ջիղերը տկարանալով ոգիքը թըմ-
րած էին. անոր համար մէկէն քնացաւ,
մանաւանդ թէ թմրեցաւ մնաց սաստիկ
տկարութենէն:

քունին մէջ՝ Թևերը բացաւ որ ծնողացը փաթթըւի ։ Այս շարժմունքով նայիս ծառին վրայէն վար ընկաւ [1] ։

Աստուած ողորմեցաւ որ շատ բարձր չէր ծառին վրայ . և ընկած տեղը շատ խոտ ըլլալով մէկ տեղը չի կոտրեցաւ . միայն ընկած գլխին ցաւեցաւ . բայց երազին մէջ այնչափ նեղութի քաշեր էր՝ որ այս ցաւը բան չերևցաւ ։ Ուստի նորէն ծառը ճանկելով վրան ելաւ , մինչև առաւօտ հոն մնաց ։ Առաւօտուն սկսաւ մտմըտալ թէ ի՞նչ պիտի ուտէ , և ի՞նչպէս պիտի ապրի .

1 Երազը կըպատճառի երբոր մտքին մէջի եղած բաներով հոգին կըգործէ , որովհետև հոգին չի քնանար՝ զգայութիւնները կապվըած ըլլալով առաջվան ունեցած գաղափարներով զանազան բաներ կըտեսնէ . մանաւանդ ի՞նչ բանի փափաք որ ունի հասարակօրէն զայն կերազէ ։ Ռօպէնսօն ամէն բանէն աւելի ծնողաց վրայ փափաք ունէր . անոր համար զանոնք տեսաւ երազին մէջ ։ Տես Ճեմ . 979 ։

վասն զի վերի մեր աշխարհքեն եղած բաներուն մէկը չի կար հոն, ոչ հաց կար ոչ միս կար, ոչ հունտեղէն, և ոչ կաթ. Թէպէտ ըլլար ալ նէ, ոչ կրակ կար՝ ոչ պտուկ՝ և ոչ բան կար որ եփէր. Ծառերէն 'ի զատ ուրիշ բան չի տեսաւ հոն. անոնք ալ բոլոր անպտուղ էին, տերևէն 'ի զատ բան մը չունէին, որ կրսվին գամբէշ[1]։

Այսանկ տարակուսով ծառէն վար ինջաւ. որովհետև առջի օրը բան մը չէր կերած, անօթութիւնը սկսաւ սաստիկ նեղութիւն տալ իրէն. մէկ դին մէկալ դին վազելով շատ տեղ գնաց՝

1 Այս կղզին կուտոր ըլլալով խիստ անբեր էր և լեռնոտային, լեցուն ծառեր կային, այլ շատը անպտուղ էին. սաստիկ տաքը և խոնաւութիւնը անանկ աւրերէր օդն որ ամէն բան շուտով կապականէր. կենդանին մեռածին պէս կըհոտէր։ Գամբէշ ծառ շատ կար հոն. որուն փայտը ջուրն որ ձգես կարմիր ներկ կըլլայ. այս փայտեն շատ կըբերեն Եւրոպա։

բան չի գտաւ ուտելու . ամէն տեղ լեցուն անպտուղ ծառեր կային : Խեղճ ողորմելին այլ անօթի փրփրած՝ աչքը վեր վերցուց սկսաւ աղաղակել, թէ ահա՛ այն կէտին եմ հասեր, որ անօթի պիտի մեռնիմ : Ի վերայ այսր ամենայնի՝ անօթութեն հարկը ստիպելով սիրտ տվաւ, որ անանկ չի մնայ . ուժ առաւ ելաւ վազեց զանազան ճամբաներ . մեծ փափաքանօք կըփընտըռէր որ ուտելու բան մը ճարէ : Բայց պարապ տեղը հոգնեցաւ . ամէն դի գամբէշ ծառին անտառներն էին, նաև հնդկաստանի ռուռի (սեօյիւտ), խոտ ու աւազ կային՝ ուրիշ բան մը չի կար : Այնչափ որ՝ Ռօպէնսօն տկարանալով կիսամեռ ընկաւ անօթի, բոլոր զօրուիը հատաւ. ուստի երեսը հողին քսելով աղբիւրի պէս աչքէն արտասուք կը վազէր . շա՛տ աղէկ էր որ՝ կըսէր ծովը խղդըրված ըլլայի, քան

Թէ տասնեակ խեղճ անօթի մեռա-նէր [1] ։ Այսպէս յուսահատած

1 Այսպիսի դիպուածներ երբեմն երբեմն կըպատահի հնդկաստանու կողմերը և անտապատ աշխարհքները, ինչպէս պատահեցաւ Յոհաննէս եպիսկոպոսին տրապիզոնցւոյ. որ իբր 60 տարի առաջ պարսկաստանէն հինտ երթալու ատենը սոսկալի ալէկոծութեան կըհանդիպի ովկիանոսին մէջ. վերջապէս նաւը կընկղմի մարդիկ կելնին անմարդաբնակ տեղ մը ։ Անկէ ելան դէպ 'ի ցամաք կերթային մարդ գտնելու համար, անօթի ծարաւ. գիշերանց գազանները և առիւծները մէկիկ մէկիկ իրենցմէ կըտանէին կուտէին. հազիւ թէ մէկ քանի հոգի ողջ մնացին. նորէն դարձան ծովուն քով սոսկալի տառապանքով. և հոն մակոյկ մը հանդիպեցաւ զիրենք ազատեց ։ Այսպէս պատահեցաւ և Ջուղայեցի Պետրոս Ղուկասին իբր 30 տարի առաջ. որ հնդկաստանու ծովին մէջ ալէկոծութե̄ ընկաւ մալապարին կողմերը. անօթի ծարաւ անապատին մէջէն կերթային որ մարդ գտնեն. ընկերները անօթութե̄ չդիմացան յուսահատութե̄ մեռան. ինքը մինակ մոլորեալ անկոխ անապատին մէջ շարունակ կերթար սիրտ տալով իրեն, որ առաջ երթալով ջուր գտնէ. և անով քիչ մը ուժ կառնէ. ետքը կերթայ սև հնդիկներուն ձեռքը կիյնի, ու մեծ բաներ անոնց խոստանալով՝ զինքը կըբերեն մասկատ քաղաքը կազատեն ։ Ականատեսը

երբոր կըսպասէր այն սոսկալի րոպէին, որ անօթի մեռնի. յանկարծ տեսաւ մէկ ծովի թռչուն մը, որ ձուկ մը բռնեց կուտէր. մէկէն միտքն ընկաւ այս երգն որ պզտիկութենէ ատենը սորված էր:

Կերակրէ ստեղծօղն՝ ագռա-
ւուց երամ,
զիա՞րդ անխնամ՝ թողցէ զազգ
մարդկան.
Ուէ 'ի խուն ճնճղիկ՝ իւր ա-
րուեստք պանծան,
քա՞նի աւելի՝ 'ի մարդ բանա-
կան:

Նոյն ատենը Ռօպէնսօնին խելքը վրան գալով սկսաւ մեղադրել զինքն՝ որ ա̃ծային նախախնամութենը վրայ յուսահատեր էր. ուստի մէկէն վեր ցատկեց

կըպատմէ թէ այս մարդը քունին մէջ սարսափելի աղաղակներ կըհանէր ակռաները կըճըռտելով, և զարհուրելի տագնապներով որ գլխուն եկած բաներէն մնացեր էր վրան:

ելաւ բան փրնտռելու, միտքը դրաւ որ կարողութէն աւելի առաջ երթայ մինչև որ ա͞ծ իրենց կերակուր մը տայ. և որչափ որ կերթար՝ միշտ ասդին անդին կընայէր, որ ուտելու բան գտնէ։ Վերջապէս աւազին վրայ տեսաւ ոստրէի աման, այսինքն (ստըռիտեայի խապուխ) ուրախութե̄ վազեց. մտածելով թէ կարելի է որ ողջ ոստրէներ ալ գըտնէ հոն. և երբոր առաջ երթալով գտաւ քանի մը ոստրէ՝ ուրախութենէն չգիտէր ինչ ընէ[1]։

1 Այս ոստրէները այսինքն ոփըռ-էփէայ՝ միփէայ են, որովհետև ծովուն մէջ շատ անգամ իրար փակչելով մեծ կոյտ կըլլան. ծովուն ալիքները մակընթացութե̄ կըբերեն ծովուն քով. և երբ ծովը կըքաշուի՝ աւազին վրայ կըմնան ոստրէները։ Իսկ մակընթացութիւն կըլլայ հոն օրը երկու անգամ երբոր վեց վեց ժամ ովկիանոսը կըբարձրանայ. և երբ վեց վեց ժամ ծովը կըքաշվէր տեղատուութի̄ կըլլայ. ուրեմն 24 ժամին մէջ երկու անգամ ծովը կըբարձրանայ լուսինին շարժմունքովը մակընթացութիւն կըլլայ. և երկու անգամ ալ քաշուելով տե-

Սակայն սաստիկ պարապ տըրտունջները ի՞նչ օգուտ կրնային ընել Ռօպէնսօնին. որ ժամանակը անցուցեր էր, այս պակասութենէն դեղը հատեր էր։ Աւելի հարկաւոր էր ջանք ընելով գիւտ հնարել կարօտը լեցընելու, որ բան չգիտնալուն համար կըտանջըվէր. բայց ջանալով ասոր ալ ճարը հնարեց։ Վասն զի անդէտ ըլլալով խելք բանեցուց, կտրեց մէկ երկու մատղաշ ծառերուն ծայրերէն. և մէջ տեղը բարակ ճղքեց՝ ու մէկ ճիւղ մը քօքօյէն պատուաստ (աշ) ըրաւ. ետքը փաթթեց բարակ տերևով պատուաստած տեղը. միշտ կըդիտէր թէ երբ կըծլի։ Շատ չանցաւ ճիւղերն սկսան ծլիլ. անանկ որ պատուաստները քիչ ատենին մէջ աճելով քօքօ ծառի անտառը ձևացան։ Ահա նոր ուրախութիւն Ռօպէնսօնին, և նոր առիթ աւելի ջերմեռանդ ըլլալու, նաև շնորհակալութիւն ընե.

Եթէ խելքս օգտակար գիտութենէց ետեւէն ընէի, բան սորվել ջանայի, հիմա ունեցած խելքս ինծի լոյս կուտար. ո՞հ երանի՜ թէ նորէն մանուկ ըլլայի, ու խելացի քաներու ետեւէն ըլլալով իմաստուն մարդիկներէն բան սորվէի [1]։ Արուեստ չէր մնար որ չի սորվէի. արուեստաւոր մարդկանց ետեւէն կիյնէի որ բանի տեղեակ ըլլամ։

խարհք կարժէ կըսէին. շատ մեծ յանցանք էր կոր մը ժամանակ փուճը անցընել. վասն զի շատ անգամ մէկ բոպէին մէջ մեծամեծ գործքեր եղած են. շատ մարդ մէկ բոպէն չի նայելով մեծ բանէ զրկըված է։ Անոր համար տարիքն առած մարդիկ շատ կըցաւին անցած ժամանակին վրայ. բայց անցնելէն ետեւ օգուտ չիկայ։

1 Ամօթ անանկ տղոց, որ գիտուններուն քովէն հեռու կըփախչին ու փուճ բաներու հետ կըլլան. Ռօպէնսօն իրենց խրատ ըլլայ. որ փորձով հասկըցաւ որ եթէ խելացիներու հետ նստէր ելլէր՝ խելացի կըլլար. բայց անխելք բաներու հետ ըլլալով անխելք մնաց. և եթէ այսպիսի գրքեր կարդար, բան սորված կըլլար. չընելուն համար ասանկ եղաւ։

Սակայն սաանկ պարապ տըր-
տունջները ի՞նչ օգուտ կրնային
ընել Ռօպէնսօնին. որ ժամա-
նակը անցուցեր էր, այս պակա-
սութենէ դեղը հատեր էր։ Աւե-
լի հարկաւոր էր ջանք ընելով
գիւտ հնարել կարօտը լեցընելու,
որ բան չգիտնալուն համար կը-
տանջըվէր. բայց ջանալով ասոր
ալ ճարը հնարեց։ Վասն զի ան-
գէտ ըլլալով խելք բանեցուց,
կտրեց մէկ երկու մատղաշ ծա-
ռերուն ծայրերէն. և մէջ տեղը
բարակ ճղքեց՝ ու մէկ ճիւղ մը
քօքօյէն պատուաստ (աշ) ըրաւ.
ետքը փաթթեց բարակ տերևով
պատուաստած տեղը. միշտ կըդի-
տէր թէ երբ կըծլի։ Շատ չան-
ցաւ ճիւղերն սկսան ծլիլ. ա-
նանկ որ պատուաստները քիչ ա-
տէնին մէջ աճելով քօքօ ծառի
անտառ ձևացան։ Ահա նոր ու-
րախութիւն Ռօպէնսօնին, և նոր
առիթ աւելի ջերմեռանդ ըլլա-
լու, նաև շնորհակալութիւն ընե-

բռնըվեցաւ կենդանին. Ռոպէն-սօն լաւ մը կապեց, ու խօթեց բոյսերուն մէջ, որ մէկալնոնք չի տեսնեն ու փախչին, և ձայնը առնելով վախնան:

Այս բռնած լաման էգ ըլլալով երկու պզտի ձագ ունէր, որ իրենց մօրմէն չի զատվեցան ե-տևէն գացին. Ռոպէնսօն տե-սաւ որ իրմէն չէին փախչէր, շատ կուրախանար և սիրելով գիրկը կառնէր. ձագերն ալ մօրերուն սիրուն կըլզէին ձեռքը. իբր թէ կըխնդրէին որ թող տայ զիրենք մօրերնուն քով կենալ: Ռոպէն-սօնին ուրախութիւը անպատմելի եղաւ, որ բաղձանքին հասաւ. ուստի ամենայն զգուշութ. բըռ-նեց լաման կըտանէր. թէպէտ կենդանին վերվեր կըցաթկէր չէր ուզեր երթալ. բայց քաշեց տարաւ կարճ ճամբայով իր բնա-կարանը. ձագերն ալ ետևէն գացին:

Հիմա դժւարութիւը մնաց,

թէ ի՞նչպէս պիտի լաման պա-
տէն անցընէ բնակարանը խօթէ. որ ամէն կողմէն ամուր գոցած էր. եթէ վերէն ժայռին վրայէն չուանով ինջեցընէր՝ կը վախնար որ չի խղդըվի կենդանին : Վերջապէս բնակարանին քով ծառին կապեց լաման. և մտածեց թէ չորս դին բաներ տնկէ ախոռ շինէ. մինչև որ յարմար եղանակ մը գտնէ ներս առնելու : Այս գործքիս համար շատ ճիւղեր կտրեց և մանր ծառեր հանեց չորս դին տնկեց. և իրար կապելով պատ ձևացուց. լաման անոր մէջ մնաց ձագերովը, որոնք չգիտէին թէ բռնըված են. մօրերնուն կաթն ուտելով գեղեցիկ կըզըւարճանային :

Նշանակ սքանչելի աղուոր կերևնային Ռօպէնսօնին, որ անդադար կենար ձագերուն վրայ կըզմայլէր, ու ամէն բանէն մեծ կըդնէր անոնց ընկերութիւնը. իրեն կերևնար թէ՝ այլ մինա-

աղէկ չէ , պէտք է միշտ ջանալ . ինչ բան որ միտքը կը դնէր՝ անձանձրոյթ եռանդն ըլլալով կըկատարուէր :

Ռոպէնսօնին հիմա մէկ բան մը պակաս մնաց , որ սրտին փափաքը կատարուի . վասն զի կրցանկար որ լամաները իր բնակարանին մէջն ըլլան . որ սիրունները միշտ աչքին առաջն ըլլալով զըւարճանայ անոնց հետ, և իրենց ընկերութիւն ընել սորվեցընէ : Երկար կը հոգար թէ ինչպէս կարենայ այս փափաքին հասնիլ :

Վերջապէս գիւտ մը գտաւ՝ որոշեց որ իր բնակարանին մէկ կողմը բանայ , ու քովէն ուրիշ ծառէ պատմընալ շինէ որ աւելի մեծնայ . լամաներուն ալ բնակարան ըլլայ , իրեն ալ աղէկ ըլլայ : Եւ որպէս զի՝ ապահով կարենայ բնակիլ . մինչև որ չի լմընցուց այս նոր շրջապատը , չի բացաւ առաջուան պատն որ վնաս մը չի գայ իրեն : Զարմանալի ե-

կուրծէ խեղճուկէն ազատեցաւ · նաև սրտին մէջի ցնծութիւը անանկ ուժ զօրութիւն տուաւ իրեն, որ քիչ ատենին մէջ ախոռը շինեց լմնցուց · դուռն ալ ձիւղերով լաւ մը գոցեց · ինչ զըւարճութիւն եղաւ իրեն անատենը՝ չի պատմըվիր · անկէ ետքը իբրև տանուտէր քաջ և խոհեմ կըկառավարէր զանոնք ։ Անտարբեր ըամաներուն հետ ընկերուն կընէր, իբր թէ մարդըլլային, որ իրեն առջին այնպիսի անգին պանձ կերևնային · մինչև միտքը դրեր էր՝ թէ շատ մեծ օգուտներ կրնայ հանել անոնցմէ ։ Եւ իրաւունք ունէր ասոնք մտածելու · վասն զի ժամանակով կրնար անոնց բուրդէն հագուստ շինել, և կաթովը կըրնար կօգի պանիր շինել ։ Թէպէտ չէյտէր թէ ինչ կերպով այս հեռու գործքերը կըկատարվին · բայց փորձելով տեղեակ եղեր էր, թէ յուսահատութիւը

ղաւ Ռօպէնսօնին աշխատանքը . որ առանց հոգնելու քանիմը աւուր մէջ կատարեց գործքը։ Երբոր դրաւ հոն լամաները՝ իրեք ընկերով տուն մը եղաւ . սրտին ուրախութէն չկյտէր թէ ինչ ընէ։ Նաև չի ձգեց իր առջի ընկերն՝ որ մամուկն էր . միշտ կընայէր , ամէն օր ճանճ բռնէր կուտար իրեն. մամուկն ալ տեսնելով թէ բարեկամութի կընէ հետը՝ Ռօպէնսօն քովը մօտեցածին պէս վազէր կուգար բերնովը կառնէր ձեռքէն ճանճը ։ Նմանապէս լաման իր ձագերովը շուտով ընտանի եղաւ Ռօպէնսօնին . անանկ որ երբ կըգգային թէ պիտի գայ բնակարանը՝ ցատկելով դէմը կելլէին ու հոտվըռտալով կընայէին թէ իրենց բան մը բերա՞ւ ։ Ամէն անգամ որ խոտ կամ տերև կուտար իրենց՝ ձեռքը լզելով իբր թէ շնորհակալ կըլլային ։

Մինկէ ետքը իրիկուն առտու

ձագերը մօրմէն զատելով կը-
կթէր լամման՝ քօքօյին ամաննե-
րուն մէջ կըլեցընէր և իրեն ա-
ռանձնութեանը պէտք եղածին
չափ՝ կէս մը անանկ կուտէր,
կէսն՝ ալ մածուն կըշինէր ։ Եւ
որովհետև քօքօ ծառը այնչափ
պիտուական էր իրեն, և մէկ հատ-
մը էր՝ կուզէր շատցընել. բայց
չիյտէր թէ ի՞նչպես ընէ ։ Լսեր
էր թէ պատուաստ (աշ) կընեն
ծառերը. սակայն չիյտէր ընելու
կերպը. անոր համար սիրտը ան-
հանգիստ կըհոգար ։ Բիւր ան-
գամ կըսէր հառաչելով. հազար
ափսոս իմ մանկութենս գեղե-
ցիկ օրերուն, որ բան մը չեմ
սորված. մեղք այն առիթնե-
րուն որ զիս չի կրթելով կորսըն-
ցուցի ։ Ա՜հ եթէ գիտնայի իմ
շահս, փուճ բաներու ետևէ ըլ-
լալով չէի կորսընցըներ ժամանա-
կըս[1] ։

[1] Հին փիլիսոփաները այնչափ մեծ կը-
գնէին ժամանակն, որ մէկ րոպէն բոլոր աշ-

եղաւ մէկ բլուրի մը վրայ ծովուն մօտ, վարնայեցաւ որ տակը խոռոչ փոս մը կար. հոն աչքին բան մը դպաւ՝ մէկէն ձեռքով ոտքով ճար ըրաւ հոն ինջաւ, տեսաւ որ աղ կայ՝ ահա անպատմելի ուրախութիւն լցուաւ, որ ոչ մարգրիտի հետ կը փոխէր և ոչ գոհարի։ Թէպէտ մինչև ամատենը ծովուն ջուրը աղի տեղ կըգործածէր. բայց լեղի ըլլալուն համար դառն էր խիստ. և այս ջրով երկար չէր կրնար պահվիլ միսը. վասն զի երբ ծովուն ջուրը անշարժ տեղ մը կըկենայ շուտով կապականի։ Ասոր համար շատ մեծ բան եղաւ Ռօպէնսօնին աղը գտնելով. որ մէկէն լեցուց երկու ծոցը իր բնակարանը տանելու համար[1]։

1 Աղը որչափ աւելի հարկաւոր է մարդուս. այնչափ աւելի զարմանալի է Ածային նախախնամութիւն, որ այսչափ առատ ամէն տեղ ստեղծեր է. ոչ միայն լեռներէն քարի պէս կ'ելլէ շատ տեղ, այլև ծովու

Ռօպէնսօն գնաց հասաւ լամաներուն անցնելու տեղը նայեցաւ որ բան չի կայ. դեռ կէսօր չէր եղած, նստաւ ծառի մը տակ կը սպասէր. հանեց տոպրակէն պաշարը՝ խորված միսն ու գետնի խնձորը՝ երբոր աղը թաթխելով կուտէր ի՜նչ սքանչելի համ կառնէր. կերակուրէն ետև լամաներն երևցան հեռուէն. որ խաղալով՝ ցատկելով կուգային ջուր խմելու: Ռօպէնսօն մէկէնիմէկ ծառին ետևէն անցաւ՝ որոգայթը՝ ձեռքը պատրաստ կը սպասէր, որ մէկը անոնցմէ հոն մօտենայ: Շատը եկան անցան առանց մօտենալու. ետքէն մէկն եկաւ երբոր հոն մօտեցաւ՝ յանկարծ նետեց որոգայթը լամային վրան, չուանը վիզն անցաւ

Ջրէն ալ կըշինեն վէնէտիկ՝ յունաստան և այլն: Այնպէս եղեր էր Ռօպէնսօնին կըղզին մէջ. վասն զի ալիքներուն ջուրը այն խոռոչներուն մէջ լեցվելով արեգակին տաքութեն ջուրը կըքաշվի աղը կըմնայ:

լու ամենային բարութենն՝ որ այն զարմանալի զօրութիւնը և աճողական յատկութիւնը տուեր է բոյսերուն, որպէս զի կենդանի արարածք պակասութիւն մը չունենան պահուելու, և հանգիստ վիճակ ունենալու ։

Իսկ լամաները մեծ ու պըզտիկ անանկ ընտանի եղան, ինչպէս որ հոս շունն ու կատուն ընտանի են ։ Սկսաւ նաև գործածել լաման հանգստուն համար վրան բեռ բարձընելով. որովհետև իրեն շատ դժուար էր բեռը շալկել բերել. երբոր կերթար բան բերելու, լամային կըբեռցընէր ։ Բայց այս նոր շինած պատին քով շատ մանր ծառեր կային հոն ծակ մը թողուց դուռ շինեց, որ հազիւ մէկ լամա մը կրնար անցնիլ ։ Այս դուռը դրսէն չէր երևնար, ներսէն ալ լաւ մը հիւսելով գոցեց ։

Ահա գեղեցիկ տեսարան մը. երբ Ռօպէնսօն կըդառնար բնա-

կարանը՝ լաման տիրոջմէն առաջ կըվազէր․ վասն զի խիստ աղէկ սորվեցուց ճամբան․ և երբ կըմօտենար դուռնը՝ կը կենար որ քեռը վրայէն եստ առնէ․ յետոյ ցածնալով դռնէն ներս կըմըտնէր։ Ռօպէնսօն ալ ետևէն կըմըտնէր։ Անատենը տեսնէիր, թէ ի՜նչ ուրախութի կըլլար ձագերուն՝ մօրերնուն հոտն որ կառնէին․ որոնք իրենց զըւարճութ̃ը յայտնելով վեր վար կըցաթկէին կըխաղային․ մէյմը մօրերնուն քով կըվազէին ուրախանալով, մէյմը Ռօպէնսօնին վրան կերթային քսելով կըսիրէին։ Անալ մեծապէս կըզըւարճանար անոնց ուրախութ̃ը վրայ և կըգգուէր․ ինչպէս հայր մը երկար ժամանակ հեռանալէն ետև զաւկըներըն որ տեսնէ՝ գիրկը կառնէ սիրելով կուրախանայ անոնց զըւարճութ̃ը [1]։

[1] Ըստ բնաբանից անասուններըը մէկ ան․

Իսկ Ռուպէնսոն տեսաւ թէ շինուած աղիւսները լաւ չորցած են, կրնար վառարանին պատը շինելու, ուզեց արեւին տաքը անցնելէն ետեւ շինել. ուստի նախ շինեց տափակ քարէ ծեփիչ մը, կաւն ալ շաղվեց պատրաստեց. Նաեւ Հաւասարաչափ կանոնմը շինեց, որ պատը չիտակ ելլէ։ Եւ այսպէս պատ շինելու ամէն

կատար ճանաչում մը ունին. որ երբ մէկէն երախտիք մը կընդունին, չեն մոռնար՝ կըսիրեն. ինչպէս որ շատ զարմանալի օրինակներ կան. զոր օրինակ՝ Հին ատենը Անդրոկղոս անունով մէկ ծառայ մը Աֆրիկէ առիւծի մը կըպատահի. որուն ոտքը եղէգի կտոր մը մտած չարաչար վիրաւորեր էր։ Այս մարդը առիւծին խեղճ ձայնին չդիմանալով գնաց քովը հանեց փուշը, վէրքն ալ կապեց լուցուց։ Ատեն անցաւ այս առիւծը բռնեցին ընծայ տարին Հռոմէ Մարդն ալ հռովմ գնաց. ու յանցանքով մը երբոր բռնեցին հրապարակին մէջ առիւծին առաջը ձգեցին որ պատռէ, նայիս առիւծը ճանչցաւ գնաց քովը սկսաւ լզելով սիրել իր բարերարը։ Զարմացան ամէնքը. բայց Թագաւորը երբ պատճառն իմացաւ՝ ազատեց մարդը, առիւծն ալ զայ

հարկաւոր պատրաստութիւնները ըմպելէն ետքը՝ աղջիկները բերուցուց լամայէն՝ բերաւ կրակ վառած տեղը. բայց թէ ինչ կերպով բերուցուց, շատ զարմանալի բան է։ Իբր զի միշտ կըմըտածէր որ կողով (սեփէթ) շինելը խիստ հարկաւոր է իրեն. բայց մանկութեան ատենը անանկ անհոգ էր որ ամենեւին մէկ բա-

դարեցին։ Այսպէս մէկ շուն մը ազատեց իր տէրը, որ Ալբեան լեռներուն վրայ ձիւնով պատած ըլլալով երբոր կերթար, քիչ մնաց սոսկալի բարձր տեղէ մը վար պիտի իյնէր, շունը խածաւ լաթերէն թող չի տուաւ որ առաջ երթայ. մարդը հասկըցաւ վտանգն, ու ետ կեցաւ ազատեցաւ։ Շատ մեծ բան էր և այն երախտագէտ շանը գործքը. երբ իր տէրը կամեցաւ գետը մըտնել լուացուելու, չգիտէր թէ ջրին մէջ կոկորդիլոս գազան կայ. բայց շունը զգաց, ու շատ անգամ տէրոջը լաթերէն խածաւ կըհաչէր գետին վրան, թող չէր տար որ գետը մանէ. երբ տեսաւ թէ տէրը լաթերը հանեց պիտի ջուրը նետուէր՝ շունը նախ ցատկեց ջուրը. մէկէն գազանը զինքը յափշտակեց, տէրն որ տեսաւ զարմանալով շանը գործքին վրայ՝ շուտով փախաւ անկէ։

նի մը ուշ չէր դրած թէ ինչպէս կը շինեն. որ թէպէտ մեծ բան մը չէր, սակայն ինքը անհոգ ըլլալով կերպը չիտեր, որ այս հարկաւոր բանը կատարէ։ Եւ որովհետեւ հովանոցն որ շինեց՝ մտմտալով յաջողեցաւ, անատենէն եւս միշտ բանի մը հետ ըլլալով ժամանակը պարապ չէր անցըներ. ուստի սկսաւ մտածել կողով շինելուն վրայ, մինչեւ փորձելով ջանալով կերպը գըտաւ, հաստատ կողով մը շինեց. ետքը մէյմ՝ ալ շինեց՝ երկուս ըրաւ իրար կապեց չուանով լամային վրայ դրաւ, որ երկու կողմէն կըկախվէին։

Ահա այս կերպով բոլոր աղիւաները կրեց բերաւ հոն, և սկսաւ վառարանին պատը շինել. աւաջ մէկ կողմը շինեց, մէկալն ալ սկսաւ բարձրացնել. բայց նոյն գիշերը դիպուած մը պատահեցաւ իրեն որ խելքը գլխէն տարաւ։ Վասն զի ցորեկը աշ-

խատանքէն հոգնած ըլլալով իրիկունը գնաց տեղը հանգիստ պառկեցաւ. լամաններն ալ ոտքերն տակը պառկած էին. լուսինը գեղեցիկ պայծառ ծագեր էր. օդը մաքուր պարզ. հով բան չըլլալով ձայն ձուն չի կար։ Ռօպէնսօն անուշ կը քնանար. և ինչպէս որ սովորութիւն ունէր՝ երազին մէջ սիրական ծնողքը տեսաւ. երբոր մօտեցաւ իրենց, յանկարծակի որոտում մը եղաւ անանկ ահագին սոսկալի, որ ոչ եղեր է և ոչ լսուած է. ինչպէս պիտի պատմենք հետևեալ դիպուածին մէջ։

## Թ. Դիպուած.

Ինչպէս ըսինք՝ Ռօպէնսօն երբոր անոյշ քունին մէջ սիրական ծնողքը կը տեսնէր, օդը պարզ աղուոր, լուսինը պայծառ, յան-

կարծ գետնաշարժութիւն մը պատահեցաւ անանկ ահեղ սոսկալի՝ որ չէ լսուած. Նախ ահագին որոտում մը եղաւ կարգէ դուրս զարհուրելի զարմանալի փոթորիկներ գոչումներ մէկէն լսուեցան. Երկինքը կրակի պէս փայլատակելով կայծակ կը հանէր։ Ռոպէնսօն դողալով արթնցաւ վեր ցատկեց՝ չէր գիտէր թէ ինչ եղաւ և ինչ պիտի ըլլայ։ Նոյն կէտին մէջ գետինը սոսկալի կը շարժէր. ահաւելի որոտում մը գետնին տակէն լսուեցաւ. իսկ զարհուրելի փոթորիկն որ եղաւ ծառերը և ժայռերը շրջեց. մինչև ծովուն անդունդին տակէն ալ դոռալու ձայներ կելլէր աշխարհք կը դողացընէր. կարծէիր թէ բոլոր տարերքը իրարու հետ կռիւ կընէին. և կերեւնար թէ ամէն բան պիտի կործանի [1]։

1 Ռոպէնսօն օրագրութենը մէջ կըսէ, թէ

Ռոպէնսօն յանկարծակի զա-
սոնքը լսելով կիսամեռ դուրս ցաթ-
կեց բնակարանէն սկսաւ խեն-
դի պէս փախչիլ. լամաներն ալ
վախերնուն ետևէն կըփախչէին։
Հազիւ թէ անկէ դուրս էին ե-
լեր, լեռան մէկ կտորը փրթաւ
ընկաւ Ռոպէնսօնին պառկած
տեղը. որ սաստիկ վախուն թըռ-
չունի պէս կըվազէր. Նմանապէս
լամաներն ալ խռոված կըփախ-
չէին։ Իրեն առջի մտածմունքն
եղաւ վազել ելլել մօտ եղած լե-
ռանը վրայ. որուն վրայ դուր
դաշտավայր էր լեցուն ծառե-
րով։ Երբոր կըվազէր խիստ վախ-
նալու բան մը տեսաւ. վասն զի
լեռան մէկ դին բերան մը բաց-
ված էր մէջէն կելլէր մուխ՝ բոց՝
մոխիր՝ քար։ Նաև կրակի նման

ծովուն խռովքը ցամաքէն աւելի էր. ա-
նանկ գոռալու ձայներով կերերար ահա-
գին ովկիանոսն որ՝ վախէս լեզուս կապվե-
ցաւ, միայն պյաշաւի աղօթք կրնայի ընել,
թէ տէր ողորմէ ինծի։

Հալած նիւթ մը կըվազէր, որ կըսուի լաւա [1]։

Որո՞վ կըրցաւ փախչիլ հեռա-նալ անկէ, որովհետև լաւա նիւ-

1 Երկու երևելի հրաբուղխ լեռներ կան Իտալիա, մէկը Նաբօլի Վէզուվ անուանով, մէկալը Էթնա Սիկիլիա կղզին. որ հին ատեններէն 'ի վեր միշտ թանձր մուխ և բոց կ'ելլէ բերաններէն. վասն զի մէջի նիւթերը կը վառին երբեմն անանկ սաստիկ որ դէպ ի ալէս բերնէն կելլեն կըվազեն։ 1693 ին Էթնա լեռը սոսկալի թընդեցաւ, անանկ մեծ երկրաշարժութիւն բերաւ, որ 90 հազար մարդ մեռցուց Սիկիլիայի մէջ։ Նմանապէս Վեսուվ լեռն ալ երբեմն թընդելով շատ վնաս կուտայ Նաբօլիին. երբեմն սաստիկ թընդելով մէջի նիւթը՝ անհագին ձայներ կըլսուին բերնէն. և երբեմն մինչև 200 հօխայ ծանրութիւն քարեր կընետէ դուրս հեռուն։ Նաև հրեղէն գետ կըվազէ, ինչպէս եղաւ 1794 ին, որ մինչև ծովը վազեց գընաց։ Այս նիւթը փորձեցին Քիմիականները տեսան՝ որ պաղլեղէ ու արջասպէ բաղադրած է։ 1707 Սանդորինի կղզիին քով նոր կղզի մը ծովուն մէջ բուսաւ. գիշերը բոց կերևնար՝ ցորեկը մուխ. Ջուրը ը երբեմն կանանչ կերևնար, երբեմն կարմիր, ու 40 օրուան մէջ մէկ ժայռ մը անձեւ ու, ու նա-րէն հալեցաւ կորաւ։

Թը բոլորօքած գետին նման կը-
վազէր. և մեծամեծ քարեր մէկ
դին մէկալ դին կարկուտի պէս
կընետուէին ։ Երբոր միւս կողմը
կըփախչէր ուրիշ նոր վտանգ մը
առաջին ելաւ. որ էր սարսափե-
լի փոթորիկ մը, որ ամէն կող-
մանէ փչելով պաշարեց խեղճը ։
Այս փոթորիկը բոլոր ամպերին
իրար բերաւ ժողվեց. մինչև ծան-
րանալով սկսաւ անանկ մէկ ջըր-
հեղեղ անձրև մը, որ քիչ ատե-
նին մէջ բոլոր կղզին ջուրը կո-
խեց լիճ մը եղաւ ։ Ռօպէնսօն
ելաւ ծառին վրան շատ նեղութ̃
քաշելով ազատեցաւ վտանգէն,
և խեղճ լամաները անձրևը քըր-
շեց տարաւ. երբոր խեղճութ̃
կըկանչէին Ռօպէնսօնին սիրտը
կըհալէր ։ Շատ ջանաց որ զա-
նոնք ալ ազատէ. բայց գետի նը-
ման ջուրերը առին տարին ։

Գետնաշարժութ̃ը քիչմը ա-
տեն ալ շարունակեց, անկէ ետև
մէկէն դադրեցաւ բոլորովին.

անձրեւը և փոթորիկը անցան.
Հրաբուղխին բերնէն ելած նիւ-
թը կտրեցաւ բան չէր վազեր.
Ետքը երկինքն ալ բացուեցաւ,
բոլոր ջրերը քաշուեցան կէս ժա-
մին մէջ [1]:

Սօպէնսաօննոյն գիշերը ծառին

1 Որովհետեւ գետնին տակը մեծ խոռոչ-
ներ ծակեր կան լեցուն օդով և գոլորշի-
քով. ուր կըդիզուին դիւրավառ նիւթեր.
այս ինքն ծծումբ, բորակ, ձիւթ, ևն: Այս
նիւթերը խառնուութը խմորելով տաքնան
կըբռընկին. ինչպէս երած քարին վրայ ջուր
լեցընես կըբռընկի կիր (քիրէճ) կըլլայ,
մուխ կըհանէ. այսպէս կըլլայ երբոր ջուրը
հողէն անցնելով այս նիւթերը կըտաքցընէ.
որոնք տաքնալով կըբռընկին, գոլորշի կը-
հանեն. նաև այն ծակերուն մէջի եղած օդն
ալ տարածուելով տաքէն կըշատնայ՝ անանկ
սաստիկ որ տեղ կուզէ դուրս ելլելու. ա-
սով վեր վար կըշարժէ գետինը, գետնաշար-
ժուն կըլլայ. մինչև որ մէկ կողմէն պատ-
ռէ դուրս կելլէ գոլորշին կամ բռընկած
նիւթը. որ երբեմն այնչափ կըդիզուին որ
լեռան պէս կըլլան, և քարի տեղ կըգոր-
ծածուին: Թէ որ խոնաւ տեղ մը փորելով
փոս չինես, ու մէջը ծծումբ և երկաթի
խարտոց լեցընես. այս նիւթը կըսկըսի խը-
մորելով տաքնալ և ինքնիրեն բռընկիլ:

վրայ կըդողար վախուն. առտըւան դէմ ծառէն վար ինջաւ խռովւած յուսահատած այս Թըշւառուեց վրայ, որ գլխէն անցան. այնչափ որ չէր կընար միտքը վրան ժողվել և շնորհակալութի՛ ընել այս նոր ազատութեը համար, որ այսչափ մեծ վտանգներէն ՚կեանքն ազատեցաւ: Խեր զի՛ միտքը դըրրէր էր Թէ գետնաշարժութիւը աւրեր կործաներ է իր բնակարանը ամէն բանով. և սիրական լամաներն ալ ջրերուն մէջ խղդըրւած են. ուստի անպատմելի ցաւով կըկսկըծար, որ բոլոր բաները կորան և մտքին մէջ դըրած բաներն ալ անցան գացին:

Մութ տեղը նայեցաւ, որ հրաբուղխին բոցը ցածցեր էր. միայն սև մուխ մը կելլէր բերնէն. անկէ ետքը այս լեռը հրաբուղխ եղաւ: Ռօպէնսօն զասոնք տեսնելով ինչպէս տարակուսանաց մէջ էր. սոսկալով կըդողար

Թէ նորէն գետնաշար ժուռ չըլ-
լայ · սրտին հոգն ու տրտմութը
աւելի ծանրացան · միշտ աչքին
առաջին էին այն տասն նուէրնե-
րը · անմխիթար սրտովն չէր ուզեր
վեր նայելու, այլ թողուց իր մի
միայն ապաւէն ստեղծողը · հա-
նապազ միտքը հաստատեր էր
գալու չարիքներուն վրայ · վասն
զի կարծէր թէ միշտ այն որ ըլ-
լան անպակաս [1] ։

Հալեցաւ մաշեցաւ ողորմելին
անհանգիստ տագնապելով ։ Եւ
այն ծառին կըրթընած կը հա-
ռաչէր կողքար տառապանքքով ։
Այսպէս անմխիթար մնաց հոն
բոլոր այն գիշերը, մինչև արշա-
լոյսը բացվելով լոյս ծագեց ։ Ա-
ռաւօտուն՝ արեգակը գեղեցիկ

1 Ջրհեղեղէն ետև մարդիկ միշտ՝ դողը մէջ էին Ռօպէնսօնին նման . քանի որ՝ անձ-րև կուգար դող կելլէին՝ չըլլայ թէ ։ Ջըր-հեղեղ ըլլայ · անոր համար ած նշան դրաւ ծիրանի գօտին, որ տեսնելով հանգըստան թէ պիտի չ գալիր անձրևը ։

ծագեր էր չորս դին․ երբոր ա-
մէն բան աղւոր երեւնալով կը-
ծիծաղէր, խեղճ Ռօպէնսօն խա-
ւար տրտմութէ մէջ ծառին կըր-
թընած կեցեր էր ։ Ամենեւին
աչքը քուն չէր մտած․ անանկ
խռովուած էր, որ հազար անգամ
ցաւագին սրտով կը հառաչէր,
թէ ո՛հ ի՞նչ եղաւ ինծի ։

Հուսկ յետոյ սկսաւ առաջ
երթալ կլորտըկելով, որպէս թէ
երազի մէջ ըլլար․ բայց դէպ 'ի
բնակարանն երթալու ատենը
երբոր տեսաւ սիրական լամանե-
րը ողջ առողջ դիմացն ելան, ու-
րախութէն խելքը գլխէն գնաց ։

Մէկէն չի հաւատաց աչքին
տեսութէնը, կարծէր թէ սուտ
է․ բայց շուտով վրայ եկաւ ։
Լամաներն ալ զինքն որ տեսան
վազեցին վրան սկսան ձեռքը լը-
զել․ և հանդարտ ցաթկելով
կուրախանային իրենց տիրոջը
հետ ։

Ռօպէնսօնին սիրտն որ մինչև

անտառներն տրտմութիւն քար կըտրեր էր , մէկէնիմէկ արթնցաւ . լամաներուն վրան որ նայեցաւ , աչքը վեր վերցուց երկինքը , ուրախութենն սկսաւ լալ . Նաև ձայնն բարիքը միտքը բերելով զղջացաւ ըրած յուսահատութենցը համար : Երկար ատեն արցունքն երեսն 'ի վար կըվազէին : Անկէ ետքը լամաները սիրելով առաւ հետը գնաց՝ նայելու թէ ինչ եղաւ բնակարանը :

Կերևնայ թէ ջուրն առաւ լամաները քշեց՝ մէկ բլուրի մը վրայ հանեց . ուր քիչ ջուր ըլլալով ցամաքը մնացին կենդանիները ազատեցան . Ետքը փոթորիկն որ անցաւ դարձան եկան սորված տեղերնին : Ռօպէնսօն գնաց բնակարանին առջին . զարմանալով տեսաւ թէ ինչպէս ինքը կըկարծէր՝ անանկ չարաչար չէր կործանած . իբաւ բնակարանին վրայի քարը վար էր ինկած , ու քովի հողերը մէ-

Ջրմն էին լեցված. բայց անկարե-
լի չէր այն աւերակները դուրս
հանել, ու նորոգել այս կործա-
նումը. մանաւանդ որ անատենը
աւելի կըմեծնար բնակարանը և
առաջվանէն աղէկ բնակելու
տեղ կըլլար ։

Այս բաներուն վըրայ լաւ մը-
տածելով Ռուպէնեան հասկըցաւ
թէ ա̃ծային նախախնամութ̃իը
զինքը սիրելուն համար խըրկեց
այդ դիպուածները, չէ թէ պա-
տուհասելու համար ։ Իբր զի՛
մօտէն քննեց նայեցաւ, որ բը-
նակարանին վըրայի այն մեծ քա-
րը չորս դիէն փըտտած հող էր
դարձեր, հարկ էր որ օր մը ինքն
իրեն վար իյնի Ռուպէնեանին վը-
րայ ։ Ահա ամենաբարին իւր
անհուն ողորմութ̃ը խնայելով
Ռուպէնեանին, որ չըլլայ թէ դի-
պէր առեն այն քարին տակը մնայ
չարաչար մեռնի ողորմելին, այս
դիպուածը տվաւ ։

Ուրեմն յայտնի է թէ իմաս-

տունին մ̃յ առաջուց կարգաւո-
րէր էր որ այս մարդս երկար
ապրի․ և աշխարհքս ստեղծած
ատենը այնպէս բարեկարգեց՝ որ
այս ժամանակիս պահվի այս
բանը և այս երկրաշարժութ̃իը։
Գետնին տակէն ելած որոտու-
մին ձայնը, նաև գետնին երե-
րալը՝ իբր թէ ձայն տալով Ռօ-
պէնսօնին՝ խռովեցին որ փախչի
ազատի․ թէ որ առանց ձայնի
ըլլար գետնաշարժու̃իը, յայտ-
նի է թէ չէր կրնար արթըննալ
Ռօպէնսօն․ անտարակոյս քա-
րը վրան փլչելով չարաչար կը-
մեռցընէր։

Ահա տես թէ ա̃ծ ի̃նչպէս
կըհոգայ մարդը՝ նաև անանկ
ատեն որ կարծէր թէ ողորմու-
թ̃իը հեռացեր է իրմէն․ քանի՜
զարմանալի կերպով ազատեցաւ
Ռօպէնսօն․ իբր թէ մասնաւո-
րապէս խրկեց ա̃ծ այս դիպուածն
որ Ռօպէնսօն առաջուց իմանա-
լով այն մեծ վտանգէն ազատի․

Ուստի այս բաներս ամէն մարդ օրինակ առնելով ամէն առթի մէջ պէտք է միշտ արթուն ըլլալ ա̃ծային ձայնին, որ այսպիսի դիպուածներով կը խրատէ մարդը՝ զգոյշ կենալ. և որչափ տրտմական պատահմունք ըլլան, պէտք է գիտնալ նախ թէ միշտ մարդուս մեծ կերևնայ չեկած թշուառութիւնը քան թէ իրօք պատահածը. երկրորդ թէ ամէն չարիքն ու պատուհասներն՝ որ ա̃ծ կը խրկէ, բարի վախճանաւ մեզի օգուտ կըկարգին. և միշտ մեզի աղէկութիւն մը գալու համար կը պատահին, ինչպէս որ յայտնի կընէ այս ճշմարտութիւնը հետևեալ ոտանաւորս։

Խոնարհեալ ընկալցուք՝ զբարիս
գերաբուն,
յենարան մեր միայն՝ վեհ բա-
զուկ բարձրելոյն.
Պարզեսցուք ձեռս մեր՝ ՚ի զըն-
նել նըրբագոյն,

զազդարար զխուր շնորհ՝ և զաւ
նա մեր դարձումն ։
Պատուհաս Երկրաւոր՝ զոր տայ
մեզ երկնաւորն ,
բարեբեր շնորհածիր՝ վասն
մեր բեղմնաւոր ․
Թէև դառն են այն փուշք՝ և
որչափ ահաւոր ,
են աղբիւրք նոր սիրոյ՝ և խը-
նամոց նորանոր ։

## Ժ ․ Գիպտած ։

Ս՝օպէնաօն սովորութի ու-նէր որ ամէն բանին ետևէն ա-ղօթք ընէ ․ ուստի մէկէն ծնկան վրայ եկաւ՝ սկսաւ շնորհակալ ըլլալ Այ այս նոր ազատութեանը համար ։ Անկէ ետև սկսաւ աշ-խատիլ , որ իր բնակարանին աւ-րածները շինէ ․ Թէպէտ քիչ աշխատանքով հողերն ու փլած-ները վերցուց , բայց այն մեծ

քարը չի կրցաւ վերցընել․ որ երկու կտոր էր եղած․ Մէկ մարդուն ուժը բաւական չէր որ կոտըրտելով փշրէ ։

Շատ ջանաց որ գէթ պզտի կտորը հրելով դուրս ձգէ՝ չի կրցաւ․ վասն զի իր կարողութեն շատ վեր էր գործքը ։ Այս անյաջող ջանքը նորէն խեղճին սիրտը կոտրեց միշտ կըմտմըտար թէ ինչպէս պիտի ըլլայ ետքը ։ Շատ հոգ ընելէն ետեւ յանկարծ միտքն ընկաւ լծակ գործիքը․ որով ծանր բաները կըշարժեն աշխատաւոր մարդիկ․ որովհետեւ մանկուն ատենը տեսեր էր՝ թէ բանվորները երբ ծանր բան մը կուզէին շարժել, մեծ փայտ մը տակն անցընելով բանի մը վրայ կըդընէին՝ ծայրէն կոխածնուն պէս կըշարժէր․ ինքն ալ մեծ փայտ մը կտրեց լծակ շինեց քարին տակը խօթեց, պզտի քարմ՝ ալ քովը դրաւ, վրան կըթնցուց լծակը․ ետքը

փայտին ճօթէն կոխածին պէս՝
քարը շարժեցաւ տեղէն ։ Եւ
այսպէս կէս ժամին մէջ յաջո-
ղութի կլորելով երկու քարն ալ
դուրս ձգեց անկէ, որ չորս մարդ-
չէին կրնար տեղէն շարժել ։ Ուս-
տի մեծապէս ուրախացաւ տես-
նելով թէ ոչ միայն առաջվանէն
ընդարձակ եղաւ բնակարանը ,
այլև աւելի ապահով եղաւ ա-
մէն կողմէն . վասն զի թէ՛ պա-
տերն ըլլան, և թէ առէգը՝ միակը-
տոր մէկ քարմ՝ էր եղեր . ոչ փըլթ-
թած քար մը կար և ոչ ճեղք
մը ։

Ելաւ գնաց Հրաբուղխ տեղը ,
տեսաւ որ մէկ սև մուխ մը կել-
լէր . շատ զարմացաւ դուրս ե-
լած նիւթին վրայ , որ ամէն դի
վազէր կերթար . երկար ատեն
տաք մնալով մինչև հեռուն կը-
վազէր ։ Այս զարհուրելի երե-
ւոյթը հեռուէն կըդիտէր . այն-
չափ սոսկալի էր Հրաբուղխ բե-
րանին որ վախուն չի կըցաւ առաջ

երթալ։ Ցետոյ տեսաւ թէ այն հրեղէն նիւթը դէպ ’ի գետնի խնձորին տեղը վազեր էր. վախցաւ որ չըլլայ թէ այն բոյսերը ապականէին. չի կրցաւ հանգիստ ըլլալ՝ մինչև որ չի գնաց հոն. որոնց վնաս մը չէր եղած։ Այս բանին վրայ՝ միտքը դըրաւ թէ ամէն դի գետնի խնձոր տնկէ շատցընէ. որ չըլլայ թէ օր մը սաստիկ զարհուրելի դիպուածով մը բոլորովին կորսըվին։ Սակայն ձմեռը խիստ մօտ ըլլալով տարակուսեցաւ թէ չեն բռներ. ով գիտէ կըսէր, կրնայ ըլլալ որ աս ալ այն տեսակ բոյսերէն ըլլայ, որոնք ձմեռնալ կըդիմանան. ուստի այս խորհրդով սկըսաւ գետինը փորել։ Բայց զարմանալին այն եղաւ, որ այս սոսկալի դիպուածը՝ ուրիշ մեծ աղէկուն մը պատճառեց. վն զի հրաբուղխ բերնէն շատ բան դուրս, ցաթկելէն ’ի զատ շատ երած քարեր ալ դուրս եկան, որ կիր

( քիրէճ ) էին եղեր . Թէպէտ հաստատակօրէն փուռան մէջ երելով քարը կիր կըդառնայ . բայց այն լեռը՝ փուռան նման մէջի քարերը երելով կիր ըլլաւ ու դուրս նետեց ։

Ռօպէնսօն գետինը փորելով փոս մը շինեց երած քարերը ժողվեց մէջը լեցուց . վրան ալ ջուր թափելով կիրը մարեց , ինչպէս որմնադիրները կընեն . ետքը քիչմը աւազ բերաւ միատեղ շաղվեց , ու յաջողութ̃ե ուզած բանը շինեց անով ։ Իսկ հրաբուղխին մուխը դադրելէն ետև Ռօպէնսօն մօտեցաւ բերնին քով տեսաւ թէ լավա նիւթը անանկ պաղեր էր մէջն որ ամենևին մուխ չէր ելլէր . հասկըցաւ որ տակի կրակը բոլորովին մարած է . և վախնալու բան չէ մնացեր ։ Անկէ սիրտ առաւ ու ձմեռվան պէտք եղած բաները սկսաւ հոգալ ։ Ուստի նախ գնաց լամա որսալու . մինչև ութը հատ բըռ-

նեց առաջվան կերպովը. մէկ արու լամա մը պահեց, որ ընկեր ըլլայ իրեն լամաներուն, մէկալները բոլոր մորթեց, միսը չորցուց ապուխտ շինեց. Նախքանիմը օր աղը պառկեցուց. Ետքը հանեց վառարանին մէջ մուխը կախեց որ չորնան. ինչպէս որ տեսեր էր իր մօրմէն պզտիկութեն ատենը։

Թէպէտ Ռօպէնսօն իրեն պէտք եղածին չափ պաշար ճարեր էր, բայց վախնալով չըլլայ թէ ձմեռը սաստիկ և երկար ըլլայ՝ կուզէր աւելի բան ունենալ։ Միտքը դրաւ որ մէկ քանի լամաներ ալ բռնէ. բայց չի յաջողեցաւ. ինչու որ կենդանիները զգացին իրենց վտանգը, կըզգուշանային ծառին մօտենալու։

Ուստի պէտք եղաւ որ ուրիշ նոր եղանակ մը գտնէ զանոնք բռնելու. ինչպէս որ հարկը իրեն յաջողեց՝ աստ ալ հնարքը գտնել։ Որդիտեր որ որչափ ան-

գամ լամաները ջրին քով կըմե-
տենային՝ վախ մը կուգար իրենց
խրտելով արագ կըփախչէին ծա-
ռին քովէն պզտի լեռան վրայ ։
Այս լեռին մէկալ կողմը պա-
տած էր մանր ծառերով. քովէն
ապառաժ մը վէր ելած էր շի-
տակ պատի պէս, բարձր երկու
գրկաչափ. դիտեց որ լամաները
սաստիկ կըցատկէին վէրէն վար
ան ժայռերուն մէջ ։ Այս դի-
տողութը կատարելէն ետև՝ փո-
րեց այն տեղը խորունկցուց, ա-
նանկ որ լամաները երբոր պիտի
ցատկէին՝ փոսին մէջ կիյնէին ։
Ուստի օր ու կէս աշխատելով
փոսը լմնցուց ու վրան գոցեց ։
Միւս օրը տեսաւ որ լամաները
ցատկելով երկու լամա բռնըվե-
ցան. շատ ուրախացաւ ։

Նոնց միսն ալ չորնալու դնե-
լէն ետև, այսչափ ապրուստին
վրայ նայելով զըւարճանալու
տեղը՝ նորէն սկսաւ հոգ ընել.
որ ուրիշ տեղ մը ճարէ զանոնք

դնելու ձմեռը • որպէս զի եթէ դժբաղդութեամբ երկրաշարժութիւն ըլլայ՝ տեղ մը ունենայ ։ Ասանկ մտածելով կըդիտէր • տեսաւ որ բնակարանին քով լեռան մէկ կտորը ելած էր • տեղը երկու գրկաչափ խորունկցած ըլլալով այր (մաղարա) մը ձեւացած էր • որ բաւական լայն ըլլալով պատ շինեց՝ ուրիշ բնակարան մը ե-ղաւ մէկալին քով այնչափ լաւ, որչափ որ կրնար հնարել ար-ւեստը ։

Հիմա մնաց Ռոպէնսօնին ը-նելու երեք բան • որով կարենայ բոլորովին նախատես ըլլալ ձը-մեռվան ամէն բանին ։ Պէտք է նախ և առաջ խոտ ճարել լա-մաներուն համար • երկրորդ՝ փայտ ժողվել վառելու համար • երրորդ՝ գետնի խնձոր հանել նոր բնակարանին մէջը պահելու համար ։ Շատ խոտ քաղեց բե-րաւ իրարու վրայ դիզեց կար-գով՝ ինչպէս գեղացիները կըշա-

րեն ծառի պէս. խիստ ուժով կըկոխեր իրարու վրայ, որ անձրև չէր կրնար մէջէն անցնիլ. սակայն անփորձ ըլլալով քաշած աշխատանքը փուճ եղաւ: Որովհետև հոգ չըրաւ նախ խոտերը լաւ չորցընելու, երբոր այնպէս թաց իրարու վրայ կոխեց, սկըսաւ խոտը տաքնալ մուխ ելլել. մինչև սկսաւ երիլ: Ռօպէնսօն աստանկ բան լաւծ չըլլալով խիստ շատ զարմացաւ. վասն զի գեղացիներուն վերաբերեալ բան է: Ուստի անատենը լաւ հասկըցաւ, թէ որչափ օգտակար է ամէն բանի տեղեակ ըլլալ. և որչափ կարելի է՝ ամէն բան գիտնալ մանկութեան ատենը. վասն զի չիյտէ թէ ո՛ր բանին կարօտ պիտի ըլլայ ժամանակով. և ի՞նչ բաներ պիտի ընէ:

Այս պատճառաւ սոսկաց երբոր տեսաւ թէ խոտերուն մէջէն մուխ կելլէ: Նաև աւելի մեծ եղաւ զարմանքը ձեռքն որ խօ-

թեց խոտին մէջ, նայեցաւ որ կերեր խոտը ։ Միտքը չեր հասնիր թէ այս կրակը ինչպես պատճառեցաւ . և ուսկից կրակը այն խոտերուն մէջ մտաւ ։ Ուստի սկսաւ խոտերը ետ առնել . կընայէր որ տեղ մը կրակ չի կայ ու սաստիկ տաք և թաց է, զարմանքով պաշարվեցաւ ։ Վերջապէս միտքը դրաւ թէ միայն թացութիւնն է ասոր պատճառը . բայց չէր կրնար գիտնալ թէ ինչպես կըլլայ ։

Սասոն զի այս բանը կըպատճառի Փիզիքական խմորմանէ . որ ներքին ոգիքը խոտին թացութեամբ արթննալով, կըտաքցընեն նիւթը . ինչպես կըլլայ՝ խըմորը, նաև գինին՝ երբ ներքին մասունքը կամ ոգիքը շարժելով կըպճպըճան ։

Ռոպենսոն հարկադրեցաւ որ այն խոտերը վերցընէ լաւ մը չորցընէ . աղէկ չորնալէն ետև նորէն դէզ շինեց՝ վրան ալ ա-

նանկ լաւ գոցեց որ մեր տանիք-ներուն պէս ոչ անձրեւ կանցնէր եւ ոչ հով։ Հետեւեալ օրը այնչափ չոր փայտ ժողվեց, որչափ որ հարկաւոր էր իրեն. ետքը գետնի խնձորներն ալ հողէն հանեց բերաւ համբարանոցը. որով բաւական կերակուր պատրաստեց իրեն ձմեռուան համար։ Անկէ ետեւ սիրտը հանդչեցաւ, այլ հոգ չէր ըներ թէ ծանր ձըմեռ ըլլայ նէ ի՞նչ պիտի ընեմ։

Գրեթէ հոկտեմբերին ամիսը լմըցեր էր՝ բան մը չեղաւ. թէպէտ ինքը շատ կը հոգար՝ թէ ձմեռը կըկոխէ։ Ցուրտին տեղը անձրեւ բերաւ եղանակը. եւ այնչափ շատ կուգար, որ կարծէիր թէ օդը ջուր փոխված է. չգիտէր թէ ի՞նչ ընէ. վասն զի 15 օր ընակարանէն չելաւ՝ դուրսը ոտք չի կոխեց. որ երթար համբարանոցը նայէր, նաեւ ջուր խոտ բերէր յամաններուն. մինչեւ հարկադրեցաւ որ այն միջոցին մէջ

իւր բանտարգելալ հօն մնայ[1]:

Չէ՛ թէ ի՛նչպէս ծանր և երկար եկաւ իրեն այն եղանակը. գործք մը չունէր որ ընէր. շատ մեծ նեղութի՜ւն կըքաշէր միս մինակ և անգործ. թէ որ կարելի ըլլար իրեն գիրք մը տալ, կամ քիչմը թուղթ և կաղամար, անկէ մեծ բան չէր կրնար ըլլալ: Շատ անգամ հառաչելով կըսէր ու կուլար, թէ ո՞րչափ մեծ յիմարութի՜ւն ըրած եմ մանկութեան ատենս որ անհոգ եղայ, չի սորվեցայ ուսումնականութիւն, և օգտակար բաներ. միայն դատարկութեան ետևէն եղայ զըւարճալի բանի մը պէս. ո՜հ հիմա ի՛նչ գիրք որ ըլլայ՝ ինծի անգին գանձի տեղ կանցնի. մէկ թերթ թուղթն ու

1 Այս կղզիներուն մէջ հարաւային և հիւսիսային հովերը յաճախ և սաստիկ փըչելով ոչ միայն միշտ օդը կըխռովեն, այլև շատ անգամ անձրևներ կըլլան անանկ սաստիկ որ ջուր կըկոխէ. մանաւանդ հոկտեմբերին և նոյեմբերին:

գրիչը հիմա իմ առջիս թագաւորութիւն մը կարժէ ։

Այս ձանձրացուցիչ ժամանակիս մէջ՝ հարկը ստիպեց զինքն որ աշխատանքի ետեւէ ըլլայ քան չինէ . որ մինչեւ անատենը չէր մտածեր . ուստի միտքը դրաւ որ կաւէ ամաններ շինէ իրեն գործածութեան համար . եւ անով հանգիստ վիճակ ունենայ ։ Թէպէտ անձրեւը միշտ կուգար , բայց մտիկ չըրաւ . գնաց վաղելով կաւ (չամուռ) բերաւ ու սկսաւ ըրրուտի պէս աշխատելով պտուկ եւ ուրիշ ամաններ շինել ։ Այս գործքը մէկէն լաւ չի յաջողեցաւ . շինած ամաններուն շատը անպիտան եղաւ . բայց ուրիշ գործք մը չունենալուն համար , զուարճութեան պատճառաւ կաշխատէր . շատ անգամ կըշինէր կաւրէր պակասաւոր ըլլալուն համար ։ Այսպէս քանի մը օր անցուց այս զուարճալի աշխատանքով մինչեւ ճամբան գտաւ՝

ուզած ամանները շինեց կատա-
րեց խիստ գեղեցիկ. Ետքը շա-
րեց զանոնք վառարանին մէջ կը-
րակէն հեռու, որ քիչ քիչ չոր-
նան: Անկէ ետև զանազան ձևով
և մեծութեամբ պտուկներ, փար-
չեր շինեց, և որչափ որ շատ բան
շինեց՝ այնչափ լաւ սորվեցաւ
շինել: Անձրևը անդադար կը-
շարունակէր. Ռոպէնսօն հար-
կադրեցաւ ուրիշ գործք մը մը-
տածել, որ սրտին նեղութիւնը անց-
նի: Ուստի սկսաւ ձկնորսի թօռ
շինել. որ խիստ օգտակար էր ի-
րեն ձուկ բռնելու համար: Այս
գործքս ալ աղէկ յաջողութեամբ
կատարեցաւ: Վասն զի թէպէտ
շատ աշխատեցաւ, շատ անգամ՝
փորձելով՝ վերջապէս կերպը սոր-
վեցաւ՝ թելերը իրար կապելու,
և այնչափ յաջողութեամբ կոլըրէր
կը հիւսէր թելերը փայտէ գոր-
ծիքով մը, որ քարէ դանակով
շիներ էր. մինչև գեղեցիկ կա-
տարեց թօռը՝ ձկնորսներուն նը-

ման․ որով ձուկ կբռնեն։ Այս-
տեղը միտքն ընկաւ որ փորձե-
լով շինէ մէկ աղեղ (օղ՝ եայ)
մը․ իրաւի երկար ատեն ասոր
վրայ մտածելով շատ սիրտ մա-
շեց․ վասն զի գիտէր թէ որչափ
հարկաւոր էր իրեն․ կրնար ա-
նով լամաներ ալ զարնել թռչ-
չուններ ալ․ նաև կրնար զինքը
պաշտպանել, թէ որ լեռան մար-
դիկ վրան հանէին օր մը։ Ա-
սոր համար սիրտը կըհալէր որ
շուտով կատարէ։ Ուստի ան-
համբերութ̃ անձրևին մէջէն
վազեց գնաց յարմար փայտ գտա-
նելու։ Այնչափ փայտերուն մէ-
ջէն ուզած փայտը չի գտաւ ա-
ղեղ շինելու համար․ իբր զի՝ ա-
նանկ փայտ կուզէր որ ըլլայ ա-
մուր և կակուղ․ մինչև կարե-
նայ ծռիլ և դառնալ առջի վի-
ճակը առաձգութ̃։

Բայց հուսկ յետոյ գտաւ ու-
զած փայտը՝ սկսաւ շինել․ ամի-
սոս որ շնորքով դանակ մը չու-

նէր, որ ուզածին պէս չինէ. քը-
սան անգամ զարնելով չէր կըր-
նար կոտրել։ Այս գործքիս վրայ
շատ աշխատելով չարչարվեցաւ
մինչև իրիկուն. բայց ամէնևին
չի յուսահատեցաւ, ութ օր լը-
ման հոգնեցաւ. անանկ զարմա-
նալի էր համբերութին՝ որ չէ տես-
ված։ Սակայն իններորդ օրը լը-
մընցաւ աղեղը ուզածին պէս,
որ շատ ուրախացաւ։ Հիմա մը-
նաց իրեն մէկ լար մը և նետ մը
ճարել։ Թէ որ լամաները մոր-
թած ատենը միտքն եկած ըլ-
լար, կառնէր աղիքները կոլըրէր
լար կըշինէր. ինչպէս հոս ոչխա-
րինը կընեն։ Որովհետև չի կար՝
չուան մը ոլըրեց կապեց աղեղին
լմընցուց։ Մնաց սուր երկաթ
մը գտնել մախաթի նման, որ
նետին ծայրը անցընէ. թէ որ
մէկը տար իրեն, ի՞նչ որ ուզէր
կուտար. բայց ո՛ւր պիտի գըտ-
նէր։ Ուստի այրին դռանը քով
կեցեր կըմտմըտար, թէ ի՞նչ

բան կրնայ ըլլալ, որ երկըթին տեղը բռնէ: Երբոր անդին գնաց մէկէն աչքին դպաւ այն գտած ոսկին, որ անպիտան բանի մը պէս մէկ դի ձգած էր. իրեն դըժ-ւար եկաւ, սկսաւ բարկութը̃ պոռալ. գնա՛ կորիր աչքիս առ-ջևէն՝ կըսէր, գարշելի՛ հանք, գնա՛ կորիր. շատ աղէկ էր որ երկաթ ըլլայիր, աշխարհք քեզ մեծ բանի տեղ դրեր է. բայց իմ առջիս անանկ ոչ ինչ ես, որ և ոչ արժանի կըսեպեմ քեզի նայելու: Ահա ասանկ Ռոպէն-սոն շատ բան մտածելով ասոր ալ հնարքը գտաւ. վասն զի յանկարծ միտքն ընկաւ, լսեր էր՝ թէ լեռան մարդիկ ձկան փշով կըշինեն իրենց նետը. և երբեմն սուր քարերով. որոնց ծայրը անցընելով երկըթի տեղ կըբռնէ: Ասանկ մտածելէն ետև ուզեց որ տեգ (մզրախ) մը շինէ:

Վազեց ծովուն քով գնաց, և հո՛ն գտաւ մեծամեծ ձկան

փշեր, ինչպէս կըփափաքէր. և գնաց սուր քարեր ալ գտաւ. երբ կտրեց երկայն և շիտակ ծառ (սըրըխ) մը տեգին համար. անկէ ետև դարձաւ տեղը. վասն զի անձրևը մինչև ոսկորներին անցաւ:

Քիչ ատենին մէջ աղեղն ալ կատարեցաւ տեգն ալ. տեգին ծայրը մէկ սուր երկայն քար մը անցուց. և նետին ծայրը՝ ձկան մեծ փուշ մը անցուց. մէկալ ծայրն ալ քանիմը փետուր խօթեց, որ աղէկ երթայ:

Երբոր փորձեց աղեղը՝ տեսաւ որ յաջող է, շատ ուրախացաւ. Թէպէտ երկաթ չըլլալուն համար պակասաւոր էր, բայց յաջողութ̅թ զարկաւ անով թռչուն, և ուրիշ մանր կենդանիներ: Չէր տարակուսեր, թէ կրնայ զարնել նաև լեռան մարդիկ թէ որ իրեն մօտենային. ուստի տեգին վրայ ալ շատ ուրախանալով գոհ եղաւ:

Ռոպէնսօն տեսաւ թէ շինուած ամանները բաւական չորցած են, ուզեց գործածել. Նախ դրաւ պտուկին մէջ լամային փորէն ելած եղերը հալելու համար. որ ջրագու ըլլէ ու մոմի տեղ վառուէ: Բայց շատ սիրտը կոտրեցաւ՝ տեսնելով թէ եղը հալածին պէս ամաններն անցաւ կաթ կաթ կըլվազէր. անանկ որ ամաննին մէջ՝ բան չի մնաց. հասկըցաւ որ ոչ եղը բանի պիտի գայ, և ոչ ամանը. Նորէն սկսաւ խռովելով տրտմիլ:

Տրտմութե̃ պաշարվեցաւ Ռօպէնսօն, որ քիչ մը առաջ մեծ ուրախութե̃ մէջ էր թէ այն իրիկունը ջրագ պիտի վառէ ու քուսով կերակուր պիտի ուտէ: Այս ուրախալի յոյսը շուտով ոչնչացաւ. Թէպէտ աղէկ սորվեր էր համբերութիւն ընել, որ չի յուսահատեցաւ. մանաւանդ փորձով գիտէր թէ մէկ բանը անկատար ձգելն աղէկ չէ. այլ

որչափ կարելի է՝ պէտք է կատարել։ Ուստի Նասաւ ընակարանին մէկ կողմը սկսաւ մտմըտալ. որ սովորաբար քան մտացած ատենը հօն կընստէր, ու ձանկատը կըշփէր։ Ի՞նչ են կըսէր եւրոպա չինած ամանները, ուրիշ բան չեն բայց եթէ կաւ. ինչո՞ւ այնչափ կարծր են, որ չեն ծծեր մէջինը։ Իրաւ այն կըպատմուի ապակի (սըռւէն,) որ զանազան նիւթերով խառնած ըլլալով կրակին մէջ կըթրծի. ուրեմն ես ալ որ կրակը դնեմ թրծեմ՝ կընայ այնպէս կարծրանալ։ Զայս ըսելով վառարանին մէջ մեծ կրակ մը վառեց շուտով. երբոր լաւ մը բոցն ելաւ՝ դրաւ ամանը բոցին մէջ. դրածին պէս ձայն մը ելաւ ձաթեցաւ ամանը։

Ռոպէնսօն երբոր լսեց այս ձայնը՝ տարակուսելով ըսաւ, չըլլայ թէ ձաթի ամանը. ինչպէս կըպատահէր ձմեռվան մէջ՝

շուշայով պաղ ջուր որ կը դնէինք կրակին վրայ՝ մէկէն կը ճաթէր։ Արդեօք ասանկ եղաւ. կարծեմ թէ այսպէս ըլլալով ճաթեցաւ. ուրեմն պէտք է նախ լաւ մը չորցընել ամանը, անկէ ետքը կրակին մէջ դնել։

Այսպիսի մտածմունքներով կուրախանար ու կըսէր. ո՜հ ինչ մեծ բան է մարդկային մտաց ուժն, որ ամէն պիտուական բան կը սորվեցընէ։ Ասանկ նոր փորձեր ընելով առանց ճաթելու թրծեց ամանը կատարեց։ Ինքիրեն կըսէր թէ կրակը շատ է, վախնամ թէ չըլլար. պէտք էր փուռ մը շինել. վասն զի բոց շատ ելլելով կը ճաթեցընէր ամանը։ Այս խորհրդով ելաւ փուռ մը շինեց. բայց շատ մեծ աշխատանք քաշեց, և քիչ ատենին մէջ չեղաւ։ Անձրևն ալ միշտ կը շարունակէր, որ երկու ամիս անցաւ ետքը երկինքը բացվեցաւ։

Ընատենը մտածեց Ռօպէնսօն թէ ահա ձմեռն եկաւ. բայց կընայէր որ ձմեռն անցեր է, գարունը մօտեցեր է. իբր զի՝ հոկտեմբերի վերջն ըլլալով ձմեռվան սկիզբն էր. բայց կըտեսնէր որ գարնան պէս բոյսերը և խոտերը ծաղկած են. ծառերը սկսեր են ծըլիլ կանանչիլ։ Այս բանին իրաւի խելքը չէր հասնէր. բայց աչքով կըտեսնէր։ Ուրեմն այս ինծի մէկ կտակ մը թող ըլլայ կըսէր. այն բանն որ չէ եղած ու չեմ կընար իմանալ, պէտք չէ որ մէկէն ուրանամ և դատաստան կտրեմ թէ չի կընար ըլլալ [1]։

1 Ռօպէնսօն Եւրոպայի վրայ երթալով կարծէր թէ հոկտեմբերին վերջը ձմեռ կըլկըսի. չէր գիտէր թէ այն կղզին անանկ աստիճանի տակ էր՝ որ գրեթէ երկու ամիս ձմեռ կընէ թեթև այսինքն հոկտեմբերին ու Նոյեմբերին. անկէ ետև գարուն կուգայ. ինչպէս շատ տեղ ալ կայ, որ երբ հոս ձմեռ է հոն ամառ է. երբ հոս ամառ է հոն ձըմեռ է. հոս գիշեր է հոն ցորեկ է. հոս ցո-

## ԺԱ. Դիպուած.

Գրեթէ Ռօպէնսօնին ամէն բանը լման էր, գետնախնձոր ունէր որ հացի տեղ կը բռնէր. շինած թօռովը ձուկ կը բռնէր. աղ՝ լէմոն ունէր. լամայի միս և կրիայի միս ունէր. նաև ոստրէ ալ կը ժողվէր. լամաներէն կաթ մածուն կը պատրաստէր. Ետքը կարագ պանիր ալ շինեց կաթէն: Ահա այս բաները վայլե-

րեկ է հոն գիշեր է. վասն զի աշխարհքիս տակէն ըլլալով ամէն բան հակառակ կ'ըլլայ. Թէպէտ մեր գլուխն ալ երկինքը կը նայի, անոնց գլուխն ալ, բայց մեզի նայելով անոնք գլխիվար կը քալեն, անոնց նայելով մենք գլխիվար կը քալենք: Այս աշխարհագրական ծանօթութենէն աղէկ տեղեակ չըլլալով Ռօպէնսօն կը զարմանար չի տեսած բաներուն վրան. և ինք զինքը կը խրատէր, թէ այն բանին որ չէ եղած իրեն, մէկէն դատաստան չի կտրէ, թէ չի կրնար ըլլալ. հապա ամէն բանին ետքը գիտնալով տեղեակ ըլլայ:

լով չնորհակալ կըլլար ըյ․ սակայն կէս կեանքը կուտար թէ որ նաւ մը գտնըվէր ու զինքը տանէր իր քաղցր հայրենիքը։ Վստահ զի ամենևին բան մը չէր երևնար աչքին, երբոր կըմտածէր թէ զըկըված է մարդկային ընկերութէ և բարեկամներէն․ որով միայն երջանիկ կրնայ ըլլալ մարդ իրարու հետ կենակցելով[1]։

Սիրական ծնողայմէ և ազգականներէն հեռու ըլլալով այնչափ տրտում էր, որ յուսահատեր էր թէ այլ չպիտի տես.

1 Այնչափ մեծ է հայրենասիրութին ու ազգասիրութին, որ մինչև որոշեցին թէ ամէն մարդ պարտական է իր կեանքը տալու իրեն ազգին և հայրենեացը համար․ հին ատենները ով որ իր ազգին և հայրենեացը երախտիք մը բան մը թէ որ ըրած չըլլար՝ մարդ չէին սեպեր և քաղաքացիի կարգ չէին դներ․ անոր համար իրենց ազգը միշտ կըմեծնար, և աղէկ բաներով կըծաղկէր․ երանի՜ թէ այս բանս մեր ազգին մէջ ըլլար, ու ասոր հակառակը չըլլար։

նէ զանոնք . անանկ պիտի կոր-
սրվի զուրկ ամենայն մարդկանց,
և հեռու ամէն աշխարհքէն։ Ո՜հ
քանի՜ ողբալի էր խեղճին վիճա-
կը . ի՞նչ ուրախութիւն կրնար
պատճառել այն առատութ̃ին
որ ունէր . ի՞նչ օգուտ կրնար ը-
նել իրեն այն վիճակին մէջ՝ թէ
և աշխարհքին մեծութ̃ին ունե-
նար . թէ որ միայն մէկ օրմը մի-
նակ մնայ մարդ առանց ընկե-
րութ̃ե՞ լաւ կրնայ հասկընալ
Ռօպէնսօնին խեղճութ̃իը։ Ո՞ւր
թողունք ուրիշ կարօտութ̃ինե-
րը . վասն զի լաթերը կամաց
կամաց մաշելով բոլոր կըտըրտե-
ցան ; որ չէր կրնար հագնիլ , և
հնար չի կար զանոնք նորոգելու։

Թէպէտ այն կղզին շատ ցուրտ
չըլլալով այնչափ հագուստի կա-
րօտ չէր . սակայն զանազան կեն-
դանիներ ճճիներ ճանճեր ըլ-
լալուն համար՝ առանց լաթի չէր
կրնար ըլլալ։ Մանաւանդ տեսակ
մը ճանճ կար հոն խիստ շատ ,

որ մեղուի նման խայթ ունէր . անանկ չարաչար կըխայթէր ողորմելին որ ցաւը սիրտը կըզարնէր : Երեսն ու ձեռքերը բոլոր վիրաւորած էին . լաթերն որ ասանկ մաշած էին ինչ պիտի ընէր այն Ճանճերուն ձեռքէն [1] :

Այս տարակուսանքն ալ աւելցաւ իր կարօտանացը վրայ , որով միշտ սիրտը կըհալէր ծնողացը տեսուէ համար , և մարդկային ընկերութե համար . ուստի բոլոր սրտովը կըհառաչէր որչափ որ ծովուն քով կըմօտենար . և Երբ որ լալագին աչքով կընայէր ահագին ովկիանոսին վրան , ուրիշ բան չէր տեսներ , բայց միայն Ջուր ու երկինք :

Նաև շատ անգամ սուտ յու-

1 Ռօպէնսօն օրագրութեն մէջ կըպատմէ թէ դեկտեմբերին մէջ տաքը կոխեց . և յունվարին սկիզբը տաքէն չէր կրնար դուրս ելլել . ուստի անձրևէն ետև այս տաքն որ կոխեց՝ այն Ճանճերը անանկ կատղեցան որ չարաչար կըխայթէին :

սով սիրտը դող կըհանէր. վասն զի ծովուն եզերտին վրայ հե- ռուէն երբոր մանր ամպեր կը- տեսնէր, երևակայութն կար- ծէր թէ նաւ է լեցուն հովով կուգայ. երկար ատեն սպասե- լով կընայէր որ յոյսը փուճ կըլ- լար. ո՜հ ինչ ողբ, և ինչ արտա- սունք կըթափէր աչքէն. ապա վերջին յուսահատութն կուգար կըփակվէր բնակարանին մէջ տրտում: Գիշեր ցորեկ աղօթք կընէր որ նաւ մը խրկէ ած զինքն ազատէ. բայց անդադար աս ալ կըսէր. Տէ՛ր չէ իմ կամքս, հա- պա միշտ քու կամքդ ըլլայ: Իբր զի՝ լաւ հասկըցեր էր թէ ած ա- մենաբարին մեզմէ աղէկ գիտէ մեր բարին, ու անանկ կըտնօրի- նէ. թէ որ իմ երկնաւոր հօրս կամքն է կըսէր՝ որ զիս հոս ա- սանկ թողու, արդար է իր դա- տաստանը. որուն չի հասնիր միտքս, ուրեմն ինձի կըվայլէ որ աղօթք ընեմ ապատութես հա-

մար, թէ որ ինձի օգուտ կար-
գեր է ամէնային իմաստութիւնը։
Այնկայն կըվախնար որ չըլլայ
թէ անկէ նաւ անցած ատենը
ինքը ծովուն քով չի գտնըվի․
կամ թէ անանկ ատեն նաւ գայ
կղզիին քով երկաթ նետէ, որ
ինքը հեռուն գացած ըլլայ․ ա-
սոր համար կըմտածէր որ նշան
մը գնէ այն ցամաք լեզուին վը-
րայ․ անանկ որ որչափ նաւ անց-
նի՝ հասկընայ թէ հոն մարդ
կայ։ Ուստի երկայն փայտ մը
տնկեց․ վրան ալ կախեց իր մա-
շած շապիկը, որ այլ չէր հագ-
նըվէր։ Անկէ ետքը կամեցաւ որ
անկած փայտին վրայ մակա-
գրութի ընելով իմացընէ գլխուն
եկածը․ ուրիշ հնարք չունէր,
միայն քարէ դանակով փորելով
գրեց․ բայց մտածեց թէ կրնայ
ըլլալ որ ուրիշ ազգերը չի հաս-
կընան ինկիլիզերէն և ֆռանս-
ըզերէն․ անոր համար լատինե-
րէն քանի մը խօսք միտքը կար,

սով սիրտը դո՛ղ կըհանէր. վասն զի ծովուն եզերքին վրայ հեռուէն երբոր մանր ամպեր կըտեսնէր, երևակայութիւն կարծէր թէ նաւ է լեցուն հովով կուգայ. երկար ատեն սպասելով կընայէր որ յոյսը փուճ կըլլար. ո՜հ ինչ ողբ, և ինչ արտասունք կըթափէր աչքէն. ապա վերջին յուսահատութիւն կուգար կըփակվէր բնակարանին մէջ տրտում: Գիշեր ցորեկ աղօթք կընէր որ նաւ մը խրկէ ա͞ծ զինքն ազատէ. բայց անդադար աս ալ կըսէր. Տէ՛ր չէ իմ կամքս, հապա միշտ քու կամքդ ըլլայ: Իբր զի՝ լաւ հասկըցեր էր թէ ա͞ծ ամենաբարին մեզմէ աղէկ գիտէ մեր բարին, ու անանկ կըտնօրինէ. թէ որ իմ երկնաւոր հօրս կամքն է կըսէր՝ որ զիս հոս ասանկ թողու, արդար է իր դատաստանը. որուն չի հասնիր միտքս, ուրեմն ինծի կըվայլէ որ աղօթք ընեմ ապատութեա հա-

մար, թէ որ ինձի օգուտ կար-
գեր է ա̃ծային իմաստութիւնը։
Սակայն կըվախնար որ չըլլայ
թէ անկէ նաւ անցած ատենը
ինքը ծովուն քով չի գտնըվի.
կամ թէ անանկ ատեն նաւ գայ
կղզիին քով երկաթ նետէ, որ
ինքը հեռուն գացած ըլլայ. ա-
սոր համար կըմտածէր որ նշան
մը գնէ այն ցամաք լեզուին վը-
րայ. անանկ որ որչափ նաւ անց-
նի՝ հասկընայ թէ հոն մարդ
կայ։ Ուստի երկայն փայտ մը
տնկեց. վրան ալ կախեց իր մա-
շած շապիկը, որ այլ չէր հագ-
նըվէր։ Անկէ ետքը կամեցաւ որ
տնկած փայտին վրայ մակա-
գրութի̃ ընելով իմացընէ գլխուն
եկածը. ուրիշ հնարք չունէր,
միայն քարէ դանակով փորելով
գրեց. բայց մտածեց թէ կրնայ
ըլլալ որ ուրիշ ազգերը չի հաս-
կընան ինկիլիզերէն և ֆռան-
սըզերէն. անոր համար լատինե-
րէն քանի մը խօսք միտքը կար,

գրեց փայտին վրայ․ որովհետեւ լատինին լեզուն ընդհանուր ըլլալով ամէն ազգ կըհասկընար։ Ռօպէնսօն կըյուսար որ ամէն նաւի մէջ կրնայ լատինի լեզու հասկըցող գտնըլ, գրած բանը միայն այս երեք խօսքս էր․ օգնեցէ՛ք խեղճ Ռօպէնսօնին։

Ամենէն մեծ նեղութիւն այն էր՝ որ ո՛չ գուլպա ունէր, եւ ո՛չ ոտքի աման․ վասն զի մաշեր կըտոր կտոր էին եղեր․ Ճանճերն ալ չարաչար խայթելով կըտանջէին խեղճը․ որ ցաւէն չկըտէր թէ ո՛ւր երթայ։ Անանկ ուռած էին խայթուածով երեսները ձեռքերն ու ոտքերը, մանաւանդ այն անձրեւներէն ետեւ մժեղները շատնալով՝ մինչեւ բնական տեսքը աւրած էր։ Շատ անգամ մէկ դի նստեր կըմտածէր որ ճար գտնէ բոլոր մարմինը գոցելու․ հնարքը չէր կրնար գըտնել․ վասն զի գործիքի պակասութիւն ունենալով եւ հարկաւոր

բանտերուն անգէտ ըլլալով՝ միշտ կարօտութեան մէջ էր։

Առաջուց կարծեր թէ լամաներուն մարթով կրնայ դիւրին կերպով հագուստ շինել հագնիլ. սակայն լամային կաշին հաստ և կարծր էր. նաև չիտէր թէ կաշի շինօղները ինչպէս կըկակղցնեն, ոչ թէ ունէր՝ ոչ գերձան. ուստի պաշարվեցաւ մնաց, թէ ինչպէս հագուստ շինէ իրեն։ Սակայն հարկը խիստ բռնադատեց զինքը. այնպիսի մեծ նեղութիւն ունէր որ ոչ ցորեկը կըհանգչէր և ոչ գիշերը քուն կըլլար ճանճերուն ձեռքէն, որ չարաչար կըխայթէին խեղճը[1]. ուստի հարկադրեցաւ

[1] Յիմար մարդիկ կըզարմանան թէ ասանկ վնասակար կենդանիները ինչո՞ւ համար ստեղծեր է։ Չիտէն թէ նախ ամէն բան վախճան ունի. որ տիեզերքիս մէջ խիստ հարկաւոր են դեղի համար, կամ ուրիշ վախճանաւ որ չիտենք։ Երկրորդ՝ մեծ իւր բարութիւնը անանկ ստեղծեց արարածներն որ իրար սնուցանեն. եթէ այս կարգը

որ խելք բանեցընելով Ճամբայ գտնէ, ու անանկ խեղճութիւն չի տանջըվի։

Վերջապէս Ռօպէնսօն չդիմացաւ լամային կաշին առաջանակովը ձեւեց՝ կտոր մը Հանեց Հողաթափի Համար. և ուրիշ կտոր մը Հանեց գուլպա չինելու Համար, թէպէտ չի կրցաւ կարել. միայն չուանով փաթթեց լաւ մը կապեց ոտքին վըրայ. որ բուրդը ներս ըլլալով սաստիկ տաքութիւն ոտքը կերէր. նաև քալելու ատենը չարաչար կընեղէր. սակայն այս նեղութիւը աւելի սիրով կըքաշէր քան Ճանճերուն վէրքը։

Ուրիշ կտորմ՚ալ կարեց կա-

չըլլար, ստեղծած կենդանիներուն կէսը չէին մնար. և խոտեղէններն ալ խիստ քիչ պիտի ըլլային՝ այն քիչ կենդանիներուն Համար։ Ահա այս պատճառաւ բոլոր երկիր լեցուն է կենդանիներով գետինը ջուրին ու օդը, որ կայտառալով աճին և ստեղծողին մեծութիւնը յայտնեն։

իշէն, որ քիչ մը փոս և կարծր ըլլալով երեսին ամման շինեց. երկու ծակ բացաւ աչքերուն համար. մէկ ծակմ՝ ալ բացաւ բերնին համար: Ետքը շատ աշխատանքով մէկալ լաթերն ալ ձևեց կատարեց: Իրաւ շատ աշխատանք կըքաշէր այս բաներն ընելու, սակայն համբերութե̃ շարունակելով ամէն բան գլուխ կըտանէր: Եւ այս կերպով Ռօպէնսօն ուզած բաները շինեց լմընցուց ուրախութեամբ. հանեց վրայի ձիւպպէն, որ մաշեր կէսն էր մնացեր. հագաւ կաշիէ լաթերը. բայց այն հին ձիւպպէն եւրոպային՝ պահեց որ մեծ օրերը, և ծնողաց տօնին օրերը հագնի. վասն զի ծնողաց անունին օրը հանդիսաւոր տօնի պէս կտօնէր[1]:

1 Ռօպէնսօն կըպատմէ թէ երբոր հետեւեալ տարուան սեպտեմբերի 30 եղաւ. որովհետև նոյն օրը ոտքս ցամաքը կոխեցի. ատոր համար նոյն օրը տարեգլուխ ըլլալով

Ռոպէնսօն այն լաթերը հագնելով խիստ սոսկալի կերևնար. որ ոտքէն մինչև գլուխը մորթ էր հագած, անանկ մազոտ որ ոզնի կընմանէր. գլուխն ալ դրեր էր մորթէ շինած երկայն գլխանոց մը. քարէ կացինը մէջքն էր զարկած. տոպրակն ու աղեղը կռնակը. աջ ձեռքը երկայն տէգը. ձախ ձեռքը հովանոցը. որ տերևներով շինած էր։

Մտմըտա՛ թէ ինչ այլակերպ կերևնար. եթէ մէկը տեսնէր զայն անանկ հագուստով անհընարին էր թէ մարդ կարծէր. ուստի երբոր ջրին մէջ նայելով տեսաւ Ռոպէնսօն իր այլատարազ պատկերքը՝ ծիծաղելէն կըմարէր։ Այս բաներն անցնելէն ետև նորէն սկսաւ ամաններ շինել. շինած փուռը ուզածին պէս

ինձի՝ ծոմ կեցայ բոլոր աղօթքով անցուցի օրս. խոստովանեցայ մեղքերս առաջի այ՟. և այսպէս ամէն տարի այն օրը ս՟ կըպահէի։

կատարեց, մէջը կրակ վառեց տաքցուց, ու փորձեր կընէր, որ վերնիճ կամ (սրա) տայ. շինած ամանները դրաւ փուռը, կամաց կամաց կրակը շատցուց. անանկ որ փուռնը ամէն դին կրակ դարձաւ: Այն սոսկալի կրակը մինչև իրիկուն քշեց. անկէ ետև կամաց մը կրակը քիչցուց: Ետքը պտուկ մը դուրս հանեց փռնէն՝ նայեցաւ որ ուզածին պէս չէ եղած տրտմեցաւ. մէկալոնք ալ հանեց տեսաւ որ լաւ չեն եփած.

Անոնց մէջէն աման մը ձեռքն առաւ դիտեց, որ քար դարձեր զարմանալով ուրախացաւ. և իրեն մեծ տարակուսանք եղաւ, ինքն իրեն կըսէր թէ ինչ պատճառ կրնայ ըլլալ որ մինակ այս մէկ ամանը այսպէս ըլլայ, ու մէկալոնք չըլլան. որովհետև ամէնն ալ մէկ հողէ շինեցի, և մէկ փուռն մէջ եփեցան: Խիստ շատ մտածեց այս բանիս վրայ.

բայց չի կրցաւ պատճառ մը գըտ-նել ։ Երբոր մտմտալով միտքն ընկաւ թէ այն ամանին մէջ քիչ մը աղ կար երբոր փուռը դրաւ. սիրտը հանդչեցաւ որ այս աղէն ասանկ ապակիացաւ (սըռ) եղաւ ամանին մէջ ։

Իրաւ Բոպէնսօն դիպուածով գտաւ այս բանս. բայց եւրոպա շատոնց է որ աղը կըգործածեն ապակի կամ վէռնիճ տալու հա-մար. շատ բան կայ որ մէջը աղ խառնելով ապակի կըդառնայ ։ Ուրեմն պէտք էր աղի ջրով ա-մանները լուալ, եւ քիչ մը աղ ձգել մէջը. ահա դիւրին ապա-կի կըդառնային ամանները ։ Ուստի հետեւեալ օրը փորձմ' ըրաւ այսպէս. երբոր սաստիկ կըվառէր փուռը քանի մը ա-ման աղի ջրով չփեց. ուրիշ ա-մաններուն մէջ ալ աղ դրաւ. այս երկու փորձով զանոնք փու-ռը դրաւ ։ Այս աշխատանքին մէջ խեղճ Բոպէնսօնին վրայ

Հիւանդութի՛ն մը եկաւ. գլուխս
ու սիրտը կըցաւէին. բոլոր մար-
մինը թուլցաւ. անանկ որ իմա-
ցաւ թէ գէշ տրամադրութե̃ն
մէջ է, շատ պիտի ծանրըննայ:
Ո՞վ. երկնի և երկրի ստեղծող՝
կըսէր, ի՛նչ պիտի ըլլայ իմ վերջս.
ի՛նչպէս պիտի ընեմ երբոր չի
կրնամ տեղէս շարժիլ. չունիմ
օգնական որ հոգայ զիս օգնէ
տկարութենս. չի կայ բարեկամ
որ մահուան քրտինքս սրբէ, ու
կաթ մը ջուր տայ բերանս. ո՛հ
ա̃ծ իմ ա̃ծ. ես ի՛նչ պիտի ըլ-
լամ: Այսանկ ոտքի վրայ կե-
ցած երբ կըխօսէր, նայիս մէկէն
ընկաւ գետինը. մարելիք եկաւ
վրան: Այս միջոցիս մէջ անանկ
ջերմեռանդութի̃ անանկ տա-
քութի̃ն եկաւ սրտին որ չի պատ-
մըվիր. հաստատ յուսով և որ-
դիական սիրով ա̃յ ապաւինե-
ցաւ. երկնաւոր հօրն ողորմու-
թեանը դրաւ յոյսն որ ամէն
տեղ ներկայ է և բարերար:

Բոլոր մարդկային օգնակա-
նութենէ զրկըւած ըլլալով՝ նաև
աշխարհքէն զրկըվիլը բաւական
չեղաւ խեղճին, իր բնական ու-
ժէն ալ զրկըւեցաւ. որ մինչև
անատենը ունէր, որպէս զի խեղ-
ճութ͞ե չի կորսըվի. ուստի ան-
կէ ետև մնաց իրեն օգնական և
մխիթարիչ ա͞ծ միայն. ուրիշ
տեղէ ճար մը չունէր բոլոր աշ-
խարհքիս մէջ։ Գետնին վրայ
ընկած զարհուրելի մտածմունք-
ներով կըտանջըվէր. ձեռքերն
իրար կապած՝ ոչ կրնար խօսիլ,
և ոչ մխիթարական բան մը մը-
տածել. հապա աչքերը միայն
երկինքը տնկած այսչափ կրնար
երբեմն կուրցել. ա՜ծ ա՜ծ ողորմած,
սրտանց հառաչելով[1]։

1 Ռօպէնսօն օրագրութենը մէջ երկար կը-պատմէ այս ողորմելի վիճակը. որ յունիսի ամսուն պատահեցաւ կըսէ, յունիսի 19 էն սկսաւ մինչև 27 օրը քշեց անտանելի նեղութ͞ե. նաև տաքութեն մէջ զարհուրելի բաներ կը-տեսնէի կըսէ, որ չի պատմըվիր. Թէպէտ

Սակայն սրտին տագնապը թող չի տուաւ որ ասանկ մնայ հոն․ այլ ստիպեց որ ելաւ բոլոր պէտք ըլլալու բաները ժողվեց բերաւ պառկած տեղին քով շարեց որչափ կարելի էր․ որպէս զի մէկէն կարօտութեն մէջ չիյնի երբոր հիւանդութիւնը բոլորովին ձգէ զինքը ։ Հազիւ թէ կրցաւ քօքօ ընկուզին ամանովը քիչ մը ջուր բերել․ ընկաւ տեղին մէջ հոգնութենէ առաւ․ ետքը ելաւ քանի մը գետնախնձոր բերաւ քովը, եւ 4 հատ լեմոն, որ պահեր էր․ անկէ ետեւ այլ ուժը հատաւ ընկաւ այն տրտմալի անկողինին վրան մնաց ։

Եթէ Աստուծոյ կամքն ըլլար յանկարծ հոգին առնել, մեծ ուրախութեամբ կուտար կեանքը․ բայց չէր համարձակեր այս բանը խըն-

սաստիկ տաքութիւնը շատ օր չի քշեց ։ Կերեւնայ թէ այս հիւանդութիւնը օդին տաքութենէն պատահեցաւ ։

դրել ստեղծողէն․ կըվախնար որ ա̃յ դէմ կըլլայ։ Միթէ ես ա̃յ ստեղծած ծառան չե՞մ կը-սէր․ միթէ այն չէ՞ իմ սիրական Հայրս, իմ ամենակարօղ և ի-մաստուն տէրս․ Հապա ինչպէս յանդգնիմ առաջարկել իրեն այն բանն որ ինծի պիտի ընէ իր բարի կամօքը։ Այո՛ այո՛ ինքը ամէնէն աղէկ գիտէ ինծի պէտք եղած բանը․ լաւ գիտնալով իմ չափս՝ աղէկ կընէ ամենակարօղ ա̃ծս, բարի ստեղծօղս։ Ո՛վ Հո-գիս մի խռովիր, Հանգիստ ե-ղիր․ դարձիր առ ա̃ծ այս ող-բալի վիճակիդ մէջ․ դարձիր առ ա̃ծ փրկիչն աշխարհի․ այն քեզ կըհասնի թէ՛ ողջութեանդ մէջ, և թէ մահուանդ։

Այս խօսքերէս ետև հոգի ա-ռաւ, ելաւ ծնկան վրայ բոլորով սրտով ա̃յ աղաղակ ըրաւ այսպէս։ Քեզի յանձներ եմ ով Հայր իմ երկնաւոր․ միայն քու Հայրա-կան գթութեամբ յանձներ եմ

զիս. ինչպէս որ կամքդ է, այն-
պէս ըրէ՛ ինձի. ինչ որ ինձի խըր-
կես՝ ջերմեռանդ սրտով կըքա-
շեմ. միայն թէ կարողութիւն տուր
որ քաշեմ։ Ո՛հ հայր սիրելի շը-
նորհէ՛ ինձի խնդիրքս. տո՛ւր համ-
բերութիւն այս խեղճութեանս մէջ.
հաստատութիւն յոյս մը տո՛ւր որ ո-
ղորմութեանդ ապաւինիմ։ Լո՛ւր
աղաչանացս. լսէ՛ մինակ այս խընդ-
իրքը քու ողորմելի ծառայիդ,
որ այսպէս կըտառապիմ. լո՛ւր
ինձ վասն սիրոյ ողորմութեան քո։
Այս միջոցիս մէջ մտնելով սաս-
կալի դող մը եկաւ վրան. որ թէ-
պէտ ծածկըվեցաւ լսմայրին մօր-
թովը, բայց ամենեւին չի տաք-
ցաւ. այս պաղութիւնը լման եր-
կու ժամ քշեց. անկէ ետեւ տա-
քութիւն սկսաւ. անանկ տաքութիւն
որ կարծէիր թէ կըբռընկի, որ
բոլոր երակներուն մէջ տարած-
վեցաւ. մինչեւ Ռօպէնսօնին սիր-
տը կելլէր կինջնէր ներսի սաս-
տիկ տաքութենէն. ինչպէս որ կըլ-

լայ շատ վազօղ մարդկանց։ Այս ողորմելի վիճակին մէջ այնչափ տկարացաւ, որ հազիւ թէ քօքօյին ամանը կրնար բերանը տանիլ, որ կաթ մը ջուր խմէ, ու լեզուին կրակը մարէ։

Հուսկ յետոյ սկսաւ քրտնիլ անանկ շատ որ ջուր կտրեցաւ, այս քրտինքը մէկ ժամէն աւելի քըշեց. բայց իրեն շատ օգուտ ըրաւ և ուժ մը բերաւ։ Ան միջոցին մէջ միտքն ընկաւ իր վառարանին կրակը. գիտէր որ պիտի մարի թէ որ փայտ չի դնէ. ուստի սիրտը չդիմացաւ ելաւ չորս ոտքով քանի մը կտոր փայտ մէջը ձգեց, որ մինչև միւս օրը երթայ. որովհետև իրիկուն էր եղեր։

Ամենէն առաւել տրտմալին այն գիշերին եղաւ Ռօպէնսօնին. վասն զի մինչև 'ի լոյս տաքն ու պաղը ետևէ ետև շարունակեց՝ մէյ մը կըդողար, մէյ մը կըբռընկէր. Նաև սոսկալի գլխու ցաւ

մը ունեցաւ որ աչքը չի կրցաւ գոցել ։ Ասով խիստ շատ տկարացաւ այն գիշերը . անանկ որ հազիւ կըշարժէր ։ Առաւօտուն քիչ մը վրայ եկաւ . գետինը քըսվելով զորով կրցաւ քանի մը փայտ կրակը ձգել՝ որ չի մարի[1] ։

Իսկ իրիկվան դէմ հիւանդութիւնը նորէն սաստկացաւ . ուզեց որ երթայ կրակը հոգայ՝ չի կրցաւ . ուստի հարկադրեցաւ որ ամէն բան թողու՝ մեռնելու պատրաստութիւն տեսնէ ։ Թէպէտ այն գիշեր առջի գիշերվան պէս շատ չի տագնապեցաւ, բայց հասկըցաւ թէ վառարանին կրա-

1 Բնական է մարդուս, որ իր քաղաքական կեանքը պահելու համար միշտ կըջանայ պէտք եղած բանը հոգալ որչափ մեծ թշուառութեան մէջ ըլլայ . նաև ետքի շունչը հատնի՝ կընայի որ պակաս բան չի մնայ . անոր համար ծերերը մինչև ետքը կըջանան ամէն բան պատրաստ ունենալ . շատը կայ որ ունեցած բանները կըվախնայ գործածել, թէ որ մի պէտք կըլլայ . իրեն համար կըպահէ ու չի վայելէր ։

կը մարեցաւ . տեսաւ որ քովի ջուրին ալ հատեցաւ. հոգով տրտմութեամբ խռովելով ողորմելին՝ հիւանդութիւնը կատղեցաւ . անանկ որ Ռօպէնսօն պառկած տեղն ալ չէր կրնար շարժիլ. ուստի միտքը դրաւ թէ այլ մահը մօտ է իրեն ; պիտի մեռնի ազատ : Այս ուրախութիւնը միայն շատ զինքը զօրացուց , որ պատրաստութիւն տեսնէ այս անդառնալի ճամբորդութեան , ու ջերմեռանդ աղօթքներով երթայ աշխարհքէս ազատ :

Արտանց լաւ զղջում ընելով նախ մեղքերուն թողութիւն խընդրեց . ետքը շնորհակալ եղաւ այ̃ տուած բարութեանցը համար , որ անանկ անարժանին շնորհեր էր: Բայց մասնաւորապէս շնորհակալ եղաւ տուած նեղութեանցը վըրայ. որով զինքը կուզէր հոգևորապէս շահիլ, լաւ գիտնալով թէ որչափ իրեն օգտակար էին այն նեղութիւնները :

Յետոյ աղօթք ըրաւ ծնողացը համար, որ բարութիւն գտնեն, ու մխիթարվին աստուծով. և ապա իւր անմահ հոգին յանձնեց ողորմած ձեռքը երկնաւոր հօրը: Անկէ ետև երկնցաւ կըսպասեր մահուան հանդերձ մխիթարանքով. իրեն անանկ կուգար որ մահը մօտեցեր է. վասն զի տագնապը խիստ եւելցաւ. կուրծքը խժալով կելլեր կինջնէր, և շնչառութիւնը քիչ քիչ դժուարցաւ: Ո՛հ կըսեր ահա հասաւ եղեր ըսպէն կեանքիս. որուն միշտ կսպասէի: Նայիս յանկարծ այլայլութիւն մը սիրտը մտաւ որ չէր տեսած կենացը մէջ. մէկէն շունչը բռնվեցաւ. գլուխը ծռեց անշնչացաւ մնաց անզգայ:

## ԺԲ. Դիպուած.

Ինչպէս ըսինք, Ռօպէնսօնին վրայ այն մեծ այլայլութիւն որ եկաւ՝ գլուխը կախեց անցաւ առանց շարժելու. մինչ զի աւելի մօտ էր մահուան՝ քան թէ կենաց: Սակայն շատ չանցաւ այս թմրութենէն մէկէնիմէկ արթընցաւ. Նորէն խելքը գլուխն եկաւ, ու ներսէն խորունկ հառաչանքով մը շունչ առաւ: Աչքը բացաւ չորս դին կընայէր որ հասկընայ թէ ո՞ւր է: Վրայ գալով սկսաւ տարակուսիլ թէ ի՞նչպէս ողջ պիտի մնայ այն աստիճան խեղճութեան մէջ. բայց մէկէն այս տարակուսանքը մտքէն հանեց ու սկսաւ քաշածները մտածելով տրտմիլ. որուն մեռնիլը ապրելէն անոյշ կուգար:

Թէպէտ խիստ մեծ տկարութեան մէջ էր, սակայն մասնաւոր սաստիկ ցաւ մը չունէր: Այն սար-

սափելի տաքուն մէջ աղէկ քըր-
տինք մը եկաւ վրան, որ շատ ա-
ռողջարար էր. անոր համար ս-
ղէկ ծածկըվեցաւ լամաներուն
մորթով. կէս ժամ անցնելէն
ետեւ քըրտինքը դադրեցաւ իրեն
ալ շատ հանգստացաւ: Բայց
ծարաւ կըպապակէր՝ ջուր կու-
զէր որ ծարաւն անցընէ. ջուր
չէր մնացեր քովը, նայեցաւ որ
քանի մը լէմոն կար, մէկ հատը
բերանն առաւ մեծ դժուարութ̅
կճեպը փրցուց՝ ջուրը ծծելով
ծարաւն անցուց, սիրտը պաղըշ-
կեցաւ, եւ երբոր անոյշ քուն մը
եկաւ վրան, մինչեւ 'ի լոյս աղէկ
քնացաւ. ու մարմինէն անդա-
դար արտաշնչութի̅ կելլար[1]։

1 Մարդուս մարմինէն ելած շոգիները՝
արտաշընչութի̅ կըսվին. որով մարմինը իր
ծակոտիքներէն իբր շունչ առնելով առողջ
կըպահվի. որովհետեւ մարդուս կաշին ան-
համար ծակեր ունի, մէկ գիշերվան մէջ
հօխայէն աւելի գոլորշիք կելլէ. երբոր այս
ծակոտիքը կըգոցվին՝ հարկաւ հիւանդութ̅
կըպատճառի. եւ հիւանդը վտանգի մէջ

Երբոր քունէն արթնցաւ Բոա-
պէնտօն, շատ սիրտը հանդարտ
ըլլալով մեծապէս ուրախացաւ
առջի օրուան քաշածները մոռա-
ծելով։ Վասն զի հիւանդութիւնը
կատարելապէս դադրած էր․
տկարութիւնն 'ի զատ քանի մը չու-
ներ։ Շատ չանցաւ ախորժակն
ալ բացուեցաւ․ առաւ եփած
խնձոր մը լեմոնին ջուրը վրան
սխմեց որ սիրտը պաղցընէ՝ քիչ
մը կերաւ։

Երկու օր լամաները անանկ
մնացեր էին անտէր, ոտքին տա-
կը պառկած խեղճ կընայէին ի-
րենն, և կերևնար թէ կուզէն
հասկընալ արդեօք պիտի ըռընա-
նա՞յ իրենց տէրը։ Այս կենդա-
նիները ուղտի նման ըլլալով եր-
կար ատեն առանց ջուր խմելու
կրդիմանան․ թէ որ առանկ չըլ-

կերնի։ Ասոր համար մրշակի որ ուսելի ար-
տաշնչութի կելլէր Բոապէնտօնին մարմինէն,
այնչափ շատ առողջութի պատու։ Ցես Ճեմ․
202։

լայնին՝ շատոնց մեռած էին ա-ռանց ջրի:

Իսկ Ռօպէնսօն աւելի տկար ըլլալով՝ ճար չունէր որ ելլէ զա-նոնք նայի ջուր խմցնէ. վասն զի ասոնք ընելու ատեն կուզէր: Սակայն առջի բռնած լաման որ դռանը մօտ կըկենար՝ տիրոջը քով մօտեցաւ. անալ տկար ու-ժովը ամանը կըդնէր քիչ մը կաթ կըկթէր լամայէն: Այս թազէ կաթը շատ օգտակար ըլ-լալով որչափ որ կըխմէր աւելի առողջութիւն կըգտնէր:

Նոյն օրը Հանգիստ քնացաւ լաւ մը. մինչև որ արևը մարը չի մտաւ չարթնցաւ: Երբոր ար-թընցաւ՝ ախորժակը խիստ բաց էր, ուտելու բան կուզէր. ուս-տի քանի մը եփած գետնի խնձոր առաւ լէմոնի ջրով կերաւ՝ բա-ւական եղաւ իրեն. նորէն քը-նացաւ:

Այս քունը որչափ որ շատ քշեց՝ Հանգիստ առաւ Ռօպէն-

սօն, և առողջութի գտնելով
անանձկ ուժ եկաւ վրան, որ միւս
օրը կրցաւ վեր ելլել. և սկսաւ
փորձընելով քանի մը քայլ առ-
նել գլորելով: Հազիւ կրցաւ եր-
թալ մինչև բակը. և հոն աչքը
վերցուց երկինքը տեսաւ որ ա-
րեգակին ճառագայթը ծառին
տերևներէն անցնելով երեսին
զարկաւ. ահա անոր անոյշ տա-
քութէ՛ն հոգի առաւ ողջանց ե-
կաւ վրան. կարծեց թէ նորէն
աշխարհք եկաւ. ուստի սկսաւ
պօռալ. ո՛վ աղբիւր յաւիտենա-
կան կենաց ա͞ծ իմ և կեանք.
փա՛ռք քեզ անվախճան. որ զիս
այս անգամ ալ արժանի ըրիր.
որ արեգական լոյս տեսնեմ, որ
սքանչելի լուսովը աշխարհք կը-
լուսաւորէ: Շնորհակալ եմ որ
զիս չի ձգեցիր, ուր բոլոր աշ-
խարհք զիս ձգեր է. փա՛ռք քեզ,
որ իմ կեանքս նորէն ինձի շնոր-
հեցիր: Իրաւի՛ պարտական եմ
որ բոլոր կեանքս քեզի նուիրեմ

իմ ուղղութենս համար . և կե-
նացս մէջ բոպէ մը չիթողում որ
անցնի առանց շնորհակալ ըլլա-
լու . որպէս զի ամենայն ժամ
պատրաստ ըլլամ թևաւորիլ
թռչիլ յաւիտենականութեան
մէջ, ուր ամէն մարդ պիտի առ-
նէ իր վարձքը, և ամէն գործոց
հատուցում պիտի ըլլայ թէ՛ բա-
րի և թէ՛ չար ։

Այսպէս Ռօպէնսօն ջերմե-
ռանգ մտածականներ ընելէն ե-
տև՝ սկսաւ բնական ստեղծված
բաներուն վրան ալ զարմանալ .
երբեմն աչքը կըվերցընէր երկնից
անչափ տարածութիւնը կըդիտէր .
երբեմն նոր կանանչցած ծառե-
րուն, և աղւոր աղւոր ծաղկած
թուփերուն վրայ կընայէր . և
երբեմն սիրական լամաներուն
վրայ նայելով կըխնամէր . որոնք
բոլորտիքը շարված իբր թէ կու-
րախանային իրեն առողջութեը
վրայ ։ Ռօպէնսօն ասոնք դիտե-
լով խիստ շատ սիրտը շարժեցաւ

քաղցրութիւն․ ինչպէս որ ճամբորդ մը երկար ատեն հեռանալէն ետև կուգայ իր ընտանեաց քով կը հանգչի, որչափ մեծ ուրախութիւն կունենայ․ նմանապէս ինքն ալ աղէկ ճանչնալով այս մեծ բարիքները և զմայլելով սկսաւ քաղցր զըւարթութիւն արտասուել։ Որչափ անգամ որ դուրս ելլալով օդ կառնէր, և կաթն ու ջուրը իրար խառնելով կը խմէր, այնչափ աւելի սիրտը կը բացուէր և առողջութիւն կը զգանէր։ Շատ չանցաւ առջի ուժը գտաւ․ մինչև սկսաւ իր առաջուան գործքերն ընել։ Նախ և առաջ գնաց նոր շինած ամանները նայել՝ թէ ինչ եղան փռանը մէջ, ուստի երբոր փուռը բացաւ, շատ մեծ ուրախութիւն եղաւ իրեն․ վասն զի տեսաւ որ բոլոր ամանները անանկ լաւ թրծելով քարացեր էին՝ որ վարպետ բրուտ մը անկէ աղէկ չէր կրնար ընել․ բոլորովին զը-

ւարձանալով այս յաջողութենը վրայ՝ մտուցաւ նայելու թէ վառարանին կրակը ինչ եղաւ։

Յետոյ ելաւ գնաց վառարանին քով. երբոր տեսաւ թէ կըրակը մարած է՝ մեծապէս տըրտմեցաւ. հառաչելով գլուխը ծըռած մէյ մը ամաններուն վրան կընայէր, մէյ մը փուռանը վրան։ Սակայն զինքը բռնելով չափաւորեց տրտմութիւնը, որչափ կարելի էր՝ շատ չէր կսկըծար. և այսպէս խօսելով կըմխիթարվէր. նոյն ա̃ծային նախախնամութիւն որ զիս հոգալով առաջ այն կրակը տուաւ ինծի, երբ որ ուզենայ իր ձեռքն է կընայ նորէն տալ. եթէ ինքը պատշաճ դատի, ես զուրկ չեմ մնար։

Նաև Ռօպէնսօն փորձած էր որ հոն ձմեռ չըլլալուն համար ցրտէն վախ չունէր. առանց կըրակի կրնար ըլլար։ Եւ թէպէտ մանկութենէն 'ի վեր սորված էր եփած կերակուր՝ և միս ուտելու.

բայց նայեցաւ որ կրնայ միս և եփած բան չուտել առանց մեծ դժուարութեան. միայն կաթ և պըղտուղ ուտելով կրնար ապրիլ։ Անկէ ետև միտքը դրաւ որ շինած ամաններուն մէջ կաթ լեցընէ, կարագ շինէ ու գետնի խընձորի հետ միատեղ ուտէ. որ համով ըլլայ։ Տեսաւ որ փայտէ աման շինել անկարելի էր. փորձեց թէ արդեօք հողէ շինած մեծ ամանին մէջ կրնա՞յ շինել. ուստի որչափ որ պէտք էր կաթը լեցուց մէջը. նաև շինեց տափակ փայտ մը, սկսաւ ասով զարնել կաթը. և այնչափ անդադար վեր վար շարժեց, որ մինչև եղը վրան ելաւ, թանը զատվեցաւ. ետքը ժողվեց եղը քիչմը աղով խառնեց։

Այսպէս ահա այս ուզած բանն ալ կատարվեցաւ. բայց երբոր այս գտած ճարտարութեան վրայ պիտի ուրախանար, միտքն ընկաւ թէ կրակ չըլլալով գետ-

նիխնձոր չէր կրնար եփել, որ եփով ուտէ. առանց կրակի անհրնարին էր որ ձարը գտնէ։ Ուստի կարագ եղը առանց հացի, և ուրիշ բանի ինչու պէտք էր։ Այս պատճառաւ սրտին նեղութ̃էն մէկ դի նետեց կարագն ու սկսաւ նորէն տրտմիլ խեղճութ̃ք։ Ահա դարձեալ կարօտութ̃ե մէջ զինքը կըտեսնէր ինչպէս որ առաջ էր։ Իրաւի ոստրէները՝ կաթը՝ քօքօ ընկուզը, և չորցուցած միսը կրնային ծառայել իրեն կերակուրի տեղ. սակայն կըմտածէր որ դիպուածով մը կրնան ասոնք ալ ձեռքէն երթալ։ Ռօպէնսօն այսպէս խռովելով գէշ եղաւ անանկ՝ որ չէր կրնար բան մտածելով հնարք մը գտնել, և իւր տըրտմալի վիճակը բարեկարգել։

Ուստի յուսահատելով կըսէր թէ հիմա ի՞նչ ընելու է. Թէպէտ առանց գործիքի միայն երկու ձեռքով այնչափ բաներ

ըրեր էր. սակայն սիրտը կոտրե-
լով իրեն կուգար որ ուրիշ բան
պէտք չէ ընել. Հապա դատար-
կութ̃ք և քնանալով մնացած
կեանքն անցընէ։ Քան զայս ա-
զորմելի վիճակ չէր կրնար ըլլալ
Ռոպէնսօնին, որ ամէն բանէ սիր-
տը կտրեցաւ. վասն զի արդէն
անանկ սորված էր աշխատելու,
որ չէր կրնար դատարկ կենալ
առանց օգտակար աշխատանաց։
Ասալ կըմտմտար յաճախ, թէ
մեծ յանցանք է պարապ ժամա-
նակն անցընել այն առանձնութ̃
մէջ զուրկ ամենայն օգնականու-
թենէ՝ որ ջանալով կարենայ բո-
լոր հարկաւորութ̃ը կատարել.
մանաւանդ կըսէր, որ շարունակ
աշխատանքն է մայր ամենայն ա-
ռաքինութեանց. և սովորական
ծուլութ̃ն է աղբիւր ամէն ախ-
տից։ Շատ աղէկ կըմտածէր զա-
սոնք. վասն զի դատարկութ̃ը
զինքն այս խեղճութ̃ց մէջ ձգեր
էր. արդարև խիստ հարկաւոր

է որ մանկութիւն առնէր կըրթըւ-
վին տղայք, և սորված ըլլան միշտ
աշխատելու. որ ամէն բանէն ա-
ւելի հարկաւոր է. վասն զի դա-
տարկութիւնը որոգայթ է ման-
կանց, որ գէշ կըլլան, և անըդ-
գամներուն ձեռքն իյնելով կը-
կորսուին։

Անբաղդ Ռոպէնսոն այսպէս
մտածելով սկսաւ մէկ դին մէ-
կալ դին երթալ կըղզին մէջ. որ-
պէս զի կարենայ բանմը գտնել
աշխատելու, որ ազատի դատար-
կութէ։

Ուստի ամէն բան ձգեց սկը-
սաւ գիշեր ցորեկ մտմըտալ թէ
ինչպէս կրնայ պզտի նաւ մը շի-
նել. վասն զի խիստ մեծ նեղու-
թիւն կըքաշէր մինակութէն. մա-
նաւանդ կրակը մարելէն ետև։
Անդադար հոգալով կըջանար,
որ այս ճամբայով կարենայ ա-
զատիլ խեղճութէ. և կըյուսար
որ Ամերիգայի ցամաք երկիրը
մօտ է հոն. թէ որ պզտի նաւ

մը շինելու ըլլայ, կարելի է որ աս-
դին անդին ծովին մէջ շրջելով
ցամաք գտնէ, մարդ տեսնէ։ Բո-
լոր այս մտածմունքներով պա-
շարված էր. ասանկ մտմըտու-
քով օրմը ելաւ գնաց յարմար
ծառ մը փնտըռելու, որ կարե-
նայ մէջը փորելով նաւակ (Չըռ-
նըխ) շինէ։

Կղզին մէջ ասդին անդին շրջելով չի տեսած տեղերն ալ գնաց, շատ նոր ծառեր տեսաւ. որոնց վրայ պտուղ ալ կար. կըփորձէր թէ կրնայ՞ ուտել։ Գըտաւ հոն բոյսեր, որ ցորենի գըլուխ կապած էին անանկ աղէկ, որ ամէն մէկին վրայ 200 հատ ցորեն կար, գեղեցիկ շարված իրարու քով բուստի (մէրճանի) նման։ Զարմանալով կուրախանար որ հաց շինէ. բայց ինչպէս պիտի ալիւր ընէր, ու եփէր առանց կրակի։ Սակայն քանիմը հասկ փրցուց բերաւ որ բնակարանին քով ցանէ. ինչ գիտնամ

կըսէր ինքնիրեն, կրնայ ըլլալ որ ետքը կարենամ ճար մը գտնելով օգուտ հանել։

Քիչ մը առաջ գնացած նոր ծառ մը տեսաւ, որուն վրայ կախւած էին խոշոր պճեղներով պըտուղներ. մէկ հատը բացաւ մէջը գտաւ 60 հատ նուշ մամնաւոր տեսակով. որ թէպէտ իրեն ախորժելի չեկաւ համը, սակայն քանի մը հատ տօպրակին մէջ դրաւ աւելի հասածներէն. որ էին քաքաոյի պտուղ, որով կըշինեն չիքօլաթ [1]։

Հուսկ յետոյ հասաւ մեծ ծառի մը քով, որ ամենեւին չէր ճանչնար. պտուղները քաքայօյէն խոշոր էին, բայց կճեպ չու-

1 Չիքօլաթ խմելիքը այս պտուղով կըշինեն, որ մանր նուշի նման կըլլայ։ Այս պտուղները Եւրոպա բերին շաքարով շինեցին չիքօլաթը. որ Եւրոպացիք խիստ կըսիրեն։ Ռօպէնսօն չի հասկըցաւ ինչ ըլլալը. վասն զի կրակ չունէր որ բոհրէր ու եփէր. կարելի էր թէ համէն հասկընար ինչ ըլլալը։

ներ. բոլորը միս էր խիստ համով: Այս ծառը շատ նման էր վերինին. որ միակերպ վարէն վեր բարձրացած էր, ու ծայրը միայն քանիմը տերևներ բուսած էին պսակի ձևով. որ հացի ծառ կրօղի եղեր, ինչպէս ետքէն հասկըցաւ. վասն զի այս պըտուղներէն հացի պէս կըշինեն կուտեն [1]:

Ռօպէնսօն նայեցաւ որ ծառին արմատէն վեր քիչմը փորած փոս էր՝ մէկէն միտքն ընկաւ թէ իր մտածած նաւին համար խիստ յարմար էր. եթէ կտրէր վար ձգէր ու մէջը բաւական փորէր: Սակայն այսպիսի ահագին ծառը կտրել, և այս օգտակար բանը շինել սօս-

1 Ամերիգացիք այս ծառին պտուղը ժողվէին ջրով կեփէին. ու պաղելէն ետև կտոր կտոր կուտէին, որ հացի տեղ կըբռնէր: Այս ծառը արմատէն վեր միակերպ երկան ըլլալով շատ յարմար էր նաւ շինելու. որ կերևնայ թէ հին ատենին ալ ասանկ մէջը փորելով կըշինէին նաւը:

կայլի աշխատանք կուզէր. մեծ տարակուսանաց մէջ ընկաւ։ Շատ երկար մտածելէն ետև առանց որոշելու դարձաւ իր տեղը. միայն նշան դնելով լաւ դիտեց տեղն որ չի կորսընցնէ։

Գնալու ատենը ճամբան գը-տաւ իր շատոնցվան փափաքած թութակ թռչունին բոյնը. վասն զի տեսաւ ծառի մը վրայ բոյնը՝ մէջը ձագերով. կամաց մը ելաւ ձեռքն երկնցուց բունին մէջ ու բռնեց. բայց մեծցած և թևերն եկած ըլլալով թռան. մէկը միայն ամէնէն տկար ըլլալով կըր-ցաւ բռնել. այնչափ ուրախա-ցաւ վրան որ իբր թէ գանձ մը գտաւ։ Վասն զի կյուսար թէ այս թութակին խօսիլ սորվեցը-նէ, ու գէթ անկէ մարդու ձայն առնէ, և խօսք մը լսէ։ Եւ այս-պէս հետը կենակցելով և խա-ղալով կուրախանար։

Իրաւի՛ այս բանը մեզի թէև տղայութի մը կուգայ, որ թու-

թակին խառնակ խօսքը իրեն այնչափ մեծ կերեւնար. սակայն թէ որ մենք Ռօպէնսօնին տեղը ըլլայինք, անատենը լաւ կըհասականայինք թէ ինչ մեծ խեղճութիւն է զուրկ ըլլալ մարդկային ընկերութենէն. և ինչ մեծ բան է մարդկային ընկերութիւն՝ որ կըվայելենք ու չիյտենք մեծութիւնը. նաև որչափ մեծ բերկրութիւն կըլլար մեզի Թութակին ընկերութիւնը:

Վերջապէս Ռօպէնսօն հասաւ՝ իր բնակարանը, շուտով մէկ վանդակ (խաֆէս) մը շինեց Թութակին ու մէջը դրաւ կախեց իր պառկած տեղին քով. և մեծապէս ուրախանալով պառկեցաւ. որպէս թէ նոր բարեկամ մը եկեր էր իրեն այն իրիկունը:

## ԺԳ. Դիպուած.

Բոլոր նոյն գիշեր Ռօպէնսօնին մտքին մէջ շինելու նաւը կըդառնար. անանկ որ չի կրցաւ աչքը գոցել։ Միշտ կըմտածէր թէ արդեօք ծառը կտրէ՞ թէ չի կտրէ. վասն զի տարակուսած էր որ չի կրնար նաւը շինել։ Մէյմը կըմտածէր ծառը կտրէ աշխատի, մէյմ՝ ալ կըմտածէր որ զանց առնէ պարապ տեղը չաշխատի ու չըլլալու բանին ձեռք չի զարնէ։ Եւ որովհետեւ ծառին վրայ պտուղներ կային՝ կափսոսար կտրելու. բայց նաւին օգուտը մտածելով աւելի կուզէր կտրել, որ անով միայն կըրնար երթալ մարդ գտնել, ու այս անապատ մինակութենէ ազատիլ։ Թէպէտ այնչափ մեծ ծառը կտրել ու մէջը փորելով նաւ

չինելը սոսկալի դժուար և հե-
ռու բան եր իբր անկարելի. որ
քարէ կացինէն 'ի զատ բան մը
չունէր. սակայն շարունակ աշ-
խատելով համբերութ̅ կըյուսար
որ գլուխ տանի գործքը ։

Ռօպէնսօն բոլոր գիշերը այս-
պէս մտածմունքով անցուց. ա-
մէն ընելու բաները աչքին ա-
ռաջը 'բերաւ մտածեց. որով-
հետև որոշեր էր որ մէկ բանը
մինչև որ առաջ լաւ չի մտածէ
ամենևին չըսկըսի ։ Հուսկ յետոյ
բանը բերաւ այս պատճառին
վրայ կապեց, թէ անխելքութ̅ի
է քիչ և ստոյգ շահը ձգել մեծ
և անստոյգ շահին համար ։ Ա-
նատենը միտքն ընկաւ շանը ա-
ռակը. որ լողալով երբ կանցնէր
գետէն կտոր մը միս բերանը՝
ջրին մէջ տեսնելով շուքը՝ ձգեց
բերնին միսը ։ Դարձեալ՝ միտքը
բերաւ երկրագործներուն գործ-
քը. որոնք կըցանեն այն ցորենն
որ ուտելու էին. բայց բերան-

նուն կըկտրէն որ ցանեն ու ա-
ւելի շահին և շատ ցորեն ունե-
նան ։ Իրաւի՝ կըսէր շանը գործ-
քըն էր յիմարական, որ շուքին
ետևէն վազեց՝ պարապ ելաւ.
սակայն երկրագործներուն ըրած
գործքն է խոհեմութի և յոյսն
է բանաւոր. և շատ անգամ ալ
աւելի կըշահին. Թէպէտ կրնայ
ըլլալ որ դիպուածով կորսըվի եր-
բեմն, և վնաս գայ ։

Ուրեմն պէտք է որ ես այս
երկրորդ դիպուածին հետևիմ
շարունակ համբերութք ջանամ
աշխատիմ. որ կարենամ յու-
սալ թէ վերջապէս կըշինեմ այս
ծառէն մէկ նաւ մը ։ Այս բա-
նըյաջողելէն ետև յոյս մեծ ու-
նիմ թէ անապատ կղզիէս ալ
կելլեմ կազատիմ. և ասով կա-
րելի է որ մարդ ալ գտնեմ ։

Այս փափաքելի դատմունքը
անանկ Ռօպէնսօնին սիրտը շար-
ժելով միտքը դարձուց, որ մէ-
կէնիմէկ պառկած տեղէն վեր

ցաթկեց՝ կացինն առաւ ծառին վրայ վազեց սկսաւ կտրել։ Այնպիսի սոսկալի աշխատանաց ձեռք զարկաւ, ու չարաչար կըտանջըրվէր դիմանալով, որ ուրիշն ըլլար՝ հազար անգամ յուսահատեր էր. մինչզի առջի անգամ զարնելուն՝ կացինը ձեռքէն կըններէր. վասն զի ո՛րչափ համբերող մարդ ըլլար՝ այս աշխատանքը ո՛չ միայն անխելքութե կըդատէր. այլև անկարելի [1]։

Բայց որովհետև Ռոպէնսոն իրեն անփոփոխ օրէնք մը հաստատեր էր, որ միտքը դրած բանը չուտով չի ձգէ՝ եթէ մեծ դժուարութի ալ առաջին ելլէ. ինչպէս որ այս գործքին մէջ յայտ-

1 Այս ծառը Ամերիգայի մէջ շատ տեղ կըգըտնըվի. որ մինչև 50 ոտնաչափ կըբարձրանայ՝ հաստ 5 ոտնաչափ. ասկէ Ամերիգացիք կըշինէին Քանօէ ըսած նաւակը, որով ատոին անդին կերթային։ Սակայն այս կղզին կաւոտ ըլլալով ծառերը կարծր էին. անոր համար Ռոպէնսոն շատ կըստանջըվէր այս ծառս կտրելու։

նի ըրաւ ։ Թէպէտ կրկին ան-
գամ աւելի դժուար ըլլար այս
աշխատանքը, ամենեւին չպիտի
թուլնար սիրտը ։ Ուստի առտը-
ւանց մինչեւ կէսօր շարունակ
կաշխատէր. և բիւր անգամ
կացինը կըզարնէր՝ հազիւ թէ
կտոր մը տեղ կըկտրէր ։ Այսկէ
կըմակաբերէր թէ որչափ մեծ
աշխատանք և շատ ժամանակ
կուզէր այն ահագին ծառը կը-
տրելու. և ետքը նաւ շինելու ։

Հասկըցաւ որ այս գործքը
շատ տարիներու կարօտ էր.
Հարկաւոր երևցաւ իրեն որ ժա-
մանակը կարգի դնէ, ու անանկ
բաժնէ ատենն որ չի յուսահա-
տի ։ Վասն զի փորձը սորվեցու-
ցեր էր իրեն, թէ աշխատաւոր
կեանքին խիստ հարկաւոր է
կարգը. որ միակերպ ատենի մէջ
ամէն բան ընելով գործքը ա-
ռաջ կերթայ շարունակ ։

Ահա՛ Ռօպէնսօն ասանկ բաժ-
ներ էր ժամանակը. առտըւանց

կանուխ տեղէն կելլէր շիտակ աղբիւրը կերթար երեսը ձեռքն ու ոտքը կլլուար · սրբըվելու բան մը չունենալուն համար քիչմը կըկենար որ ցամքի · Ետքը կուգար լաթերը կըհագնէր · կելլէր բնակարանին վրայի լեռան վրայ , ու աչքը ուրիշ տեղ չիտարած զմայլելով կընայէր միակերպ հորիզոնին աղւորութե̃ը վրայ [1] ։

Այս բնութե̃ սքանչելի տե-

1 Հորիզոնը հոռմի բառ ըլլալով մեր մէջ Եզերք կըսվի , որ է աշխարքիս եզերքը · անկէ կըսկըսի երկինքը · Նաև արեգակն ու աստղերը եզերքէն կելլեն կըմտնեն ։ Իսկ Ռօպէնսօնին կղզին ծովուն մէջ տեղն ըլլալով ամէն դին եզերքը կերևնար , որ ըսել է թէ կէս երկինքը ամէն դիէն կերևնար ։ Մանաւանդ առաւօտները արեգակն որ կըսկըսէր ելլել · Ճառագայթն ալ օդը լուսաւորելով անանկ գեղեցիկ կերևնար հորիզոնն , որ Ռօպէնսօն կըզմայլէր կըմնար ա̃ծային մեծվայելչութե̃ը վրայ , որ այնչափ սքանչելի մեծ տարածութիը ստեղծեր է · և այսպէս սիրտը շարժելով փառաբանութ̃ կընէր իր ջերմեռանդ[illegible]թե̃ը ։

սարանը անանկ սիրտը կըբորբո-
քէր որ երեսը հողին տալով եր-
կըրպագութ̅ի կընէր ստեղծողին
մեծաւ՝ խոնարհութ̅բ . և շնոր-
հակալութ̅ի ընելով փառք կու-
տար ա̅յ զասոնք ստեղծելուն հա-
մար . Նաև ծնողացն համար ալ
աղօթք կընէր , օգնութ̅ի կըխըն-
դրէր . որոնք թէպէտ ձգեր էր ,
բայց ամենևին չէր մոռացած ։ Ա-
ղօթքը կատարելէն ետև կու-
գար լամաները կըկթէր կընայ-
էր որոնք քիչ քիչ շատցած էին .
կթած կաթէն քիչմը կուտէր
նախաճաշիկ կընէր . մնացածը
կըպահէր ։ Ահա օրուան առջի
ժամը ասանկ կանցընէր ։ Անկէ
ետև կերթար ծովուն քով սո-
րէ կըժողվէր՝ թէ որ ջուրը
քաշված ըլլար , որպէս զի ցո-
րեկվան կերակուր ճարէ իրեն .
թէ չէ՝ բոլոր պէտք եղած բա-
ները կառնէր շիտակ կերթար
ծառին քով կաշխատէր , որ կը-
տրէ նաւ շինէ . լամաներուն ալ

թէ մարդկանց մէջ է ։ Վերջապէս միտքը վրան եկաւ տեսաւ որ տակաւին այն տրտմալի մինակութեան մէջ է՝ սկըսաւ հառաչելով լալ. և խեղճ ըսելով ըսել. Ողորմելի՜ Ռօպէնսօն ։ Նայեցաւ արեգակին դառնալը դիտեց որ կէսօրէն երկու ժամ անցեր էր, դարձաւ ծառին քով սկսաւ աշխատիլ ։ Միշտ երկու ժամ անդադար կաշխատէր. ետքը կերթար ծովուն քով իրիկվան դէմ կըլլուացվէր, և ոստրէ կըժողվէր ։ Մնացած ժամանակն ալ կանցընէր պարտէզը փորելով և բան տնկելով. երբեմն մաիզ ըսված ցորենը կըցանէր, և երբեմն գետնիխնձոր. յուսալով թէ օր մը կրակ կըճարէ ու զանոնք կեփէ ։ Երբեմն պատուաստ (աշ) կընէր հացի ծառէն. և երբեմն մանր ծառերուն ջուր կուտար. երբեմն ցանկ կամ (չիթ) կըշինէր պարտէզին, և երբեմն ճիւղերը կտրելով կըխնամէր

տնկած բաները. նաև բակին չորս
դին մանր ծառեր տնկեր կընայ-
էր որ Ճիւղերն երկընինայ ու ի-
րար բերէ կապէ, կամարի պէս
շինէ վրան ։

Այս բաներն ընելէն ետև ե-
թէ ժամանակ ունենար կըթու-
թի (թալիմ) կընէր. աղեղով
նշան կառնէր նետ կընետէր. որ
եթէ գազան մը տեսնէ չի վախ-
նալով զինքը պաշտպանէ ։ Ասանկ
կըրթութի ընելով, այնպէս լաւ
նշան կառնէր որ հեռուէն ալ
շիտակ կըզարնէր ։

Իրիկվան կերթար նորէն լա-
մաները կըկթէր, ու ետքը կե-
րակուր կըպատրաստէր. իրիկու-
նը կերակուր կուտէր լուսինին
կամ աստղերուն լուսովը ։ Վեր-
ջը իրիկվան աղօթքն ընելով մը-
տածական մը կընէր իրեն վրայ.
և երբեմն ընակարանին վրայ կե-
լէր՝ աստղերուն գեղեցկութեն
վրայ կըզմայլէր, ու ծայրին մե-
ծութիը կըմտածէր. երբեմն ալ

ծովուն քով կերթար ժուռ կու-
գար որ իրիկուան հովը առնելով
պաղըշկի :

Պառկելու չի գացած ինքն
իրեն կը հարցընէր, թէ այսօր
ի՞նչպէս անցուցի. ստեղծողին
այսչափ բարիքը վայելեցի՝ ար-
դեօք միտքդ բերի՞ր բարերար
պարգևօղը, արդեօք սիրտդ շար-
ժեցա՞ւ սիրել և շնորհակալ ըլ-
լալ ողորմածին : Աշխատանքիդ
և ներողութ̃եդ մէջ յոյսդ բոլորովին
տվի՞ր ա̃յ. զըւարճութ̃եդ մէջ մոռ-
ցա՞ր ա̃ծ : Նաև չար խորհուրդ-
ները մտքէդ հեռացուցի՞ր, որ
սատանան միտքդ կըբերէր : Ան-
կարգ ցանկութ̃եց հետևեցա՞ր,
որ կըշարժէին սիրտդ : Արդեօք
ի՞նչ բարի գործք ըրիր այսօր :
Ռօպէնսօն այս մտածականներն
ընելով երբոր խիղճմտանք մը
չէր ունենար՝ անանկ հոգին կը
քաղցրանար, որ կըսկըսէր ջեր-
մեռանդ երգեր ընել, և փառա-
ւորել զա̃ծ, որ զինքը առաքի-

նութե̃ Ճամբան է դրեր կատա-
րեալ ըլլալու ։ Եւ ընդհակառա-
կըն՝ երբոր կըտեսնէր որ բարութ̃ի
մը չէ ըրած , և նոյն օրն աղէկ
չէ անցուցեր ․ խիստ շատ կըվըշ-
տանար որ օրը կորսընցուցեր է ․
Ինչպէս պէտք է՝ բարի դիտաւո-
րութիւնները չէ կատարած , ու
աղէկ ա̃ծպաշտութ̃ի չէ ըրած ։
Ինչպէս առաջ պատմեցինք թէ
ծառերուն վրայ օրացուցի պէս
օր ամիս կընշանէր ․ թէ որ պա-
կասութ̃ի ընէր՝ խաչ մը կըգրէր
նոյն օրուան ծառին վրայ ․ որ էր
նշան ըրած պակասութե̃ը ․ որ-
պէս զի ամէն օր աչքին առաջն
ըլլալով միշտ՝ ալ չընէ ։ Ահա՛
այսպէս Ռօպէնսօն կըջանար զին-
քըն ուղղել և օրէ օր աղէկ ըլ-
լալ ․ որ ամէն մարդու բարի օ-
րինակ կրնայ ըլլալ ․ և ասոր
վարքին նայելով պարտական են
մարդիկ աղէկ մտածական ընե-
լով առաքինի ըլլալ և ա̃ծպաշտ․
անդադար աշխատելով զանձը

մահացուցանել․ օրէ որ հոգևոր և ջերմեռանդ ըլլալ՝ մինչև որ հոգին քաղցրանայ երջանկութ̃. ինչպէս որ քաղցրացեր էր մաքուր խիղճմտանքով Ռօպէնսօնին հոգին ։

## ԺԴ. Դիպուած.

Առջի դիպուածին մէջ տեղուվը պատմեցինք Ռօպէնսօնին վարքը, թէ ի՞նչ կարգով ժամանակը կանցընէր աշխատանքի մէջ։ Ահա իրեք տարի միակերպ այս կարգով գնաց առանց փոփոխելու ։ Ասանկ շարունակ աշխատելով, արդեօք շինած նաւը ո՞րչափ առաջ տարաւ այնչափ ատեննին մէջ․ ողորմելին չի կրցաւ ծառին կէսը կտրել․ իրեն կերևնար թէ գէթ չորս տարի ալ պէտք էր որ միայն ծառը կտրէ վար ձգէ՝ այսպէս շարունակ աշ-

խառնելով։ Սակայն սքանչելի եր-կայնմըտութիւն ամենևին չի յու-սահատեցաւ մէկ օր մը ետ չի-կեցաւ աշխատանքէն. ոչ երբեք կուզէր և ոչ կրնար պարապ կե-նալ։

Օր մը սկսաւ մտմըտալ, թէ այսչափ տարի է ես այս կղզին կընակիմ, մինչև հիմա խիստ քիչ տեղը տեսեր եմ, ինչ ամօթ բան է ըսելով ինքն իրեն երեսը կըզարնէր վատասիրտ վախկո-տութիւն, որ մէկ ծայրէն մէկալ ծայրը չէր կրնար երթալ ժուռ գալ. թէ որ վախկոտ չըլլայի՝ կըսէր, կարելի էր թէ շատ օգ-տակար բաներ ալ կրնայի գըտ-նել ժուռ գալովս[1]։

Այս մտածմունքս այնչափ զօ-

1 Այս կղզին բաւական մեծ ըլլալով քիչ տեղը տեսած էր Ռօպէնսօն. կըվախ-նար ներսերը երթալու, միայն մօտ տեղե-րը գացած էր։ Սակայն կղզիին երկայնու-թիւը 24 մղոն էր, իսկ շըջապատ բոլորը 70. մղոն։

րացաւ, որ մտքին մէջ որոշեց թէ ամենեւին չուշանայ. առաւօտանց կանուխ ճամբայ ելլէ։ Նոյն օրը Ռոպէնսօն ճամբային ամէն պատրաստութիւնը տեսաւ. հետեւեալ օրը ուտելու բաները լամնային վրայ բեռցուց, որ իրեք օրուան պաշար էր. զէնքերն ալ վրան առնելէն ետեւ ա̄ծային նախախնամութե̄ զինքն յանձնեց կորիճութ̄ ճամբայ ելաւ։ Անանկ էր միտքն որ միշտ ծովուն քովերէն երթայ. և որչափ կարելի է՝ անտառներուն մէջ չի մտնէ. որ չըլլայ թէ կատղած գազաններու պատահի։

Առջի օրը մէկ երեւելի պատահմունք մը չի տեսաւ։ Գրեթէ 18 մղոն առաջ գացեր էր, տեսաւ որ ամէն տեղ գեղեցիկ և բարեբեր էր իր տեղէն շատ աղէկ. ամէնէն անբերը իր տեղն էր, վասն զի շատ տեղ զանազան ծառեր գտաւ. Թէպէտ շատը չէր ճանչնար. բայց պտուղնե-

բով լեցուն էին, որ առողջարար և պատուական սնունդ իրեն կըրնային ըլլալ. ինչպէս որ ետքէն փորձեց հասկըցաւ: Այս ծառերուն մէջն էր թըղթաբեր ծառը, որուն կեղևը լաւ թուղթ կըշինեն, և օդահիդք ամառուան լաթ կըշինեն [1]:

Ռօպէնսօն առջի գիշերը ծառի մը վրայ անցուց, որպէս զի գազաններէն ապահով ըլլայ, և առաւօտանց կանուխ ճամբայ ելաւ: Քիչ մը առաջ երթալէն ետև՝ տեսաւ որ աւելի հարաւային կողմն է կղզին ու երկիրը բոլոր աւազ էր: Հոն ցամա-

1 Օդահիդք են բնակիչք Դահիդի կղզիին արևելեան կողմը ովկիանոսին. այս ժողովուրդքը թէպէտ վայրենի են, բայց գիտեն բարակ բաներ գործել զանազան ծառերէն. որ կըսվին թթենի չինաց. հացի ծառ են: Պատմիչը կըսէ՝ թէ սաստիկ գործած հագուստ մը տեսայ ինկիլթէռա: Այս ծառերը Չին և Ճեաբոն ալ կըգտվին. բընակիչները լաւ թուղթ կըշինեն: Տե՛ս աշխարհագր. հատ., դ. աս'':

քը լեզուի պէս դէպ 'ի ծածն եր-
կընցած էր . Երբոր գնաց հան
մէկէն զարհուրելով երեսին գոյ-
նը փոխվեցաւ . դողալով սկսաւ
չորս դին նայել՝ վերջապէս վա-
խուն պաղեցաւ մնաց, կարծես
թէ յանկարծակիի եկաւ . վասն
զի աւազին վրայ տեսաւ մարդու
ոտքի նշաններ ։

Իրաւ պէտք էր ուրախանալ
որ մարդու նշան տեսաւ . սա-
կայն գիտէր թէ մարդու պէս
մարդու ոտքի նշան չէր, որ բնա-
կանաբար իրարու ընկեր և ցա-
ւակից կըլլայ քաղաքականութ̃ .
հապա գազանի նման վայրենի
մարդկանց նշան էր . լաւ հաս-
կըցաւ թէ գարաիպ կղզիներուն
մարդակեր մարդիկն էին, որոնց
անունը միայն կըսարսեցընէր
մարդը՝ որ այն ժամանակը իրա-
րու միս ուտելով կապրէին [1],

1 Գարաիպներն էին գազանաբարոյ ժո-
ղովուրդ այն կղզիներուն մէջ . որոնց աչքը
խոշոր սև ու դուրս ելած էր . մարմիններն

Ռօպէնսօն թէ որ սովորութի̃ ըրած ըլլար մեծ վտանգներու մէջ աւելի խոհեմութի̃ բանեցընելու, չէր այնչափ զարհուրիր դողալով. Նաև այսպէս արիւնը պաղած չէր մնար, սրտոտ կըլլար: Թէ որ մարդ ամէն օր զինքը կրթելով ջանք ընէ՝ հոգին ալ զօրաւոր կըլլայ մարմինն ալ: Իբր զի մարմինը զօրաւոր պահելու համար պէտք է որ վարքը կանոնաւոր պարկեշտ և աշխատաւոր ըլլայ. Նմանապէս պէտք է հոգին ալ անարատ պահել հաստատուն բարեպաշտութե̃: Այսով մարդ քանի կերթայ կըզօրանայ ճախորդ վիճակին մէջ, ու որչափ մեծ վտանգ ըլ֊

ուժով՝ իրենք կապուած յանգուցն էին, որ թշնամութե̃ միշտ մէկզմէկ բանէին կրտանէին անընդհատ տեղ մը կուտէին: Հիմա այս մարդակերներէն չի մնացին այն տեղերը, վասն զի սպանեօլները տիրելէն ետև կամաց կամաց բոլորը ջնջեցին. հիմա բոլոր եւրոպացիք են անոնց տեղը. Թէպէտ ներսերը կըրնան գտնել:

քը լեզուի պէս դէպ 'ի ծոծն եր-կընցած էր. Երբոր գնաց հոն մէկէն զարհուրելով երեսին գոյ-նը փոխվեցաւ. դողալով սկսաւ չորս դին նայել՝ վերջապէս վա-խուն պաղեցաւ մնաց, կարծես թէ յանկարծակիի եկաւ. վասն զի աւազին վրայ տեսաւ մարդու ոտքի նշաններ։

Իրաւ պէտք էր ուրախանալ որ մարդու նշան տեսաւ. սա-կայն գիտէր թէ մարդու պէս մարդու ոտքի նշան չէր, որ բնա-կանաբար իրարու ընկեր և ցա-ւակից կըլլայ քաղաքականութ̅. հապա գազանի նման վայրենի մարդկանց նշան էր. լաւ հաս-կըցաւ թէ գարաիպ կղզիներուն մարդակեր մարդիկն էին, որոնց անունը միայն կըսարսեցընէր մարդը՝ որ այն ժամանակը իրա-րու միս ուտելով կապրէին [1],

1 Գարաիպներն էին գազանաբարոյ ժո-ղովուրդ այն կղզիներուն մէջ. որոնց աչքը խոշոր սև ու դուրս ելած էր. մարմիններն

Ռոպէնսօն թէ որ սովորուն՟ ըրած ըլլար մեծ վտանգներու մէջ աւելի խոհեմութ՟ի բանեցընելու, չէր այնչափ զարհուրէր դողալով. Նաև այսպէս արիւնը պաղած չէր մնար, սրտոտ կըլլար։ Թէ որ մարդ ամէն օր զինքը կրթելով ջանք ընէ՝ հոգին ալ զօրաւոր կըլլայ մարմինն ալ։ Իբր զի մարմինը զօրաւոր պահելու համար պէտք է որ վարքը կանոնաւոր պարկեշտ և աշխատաւոր ըլլայ. Նմանապէս պէտք է հոգին ալ անարատ պահել հաստատուն բարեպաշտութ՟բ։ Ասով մարդ քանի կերթայ կըզօրանայ ձախորդ վիճակին մէջ, ու որչափ մեծ վտանգ ըլ-

ուժով՝ իրենք կատաղած յանդուգն էին, որ թշնամութ՟բ միշտ մէկզմէկ բանէին կըտանէին անբնակ տեղ մը կուտէին։ Հիմա այս մարդիկներէն չի մնացին այն տեղերը, վասն զի սպանեօլները տիրելէն ետև կամաց կամաց բոլորը ջնջեցին. հիմա բոլոր եւրոպացիք են անոնց տեղը. Թէպէտ Նէկրերը կըրնան գտնել։

լայ աչքին առաջը՝ կարհամար-հէ, վասն զի ներքին ուժը և խիղճմտանքին մաքրութիւնը բոլոր խռովութիւնը կըփարատէ. ամե-նակալ երկնաւորին օգնութիւնն ալ կըհասնի, անանկ որ՝ շուտով մեծամեծ չարիքը բարին կը-դառնան :

Ինչպէս որ կերևնայ, Ռոպէնսոն այն աստիճանը հաստատ յոյս և զօրութիւն դեռ չէր ստացեր կա-տարեալ աստուածպաշտութիւն առանց բանէ մը վախնալու. որպէս զի հանգիստ երջանիկ կեանք ու-նենար :

Թէպէտ բնական է որ չի կար-ծըված նոր բանը մարդուս վախ և սոսկում կըբերէ, բայց պէտք է միշտ արիանալ և Աստուծոյ ապաւի-նելով ձեռքէն եկածն ընել : Կը զարմանամ թէ ինչ սոսկալի զար-հուրանաց մէջ ընկաւ յանկար-ծակի վախկոտ Ռոպէնսոնը մէկ քանի ոտքի նշան տեսնելով, ա-նանկ որ չորս դին կընայէր դո-

ղալով· ամէն մէկ տերեւին շարժ-
մունքէն կըսարսափէր· վախէն
չգիտէր թէ ի՞նչ ընէ, եւ ո՞ւր
երթայ։ Վերջապէս սիրտ ըրաւ,
սկըսաւ փախչիլ, բայց կարծէր
թէ մէկը ետեւէն ընկեր է· չէր
համարձակէր որ գլուխը դար-
ձընէ ու մէկ անգամ մը ետին
նայի։ Նայիս մէկէն կապվեցաւ
մնաց· իր վախը աւելի սաստկա-
նալով զինքը խռովեց։ Վասն զի
առաջին ելաւ մէկ փոս մը· մէջը
նայեցաւ· որ կրակ վառած էր
ու նոր մարած էր կրակը· փո-
սին քովերը տեսաւ որ մարդու
ոսկորներ ձգած էին· ձեռքեր,
ոտքեր, եւ գլուխներ· որ ընուէ՛
դէմ կերակուրի մնացորդ էին·
անոր համար մեծ սոսկումբե-
րին Ռօպէնսօնին։

Այս բանը գարախպ կղզիին
մարդակերներն էին ըրած· ո-
րոնց մարդ ըսելու չէ, հապա
գազան մարդակերպ· որ թէպէտ
մարդ են, բայց բոլորովին կա-

տաղի գազան են , ոչ մարդկուն գիտեն , ոչ գութ ունին . ամենւին իրարու խնայել չգիտեն . բռնածներուն պես իրենց Թշնամին մորԹեն կուտեն ։ Որովհետեւ Ռոպէնսօնին ատենը Անդիլեան կղզիներուն բնակիչներն՝ որ գարաիպ կըսվէին , բոլորը մարդակեր էին , ինչպես վերն ըսինք . որոնք երբոր Թշնամիներէն մէկը գերի կըբռնէին. մէկ զարհուրելի տօն մը կըկատարէին , պար բռնէին կըխաղային հաչելու ձայներ հանելով նստէին կուտէին ։

Ահա ամենաասոսկալի բան . ամէն մարդ պէտք է մտածել , Թէ ես ալ անոնց մէջն ստեղծուած ըլլայի՝ անոնց նման պիտի վայրենի մարդակեր ըլլայի . ոչ հաւատ պիտի ունենայի , ոչ օրէնք , անամօԹ , մերկ վայրենի ըլլայի պիտի ։ Որոնք կերԹային անտառները երեմնին և մարմիննին զանազան գոյներով կըներ-

կէին և աւելի կարմիր գունով . ականջներուն , և քիթերուն ծայրը կը ծակէին ու մէջը փետուրներ , և ծովու ժժմունք կը խօթէին զարդի համար ։ Թէ որ անոնց մէջ ըլլայինք՝ մենք ալ այս բաները պիտի ընէինք . պէտք է ամընչնալով շնորհակալ ըլլանք Այ հազար բերան , որ ասանկ տեղ , այսպիսի մարդկուէ մէջ ստեղծեր է , և բարի ծնողաց զաւակ ըրեր է . որ մանկութէ քաղաքավար են և բարեպաշտ . վայ անոնց որ մարդ են ու անտառներուն մէջ գազանոյին կեանք կանցընեն [1] ։

Ուստի Ռոպէնսօն աչքը ան-

1 Հիմա ամերիկայի մէջ շատ չի մնացին այս վայրենի մարդիկներէն . բայց ներս տեղեր անտառներու մէջ կը գտնըվին , մանաւանդ նոր զէլանտա կղզին ։ Նաև ափրիկէի ներսերն ալ շատ կան ասոնց նման մարդակեր սև մարդիկ . որ մսագործներուն խանութները մարդու միս կը ծախեն . վասն զի գերի կառնեն , քիչ քիչ մորթեն կը ծախեն կտոր կտոր ։

դլին դարձուց այս զարհուրելի տեսարանէն, սրտադող մը վրան գալով սարսափեցաւ. Թէ ընդունութիւը իրեն օգնութիւն չընէր, հոն պիտի լինէր մեռար. վախուն մէկէն սիրտը ետ եկաւ հոն, ու քիչ մը ուժ առաւ սկսաւ փախչիլ արագութեամբ. անանկ որ հազիւ թէ իր լամման կրնար ետևէն հասնիլ. վասն զի այս հաւատարիմ կենդանին կըջանար որ ետ չի մնայ, անդադար ետևէն կըվազէր: Այս վախը անանկ խռովեց Ռոպէնսօնին սիրտն, որ մոռցաւ լամման. ու կենդանիին ոտքին ձայնն որ կառնէր, կարծէր Թէ մարդակեր մարդիկ ետևէն կըվազեն: Քանի գնաց վախը զօրացաւ այնչափ որ՝ որպէս զի միտքը դրած վայրենի մարդիկ չըլլայ թէ իրեն հասնին, ուզեց թեթևնալ, որ աւելի արագ փախչի. ձգեց ձեռքի տէգը, աղեղն, ու կացինը, որոնք որ անատենը իրեն պէտք էին. ուրիշ

բան չէր մնացեր , միայն փախ-
չի ետեւէ եկողներէն ազատի , որ
էր իր լաման ։ Ամենեւին չէր նայ-
էր թէ ո՞ւր կերթայ . եւ ո՛չ կու-
զէր հասկընալ գացած ճամբան՝
միայն կըցանկար որ միշտ վազէ
ազատի . իր ուզածն այս էր . ու-
րիշ բան չգիտէր թէ ո՛ւր է եւ
ո՞ւր կերթայ ։ Ամեն ժամ մը վա-
զեց . ուրիշ բան չէր ըրած , բայց
եթէ բոլորակ ճամբորդութի̃ մը
ըրեր էր , անանկ որ չըգիտնա-
լով նայիս նորէն եկաւ հասաւ
հօն ուսկից որ սկսեր էր փախ-
չիլ ։

Դարձեալ զարհուրեցաւ ո-
ղորմելին , նորէն խռովեցաւ . որ
շփոթելուն չի ճանչցաւ տեղը ,
միտքը վրան չեկաւ որ գիտնայ
թէ առաջվան տեղն է , ուսկից
որ փախած էր . այլ կարծեց ու-
րիշ տեղ է մարդակերներուն ,
որ ոսկորներ թողուցեր էին հօն
ալ , ուստի նորէն սկսաւ նոյն ա-
րագութ̃ փախչիլ . նորէն առաջ-

վան Ճամբան սկսաւ վազել, մինչև որ ուժը հատաւ տկարացաւ. վերջապէս անզգայ ընկաւ գետինը. լաման ալ եկաւ հոն հասաւ ետևէն. քովը չոքեցաւ, որ հոգնութ̃ն առնէ: Դիպուածը բերաւ որ զէնքերը նետած տեղն ընկաւ Ռոպէնսոն: Երբոր աչքը բացաւ տեսաւ որ զէնքերը հոն են Ճամբուն վրայ ձգած. կարծեց թէ երազ կըտեսնէ, և երազին մէջ այս բաները գլխուն եկան. որովհետև ամենևին խելքը չէր հասնէր թէ այն բաները ինչպէս հոն եկան, և ինչպէս ինքը հոն գտնըվեցաւ. ահա վախը, այսչափ չարաչար խռովեր էր հոգին, և խելքը տարեր էր:

Ոտքի վրայ ելաւ, քիչ մը վախը խռովութ̃իը անցաւ՝ խելքը գլուխն եկաւ չի թողուց զէնքերը. շուտ մը վազեց առաւ, միտքը դրաւ՝ որ այլ չի ձգէ այն հարկաւոր գործիքը, որով միայն զինքը կրնայ պաշտպանելու: Ա.

նանկ տկարացեր էր որ չէր կըրնար առաջվան պէս վազել, թէպէտ և կըվախնար : Բոլորովին ախորժակը գոցվեցաւ, նոյն օրը քան մը չի կրցաւ ուտել, շարունակ կերթար. մէկ անգամ մը միայն ջրին քով կայնեցաւ ջուր մը խմեց : Կըյուսար որ նոյն օրը կընայ համնիլ իր բնակարանը, բայց անկարելի եղաւ. իրիկուն որ եղաւ հասաւ այն տեղն որ քանիմը մղոն հեռու էր իր բնակարանէն, որուն անունը դրեր էր գեղ. անանկ տեղմ' էր, որ ծառերը չորս դին պատած էին ընդարձակ և զըւարձալի. մինչև այս դաշտը լամանկերուն արածելու տեղ էր ըրեր. վասն զի ուրիշ տեղերէն շատ աղէկ էր հոն խոտը [1] :

1 Ռոպէնսօն օրագրութեան մէջ կըպատմէ այս տեղս ինչպէս գտնելը : Յուլիսին 15 ին կըսէ երբոր ելայ եղած տեղէս քանի մը մղոն առաջ գացի տեսայ՝ գեղեցիկ դաշտ մը բոլոր ծառերով, և ծաղիկներով զար-

Լուսընթաց տարին ամառվան շատ գիշերը հոս կըպառկէր․ վասն զի մժեղներուն ձեռքէն չէր դիմանար հոս կըփախչէր․ սառը համար այս տեղին անունը դեղ էր դրեր։ Այնանկ ուժը տկարացեր էր, որ անկարելի եղաւ այլ առաջ երթալու։ Ինչ և իցէ որոշեց որ հոն անցընէ այն գիշեր, հոգնութին առնէ․ սակայն խռոված ըլլալուն մէկէն պառկեցաւ որ քնանայ։

Հազիւ թէ քունը աչքն առեր էր, նորէն անանկ վախ մը եղաւ իրեն, որ հոգին բերանը եկաւ։ Վասն զի յանկարծ ձայն

գարած․ գայ հոն ծխախոտի բոյս, լէմոնի ծառեր, և շաքարի եղէգներ․ կերեւնար թէ հոն միշտ գարուն է։ Այնչափ գեղեցիկ էր այս գաւառը որ որոշեցի հոն փոխադրել իմ բնակարանս, բայց մտածեցի թէ առջի բնակարանս ծովին մօտ ըլլալով կարելի է որ նաւ մը գայ զիս գտնէ։ Ծառերով բնակարան մը շինեցի ինծի հոն․ որ երբեմն երբեմն իբր գեղ երթալու պէս կերթայի հոն կընայէի։

մը եկաւ վերէն, որ որոշ կըկանչէր. Ռօպէնսօն, խեղճ Ռօպէնսօն՝ ո՞ւր ես, և ի՞նչպէս եկար հոս։ Մէկէն վեր ելաւ Ռօպէնսօն բոլորովին դողալով. չիտեր թէ ի՞նչ պիտի ըլլայ։ Կեցաւ նայեցաւ, նորէն այն ձայնը եկաւ իրեն. աչքը չորս դին կըդարձընէր ամէն կողմը կընայէր թէ ուսկի՞ց է չէր հասկընար։ Վասն զի սովորութ՟ն է վախկոտներուն, երբոր արտաքոյ կարգի բան մը կըլլայ՝ իրենք զիրենք կըկորսընցնեն, չեն կրնար պատճառ գըտնել։ Ռօպէնսօն ուշադրութ՟ որ նայեցաւ, հասկըցաւ որ այն ձայնը երկինքէն չէ՝ հապա իրեն թութակին ձայնն է, որ հոն ծառի մը վըրայ նստած էր. որովհետև այս թռչունը ձանձրացեր էր մինակութ՟է. երբոր հոն հասաւ Ռօպէնսօն փնտռելով գըտաւ եկաւ նոյն ծառին վըրայ նստաւ. և շատ անգամ այս խօսքերս տիրոջմէն լսած ըլլալով

սկսաւ ինքն ալ խօսիլ ։

Երբոր Ռօպէնսօն պատճառը հասկըցաւ սկսաւ ուրախանալով փող կանչել, նայիս Թութակը Թռաւ տիրոջը քովը եկաւ, սկսան իրար սիրել. Թռչունը անդադար կըկանչէր, Ռօ́պէնսօն, խեղճ Ռօպէնսօն՝ ո՞ւր ես ։ Իսկ Ռօպէնսօն գրեթէ այն գիշեր չի քնացաւ սրտին խռովութէն. միշտ աչքին առջին էին այն ոսկորները՝ որ տեսաւ զարհուրելով. միշտ կըջանար որ երևակայութէն դուրս հանէ այս վախերը. բայց բոլորովին երևակայութիւնը խռոված ըլլալով անդադար աչքին առջը կուգային. իբր թէ Ռօպէնսօնին միտքը գոցված ըլլալով մութ խաւարով մը այն գիշեր զանազան բաներ կերևակայէր, ու խելքէ դուրս բաներ կըմտածէր, որ զինքը ապահով ընէ ։

Բայց միտքը դրաւ որ առաւօտուն բոլոր շինած բաները

աւրէ․ և այնչափ աշխատանքով ըրած բաներուն մէկը չի թողու։ Տնկած ծառերը կտրէ, շինած տեղերը և պարտէզը աւրէ․ լամաները թող տայ որ երթան, և իր բնակարանն ալ քակէ․ վասն զի կուզէր որ նշան մը չի մնայ ու չգիտցըվի թէ հոն մարդ կըբնակի․ որպէս զի թէ որ վայրենի մարդիկ յանկարծ այն կողմերն ալ գան, չիմանան որ մարդ կայ հոն։ Ես միայն ապահով ըլլամ կըսէր, առանց ամէնը իմ փրկութենս համար զոհ թող ըլլան[1]։

1 Մարդկային կիրքը անկարելի բաներ մտածել կուտայ․ մինչև մարդ չխորհելով օգտակար բաները կըձգէ՝ վնասակար բաներ կընէ․ անանկ բաներ կընէ որ քիչ մը աւաղ ուրիշին վրայ տեսնելով կըխնտար․ և շատ աշխատանքով ձեռք ձգած բաները՝ ցրուէ կըկորսընցնէ։ Եւ որ մեծն է, տարիներով աշխատելով ստացած աղէկ անունը մէկ րոպէին մէջ ստըկի մը կընէ չար կրիցը հեռանելով․ ուրիշին ամէն բանէն աւելի մարդս պէտք է իր կրիցմէ վախնայ․ վասն զի անկէ մեծ թշնամի չի կայ իրեն․ որ մտ-

## ԺԵ. Դիպուած

Րաւակ մը կայ Թէ գիշերը ժամե-րով կըՃերէ. ինչպէս որ Ռօպէն-սոնին գլխուն եկաւ, որ անցած գիշեր վախուն խելքէ դուրս բաներ մտածելով կըտանջըրվեր մինչև 'ի լոյս ։ Առաւօտուն լոյսն որ ծագեց՝ իրեն մտքին խաւար մտմըտուկքն ալ փարատեց վեր եղաւ. խելքը վրան եկաւ, ու վախը գնաց սրտէն, անպատեհը ամէն բան տարբեր տեսաւ. գի-շերվան այնչափ մտածած բա-ներն որ իրեն խելքին շատ հար-կաւոր երևցեր էին, տեսաւ որ խիստ յիմար և անպիտան խոր-հուրդներ էին ։ Վերջապէս բո-լոր այն մտածմունքները ձգեց,

քը խաւարելով Թող չի տար հասկընալ Թէ ինչ կընէ, ինչպէս եղաւ Ռօպէնսօնին ։

որ սաստիկ վախնալէն առաջ ե-
կած էին . սակայն մարդու պէս
պէտք եղած բաները մտածել
խոհեմութիւն ։

Ահա այս բանը մեծ խրատ ըլ-
լայ մարդուս, որ մտքէն անցած
բանը մէկէնիմէկ չընէ . հապա
որչափ կարելի է ուշացընելով
միւս օրուան ձգէ, ու լաւ մտա-
ծէ ետքը ։ Ռոպէնսոն հասկըցաւ
որ առջի աւուր քաշած վախը
անցաւ . եւ այսչափ ատեն է հոս
եմ կըսէր, մէկ վայրենի մարդ-
մը չի մօտեցաւ բնակարանիս
քով . ուրեմն յայտ է թէ անոնք
այս կղզիին մէջ չեն բնակիր .
հապա հաւանական է թէ ու-
րիշ կղզի կըբնակին . ու ոմանք
երբեմն այս տեղերը կուգան,
որ իրենց ըրած յաղթութեը վրայ
ուրախանալով գազանային տօ-
նախմբութի մը կատարեն ։ Եւ
ինչպէս կերեւնայ միայն հարա-
ւային կողմը կղզիիս կըմօտե-
նան, ու առանց առաջ երթա-

լու և ուրիշ բանի հետաքրքրութիւն ընելու կրդառնան իրենց տեղը ։ Ուստի ասալ ա̃ծային սքանչելի կարգադրութի̃ւն է կըսէր , որ այս կողմը եկայ ընկայ , ուր քիչ բարեբեր ըլլալուն համար , իմ կեանքս ապահով կըլլայ . վասն զի մարդակերները չեն մօտենար հոս [1] ։

Ռօպէնսօն այսպէս խօսելով իրեն սիրտ կուտար . եւ ի՛նչու պիտի յուսահատիմ , միթէ նոյն ամենակարող նախախնամութ̃իը չի՞ կրնար զիս պահել ամէն փորձանքներէն . որ մինչև հիմա ա՛լ աւելի մեծ վտանգներէն յայտնապէս ազատեց իւր անհուն ողորմութ̃ը ։ Ասանկ խօսելով ինք զինք կընախատէր սաստիկ ,

1 Վայրենի մարդիկ սովորութ̃ի ունէին , որ երբ թշնամիներէն մէկը գերի կընէին . նախ բաց տեղ մը կելլէին , բռնած գերին կըմորթէին խաղալով խնդալով կուտէին . ետքը կելլէին պար կըխաղային հաչելու ձայներ հանելով , և զարհուրելի շարժմունքներով ։

որ ա̄յ ողորմութենը վրայ յուսա-
հատեր էր այնչափ ։ Ուստի մե-
ծապէս զղջանալով ընկաւ ստեղ-
ծողին առջին՝ ներում խնդրեց
այս նոր սխալանացը ։

Անկէ ետև սիրտը զօրացաւ՝
ելաւ այն տեղէն քաջութ̄ իր
բնակարանը կերթար ․ բայց
Ճամբան նոր բան մը միտքն ըն-
կաւ՝ որոշեց որ ընէ ։ Իբր զի ու-
զեց որ ինքն իրեն բարեպաշտա-
կան կանոններ դնէ ․ որ աւելի
ապահովութ̄ի և համարձակութ̄ի
ունենայ ա̄յ առջին ։ Եւ այս բա-
նը խիստ հարկաւոր և բանաւոր
էր ․ որովհետև պարտք է որ ա-
մէն մարդ հաստատ յուսով ապա-
ւինի ա̄ծային նախախնամութենը ․
հաւատալով թէ երբոր իր վար-
քը ա̄յ օրինացը յարմար է , ոչ
երբեք ա̄ծ կըթողու անանկ մար-
դը կարօտութ̄ե մէջ ։ Բայց պէտք
է որ մարդն ալ անհոգութ̄ի չընէ ․
իր ձեռքէն եկածն ալ ընէ , ինչ
որ կըճանչնայ հարկաւոր մարդ-

կային բարութե̃ և երջանկութե̃ համար ։ Վասն զի ա̃ծ ամենաբարին անոր համար մարդուս տվեր է խելք և այնչափ հոգևոր և մարմնաւոր կատարելութի̃ ․ որպէս զի պէտք եղած ատենը գործածէ զանոնք՝ երջանիկ և առաքինի ըլլալու համար ։

Ոսոպէնոսն երբոր հասաւ իր բնակարանը , առջի գործքն եղաւ՝ որ միջոց տեղ մը շատ ծառեր տնկէ ․ որպէս զի պատնեշի պէս իրարու մօտ անտառ ձևանան բնակարանին առջին ․ այս մտքով՝ որ եթէ մէկը հեռուէն գալու ըլլայ անտառը դոցէ՝ զինքը չի տեսնէ եկօղը ։ Եւ այսպէս ահա երկու հազար ծառեր տըն̃կեց կարգաւ ․ բոլորը այն տեսակ ծառերէն տըմնկեց , որ գիտէր թէ քիչ ատենին մէջ կըմեծնան ․ որչափ կարելի էր՝ ջանաց շիտակ տնկել ․ բայց չուզեց որ համեմատ և արուեստաւոր երեւնան ․ որպէս զի բնական ան-

տուն ըլլան, մարդու շինած չե-րեւնան :

Ասոնք որոշեց որ գետնին տա-կէն ճամբայ մը բանայ իր բնա-կարանէն մինչեւ լեռան մէկալ կողմը. որ եթէ թշնամիները բնակարանէն վեր ելլէն, փախ-չելու ճամբայ ունենայ : Թէպէտ սոսկալի դժուար եւ երկար աշ-խատանք էր այս բանը, բայց անձին ապահովութեը համար ոկսաւ չարաչար աշխատիլ. եւ այս բաներուն հետ ըլլալով թո-ղուցնաւ շինելը : Բայց այս գետ-նի տակի ճամբան շինելու համար տեղ տեղ հորեր բացաւ, ինչպէս որ կընեն հանքերուն (մատէն-ներուն) մէջ բանողները. նախ հոր կըփորեն [1], ետքը հոր իջո-

1 Հանքի մէջ բանողները նախ վերէն վար հոր կըբանան ջուր կըգտնեն. անկէ ետքը կըսկըսին ճամբայ բանալ, ու շարունակե-լով կերթան ուրիշ հոր կըբանան. մինչեւ որ հանքին երակը գտնեն : Թէ որ ասանկ չը-նեն, ու հաստատ հող չի գտնեն, վերի հո-ղը կըփլչի : Ռոպէնսոն ալ ասանկ ըրաւ :

նաքար Ճամբայ փորելով առաջ կերթան ։

Մօպէնոօն այսպէս փորելով լեռան մէկալ դին անցաւ, որչափ որ կըփորէր միշտ կըջանար հողը դուրս հանելով իրարու վրայ դիզելով պզտի թերդ մը շինել ։ Այս թերդին միջոցը 8 ոտնաչափ էր, իսկ բարձրութիւնը 10 ոտնաչափ. տեղ տեղ սանդուղ կըշինէր ելլելու իջնելու համար. տեղ տեղ ալ ծակ կըձգէր որ կարենայ դուրս նայիլ. կարելի է թէ կըսէր օր մը պէտք կըլլայ հոն մտնել թշնամեաց ձեռքէն ։

Կարծէր թէ յանկարծ թըշնամի մը անկէ անցնի, կրնար ապահով հոն փակվիլ. բայց թէ որ թշնամին երկար ատեն կենար զինքը հոն պաշարէր, անկարելի էր դիմանալ ։ Իր ջանքը անոր համար էր՝ որ եթէ պատահական բան մը գլխուն գայ՝ հոն փախչի. և հոն ապրուստ պահելով անօթի չի մեռնի ։ Այս

պատճառաւ որոշեց որ միշտ պատրաստ ունենայ քանի մը օրւան ուտելու բան, պանիր, մածուն, պտուղ, ծովի ժժմունք, որոնք օրէ օր կընորոգեր. այս ինքն առջի օրուանը կուտէր, նորեն տեղը կըդնէր:

Այս միջոցը ուրիշ բանիմ՝ ալ ձեռք զարկաւ. բայց տեսաւ որ լմընցնալու բան չէ, թողուց: Իբր զի միտքը դրաւ որ ճամբայ մը բանայ ու այն վազած ջուրը բերէ իրեն բակին մէջ աղբիւր շինէ. որ եթէ նեղս փակվի, առանց ջրի չի մնայ: Բայց նայեցաւ որ ուզած բանը շատ ատենի կըկարօտի, ձգեց. ալ աւելի կուզէր երթալ իր նաւը շինել, քան թէ ասանկ բանի հետ ըլլալ:

Քանի մը տարի ասանկ ըզգուշուք երթալով երեւելի դիպւած մը չի պատահեցաւ: Մէկ առաւօտ մը օդը գեղեցիկ ըլլալով կաշխատէր իր նաւը շի-

նելու համար, տեսաւ որ՚ շատ մուխ կելլէ հեռու տեղէ մը. մէկէն վախ եկաւ իրեն. ետքը հետաքրքրութիւնը գալով ուզեց հասկընալ թէ ի՛նչ է։ Ուստի ելաւ քովի լեռանը վրայ դիտեց՝ որ իմանայ այն ծուխին պատճառը. բայց սոսկաց՝ երբոր տեսաւ ծովէն քով հինգ վեց պզտի նաւեր կապած. 30 հոգի լեռան մարդիկ, անանկ ահագին՝ որ գազանի ձայներ հանելով պար կըխաղային կրակին չորս դին [1]։

Ռօպէնսօն թէպէտ միշտ կըկասկածէր, թէ օր մը պիտի

1 Ռօպէնսօն կըսէ թէ 18 տարիս կըդիտէի որ վայրենիներուն ձեռքէն մարդ մը ազատեմ, առտու մը տեսայ որ 6 քանօք մօտեցան հեռուէն. մարդակերները դուրս ելան կրակ վառեցին, ու պատրաստութիւն տեսան տօնախմբութիւն ընելու. մէկ նաւէն երկու գերի հանեցին. նայիս իրեք հոգի մէկ գերին մորթեցին փայտէ դանակով, կտրտեցին մարմինը շարեցին. մէկ դիէն կուտէին ու կըխաղային, մէկալ գերին միջոց գտնելով կապը փրցուց ու սկսաւ փախչիլ դէպ 'ի իմ բնակարանս։

տեսնէ այս բանը. բայց այն աս-
տիճանը չի վախցաւ, որ զինքը կորսնցընէ. այլ ուժ առնելով զօրացաւ, մէկէն ի̃ր ողորմուե̃ր ապաւինելով վստահութե̃ լեռնէն վար իջաւ և շուտ մը զէնքերը վրան առաւ, երկնաւորէն օգնուե̃ի խնդրելով առաջադրեց որ մինչև ետքի շունչը պաշտպանէ զինքը: Այս մտքով զօրացաւ ա̃ծպաշտութե̃. և այնչափ քաջութի̃ առաւ, որ ելաւ նորէն լեռանը վրայ սկսաւ աղէկ մը դիտել թշնամիները:

Մէկէն բարկանալով սարսափեցաւ. վասն զի որոշ տեսաւ որ երկու ողորմելի գերի կապած էին կրակին մօտ, որ կերևնար թէ պիտի մորթէին: Նայիս երկու հոգի եկան տարին մէկը մորթեցին կուտէին, ու խաղալով երբոր իրենց գազանային տօնախմբուե̃ր կընէին՝ մէկալ գերին ողորմելաբար խեղճ կը նայէր ընկերոջը չարաչար մահուա-

նը վրայ, ու կըսպասէր որ զինքն ալ տանին ուտեն. բայց նայեցաւ որ բոլոր վայրենի մարդիկ թափեցան ընկերոջը վրան, ու ոսկորները կրծելու հետ էին, և մէկը այն գերիին վրայ չէր նայէր, միայն իրենց գազանային գործքին հետ կըխաղային: Խեղճ գերին յուսալով թէ կրնամ անոնց ձեռքէն փախչիլ ազատիլ, սկսաւ վազել սաստիկ արագութ դէպ 'ի Ռոպէնսոնին կողմը:

Ռոպէնսոն զայն որ տեսաւ, ուրախութիւն ու յոյսը, վախն ու սրտադողը իրար խառնըվեցան, երեսին գոյնը դարձաւ. մէյմը մոխիր կտրեցաւ, մէյմ' ալ կրակի պէս կարմրեցաւ: Սրտին մէջ կիմանար յոյս, և ուրախութի, բայց տեսնելով թէ գերիին ետևէն ընկեր կուգան՝ աւելի սարսափեցաւ. վասն զի ամէնքը շիտակ իր վրայ կուգային վազելով. ողորմելի գերին անանկ սաստիկ կըվազէր, եկաւ անանկ

տեղմ՝ որ ծովը ներս էր մըտեր դէպ'ի ցամաքը, հարկադրեցաւ գերին որ ջուրը նետվի, լողալով ասդին անցնի. Թշնամիներէն ալ երկու հոգի ջուրը նետվեցան ետեւէն կու գային. մէկալ ինոնք ետ դարձան գացին իրենց տօնը կատարելու ։ Ռոպէնսօն տեսաւ թէ այն երկուքը այնչափ լաւ չէին կրնար լողալ գերիին պէս, որ բռնել կուզէին. իսկ գերին եկաւ ցամաքն ելաւ սկսաւ վազել, բայց թշնամիները դեռ ծովին կէսն էին ։ Այն կէտին Ռոպէնսօն անանկ զօրացաւ և սիրտը շարժեցաւ որ ո՛չ երբէք եղեր էր իրեն ։

Աչքերէն կրակ կըցաթկեր, սիրտը կերեր որ երթայ օգնուէ համնի գերիին. առաւ ձեռքը իր տէգն, ու մէկէնիմէկ լեռնէն վար ցաթկեց, ու կայծակի պէս անտառէն դուրս ելաւ. երկուքին մէջը մընաց. սկսաւ պոռալ գերիին թէ կայնէ կայ.

Նէ՛ մի՛ փախչիր ։ Դարձաւ խեղճը տեսաւ մէկ զարհուրելի մարդ-մը բոլոր մորթով ծածկած , վախուն կարծեց թէ երկնային հոգի է , պաշարվեցաւ տարա-կուսելով , ոտքն իյնի՞ , թէ փախ-չի ։ Ռօպէնսօն թևերը բացաւ նշան տուաւ իրեն , թէ զինքը պի-տի պաշտպանէ թշնամիներէն . և ինքը դարձաւ վազեց անոնց վրայ . վայրենիները իրարմէ հե-ռաւ ըլլալով Ռօպէնսօնի տեղովը զարկաւ մէկը պառկեցուց ։

Մէկալ ընկերը 100 քայլ հե-ռուն ըլլալով կայնեցաւ հանեց իր աղեղը պատրաստեց ու նե-տեց Ռօպէնսօնին որտին զար-կաւ . բայց ծ̄ծ տուաւ որ լամային կաշին հագած ըլլալով վահանի պէս դէմ դըրաւ , ամենևին չան-ցաւ . ուստի Ռօպէնսօն անխոց մնաց ։ Նաև ժամանակ չէր տը-վաւ որ թշնամին նորէն աղեղը նետէ , վրան վազեց և չարաչար վիրաւորեց ։

Վրայէն Ռոպէնսոն Թշնամին ձգելէն ետև դարձաւ դէպ 'ի գերիին կողմը, որուն Թէպէտ ազատիչ եղաւ, բայց խեղճը ու-րախութ՟ե, ու վախին մէջ ըլլա-լով անշարժ մնացեր էր չէր կըր-նար առաջ գալ. չէյտեր թէ ար-դեօք կեանքը պիտի պաշխէ ի-րեն, թէ պիտի զարնէ սպաննէ զինքը այս անծանօթ էակը։ Սա-կայն Ռոպէնսոն կանչեց զինքը քովը, նշան տալով որ իրեն մօ-տենայ։

Սէկէն հնազանդեցաւ գե-րին՝ Թէպէտ կասկածելով կա-մաց կամաց կուգար, ու աղաչե-լու կերպերով մը կըմօտենար ի-րեն։ Ռոպէնսոն բարեկամութե նշաններ տալով խեղճին սէր կըցը-ցընէր, որ չի վախնայ իրեն քով գայ։ Եկաւ մօտեցաւ գերին. բայց ամէն մէկ տասը քայլ առ-նելուն գետինը կինէր, երկըր-պագութի կընէր շնորհակալու-թի ընելով, և յարգութի տա-

լով։ Վար առաւ մորթը Ռօպէնսօն, բացաւ երեսը ծիծաղերես մարդավարութ̃ և բարեկամական սէր երեւցընելով։ Անանկ որ տեսաւ գերին առանց յապաղելու վազեց եկաւ ազատողին քով գետինը ընկաւ երկրպագութին ըրաւ, ու բռնեց Ռօպէնսօնին ոտքը վզին վրայ դրաւ. Հասկըցընելու համար թէ կուզէ իրեն գերին ըլլալ։ Իսկ քաջն Ռօպէնսօն՝ որ աւելի կարօտ էր բարեկամի, քան թէ գերիի. մէկէն ձեռքը տուաւ անոր ու բարեկամութ̃ վեր վերցուց, և որչափ կարելի էր ուզեց իրեն հասկըցընել նշաններով, թէ ամէն կերպով զինքը բարեկամ պիտի ընէ իրեն և սիրելի բարեկամ։ Բայց նայինք այն վայրենի մարդն ինչ եղաւ, որ Ռօպէնսօն զարկեր գետինն էր ձգեր։

Այս մարդը չէր մեռած, նայիս որ ելաւ քիչմը խոտ հանեց դրաւ վէրքին վրայ, որ արիւնը

կարի. Ռօպէնսօն ցոյց տուաւ գե-րիին՝ թէ տէս ինչ կընէ թշնա-միդ. ան ալ օկսաւ աղաչելով բաներ զուրցել, որուն լեզուն չէր հասկընար. և անանկ նոր բան կերևնար իրեն, որ կարծեր թէ մարդու խօսք չէ. շատ տա-րի անցաւ, ականջը չի սորվեցաւ անոր ձայնին :

Գերին տեսաւ որ չի հասկը-ցաւ Ռօպէնսօն, աչքը դրաւ կա-ցինին վրայ. մատովը կըցցընէր, և նշաններով հասկըցուց որ կը-փափաքի կացինը առնէ ու եր-թայ թշնամին մեռցընէ : Քաջն Ռօպէնսօն որ ոչ երբեք մարդու արիւն մտած էր. բայց ակամայ կամօք տուաւ կացինը գերիին, ու ինքը աչքը անդին դարձուց, որ չի տեսնէ. իսկ գերին կայ-ծակի պէս հասաւ թշնամիին վրայ, մէյմը զարկածին պէս գլուխը կտրեց. և ուրախանա-լով դարձաւ եկաւ որ վրէժխընդ-դիր ըլլալով սիրտը հանգչեցաւ :

Անկէ ետև հազար անգամ կերպ կերպ շարժմունքներով, և խաղալով եկաւ Ռօպէնսօնին ոտքին տակը ձգեց իբրև յաղթանակ՝ կացինն ու կտրած գլուխը արիւնթաթախ: Ռօպէնսօն նշաններով հասկըցուց որ թշնամիին աղեղը առնէ, ու միատեղ երթայ: Գերին առաւ աղեղը. անանկ յաջողութ̃ նշան կառնէր որ գնաց մէկալ թշնամին ալ աւազին վրայ գտաւ, աղեղը լարեց նետածին պէս անալ զարկաւ սատկեցուց: Այս բանը Ռօպէնսօն գերիին առաջ հասկըցուցեր էր որ նայի զգուշանայ չըլլայ թէ անոնց նշանը հոն մնայ, որ մէկալոնք ալ չի գան տեսնեն, կասկած ունէր որ կուգան, բայց անանկ արագութ̃ գերին ըրաւ լըմնցուց որ քառորդ ժամուն մէջ երկու թշնամիին մարմինն ալ աւազին մէջ թաղեց որ նըշաննին չի մնաց: Անկէ ետև դարձան իրենց տեղը:

## ԺԶ. Դիպուած.

Ռօպէնսօն նորէն տարակուսանաց մէջ ընկաւ, չգիտէր թէ գլխուն ի՞նչ պիտի գայ թշնամիներէն. ուստի միշտ անհանգիստ ըլլալով կելլէր լեռանը վրան անդադար կըդիտէր վայրենի մարդիկն, որ կըխաղային ծովուն քով։ Շատ մեծ վախ ունէր թէ այն գազանային հարկիքը կա-

1 Թէպէտ աստուածային և բնական օրէնքը արգիլեր է մարդասպանութիւնը, բայց ամէն մարդ պարտական է իր կեանքը պահելու, որչափ որ [illegible] է։ Ուստի երբոր մէկը կուզէ քեզ մեռցընել. պէտք է որ կեանքդ պահելու համար զայն մեռցընես, որ դուն ազատիս, եթէ ուրիշ ճամբայ չէ կայ ազատելու։ Այսանկ ատեն արդարութեան դէմ չըլլար. սակայն եթէ ուրիշ կողմանէ կրնայ պաշտպանել կամ փախչելով և կամ ուրիշ արգելքով, անտանկ թշնամին մեռցընելը մարդասպանութիւն կըլլայ Աստուծոյ օրէնքին դէմ։

տարըլէն ետև կելլէն կուգան երկու ընկերները փնտըռելու համար. որ իրենք ուտելու հետ ըլլալով անոնք գերիին ետևէն գացին: Եթէ գային այն կողմերը նայելու՝ հարկաւ կըտեսնէին Ռօպէնսօնին բնակարանը. և միաբան ամէնքը վըրանին թափելով Ռօպէնսօնն ալ կըմեռցընէին իրեն գերին ալ. ահա այս բանը միշտ կըմտածէր:

Այս մտմըտուքներով անանկ սիրտը խռոված էր, որ լեռանը վրայէն, և ծառի մը ետևէն աչքը տնկեր միշտ վայրենի մարդիկներուն կընայեր թէ ի՞նչ կընեն. իսկ անոնք սարսափելի ունալու ձայներ հանելով պար կըխաղային. և զարհուրելի աղաղակներով կուրախանային այն գարշելի տօնախմբութեան համար: Ուստի Ռօպէնսօն միտքը դրաւ որ ուրիշ ճամբայ չի կայ ա̃յ ապաւինելէն 'ի զատ, միտքը վեր վերցուց, երկնաւոր հօրը

ապաւինեցաւ, որ կողորմի ան-
մեղներուն :

Այն կետին սիրտը զօրանա-
լով քաջութիւն մը եկաւ վրան.
միտքը դրաւ որ եթէ գան այն
կողմերը՝ չի փախչի դէմ դնէ:
Բայց անոնց աչքին չերևնալու
համար ծառերուն ետևէն սո-
ղալով վար ինջաւ, ու իր սան-
դուղէն վեր ելաւ, նշան տուաւ
գերիին որ իրեն ետևէն երթայ.
երկուքը միատեղ ինջան բնակա-
րանին մէջ. գերին երբոր տե-
սաւ բնակարանին մէջի եղած
կարգը, և պիտանի բաները,
զարմացաւ մնաց, որ անանկ բան
չէր տեսած. որպէս թէ մէկ գե-
ղացի մը բնաւ քաղաք չի տե-
սած ըլլայ, ու մէկէն զինքը մեծ
պալատի մը մէջ գտնէ ո՛րչափ
կըզարմանայ. ասոր նման պա-
ղեցաւ գերին: Ռօպէնսօն պէս-
պէս նշաններով հասկըցուց գե-
րիին իր տարակուսանքն որ վայ-
րենի մարդիկներէն կըկասկա-

ծեր, թէ վրանին կուգան։

Նաւ իմացուց թէ պատրաստ եմ, մինչեւ 'ի մահ զիս պաշտպանելու, և քանի որ ողջ եմ կըծեծկըվիմ. գերին հասկըցաւ այս խօսքերս ամէն պարագայով և ինքն ալ զանազան նշաններով հասկըցուց իրեն սէրը. կացինը վեր բռնեց, և բարկանալով առաւ տեղը բռնեց թշնամեաց կողմը. որպէս թէ թշնամիները պատերազմի կը հրաւիրէր։ Նաև կուզէր հասկըցընել ազատիչ Ռօպէնսօնին, թէ ամենայն կերպով պատրաստ է զինքը պաշտպանելու քաջութ̃ը։ Ռօպէնսօն ուրախանալով գովեց անոր քաջասրտութիւնը, տեղը ձեռքը տվաւ, և աղեղը վրան կախելով զինեց, ու դրաւ զինքը պահապան այն շինած շրջապատին մէջ. որ անկէ դուրս, թէ մարդ կերեւնայ դաշտին մէջ, որ տնկած ծառերուն մէկալ դին էր։

Գրեթէ մէկ ժամէն ետև

յանկարծ լսեցին հեռուէն զար-
հուրելի աղաղակ մը որ իրար
կանչելով կըժողվըվէին վայրենի
մարդիկ ։ Նայիս Ռօպէնսօն ու
գերին պատրաստվեցան պատե-
րազմ ընելու , և իրարու երես
նայելով և զանազան նշանով մէկ-
մէկու սիրտ տըվին , որ քաջութ՟
դէմ դնելով պաշտպանեն իրենց
անձը ։ Աղաղակը դադրեցաւ .
Նայիս նորէն աղաղակը լսվեցաւ
աւելի մօտէն և աւելի սաստիկ .
ետքը նորէն ձայներնին կտրե-
ցին ։ Դարձեալ սկսան անանկ
սարսափելի ձայներ հանել , որ
լեռներէն արձագանգի ձայներ
կուգար ։ Արդէն այս երկու
քաջ զօրաւորները պատրաստ է-
ին , և իրենց աղեղը քաշած էր ։
Գերին կատարեալ կատաղի
մարդ դարձաւ . աչքերէն արիւն
կըկաթէր . սրտին քաջութ՟ը ե-
րեսէն կերևնար . միակերպ ծա-
ռերուն մէջէն դիտէր կընայեր
աղաղակ եղած տեղը ։

Ռոպէնսոն ասանկ պատրաստ միշտ կըդիտէր թէ ինչ կընեն վայրենիները, որ մինչեւ իրիկուն միակերպ կըմնային անոնց՝ ինքն ու գերին. բայց Թշնամիներէն մարդ մը չի տեսան, եւ ձայն մը չի լսվեցաւ երկար ատեն. ուստի հաւանական կերեւնար թէ վայրենիները չուզեցին հեռուն երթալ փնտռելու իրենց ընկերները. ելան նաւը մտան տեղերնին գացին: Այս մտքով ասոնք ալ ձգեցին զէնքերնին եւ Ռոպէնսոն եկաւ ուտելու բան ճարել: Որովհետեւ այն օրն որ Ռոպէնսոնին այսչափ երեւելի դիպուածներ պատահեցան ուրբաթ էր, ուզեց որ ասոր յիշատակը չի մոռցըվի, եւ ուրիշ դիպուածներէն որոշվի. անոր համար ազատած գերիին անունը Ուրբաթ դրաւ:

Մինչեւ այս կէտս Ռոպէնսոն ժամանակ չէր ունեցեր ուշադրութիւն գերիին վրայ նայելու, տեսաւ որ էր շնորքով պատանի

մը իբր քսան տարեկան, մարմինը սեւագոյն, մազերը սեւ ու երկայն, քիթը կարճ, բայց այնչափ տափակ չէր, պռկունքը բարակ, ակռաները ճերմակ ոսկորի պէս, անկաճը քանի մը ծովու ժժմունք եւ փետուր անցուցեր էր զարդարանքի համար, ամենեւին լաթ չէր հագած.

Ռոպէնսօն թէպէտ խիստ անօթի էր, բայց պարկեշտութե համար ուզեց որ նախ անոր մերկութիւնը ծածկէ. ուստի լամայէն մորթէն հագուստ մը շինեց հագցուց գերիին. անկէ ետեւ կանչեց քովը որ կերակուր ուտեն. Ան ալ մօտեցաւ իրեն շատ զանազան ձեւերով շնորհակալութիւն կընէր, գլուխ ծռելով յարգութիւն կուտար, ընկաւ ոտքը երկրպագութիւն ըրաւ. բռնեց ազատողին ոտքը իր վզին վրայ դրաւ, ինչպէս որ առաջուց ալ ըրեր էր. Իսկ Ռոպէնսօն որովհետեւ այնչափ ատենէն 'ի վեր կըփափաքէր մէկ

մարդ մը տեսնելու․ որչափ որ գերիին վրան կրնայեր սիրտը ուրախութիւն կըլեցվեր, ու անդադար քարեկամական սեր կըցըցըներ Ուրբաթին։ Սակայն չգիտեր թե ինչ բնութեան տէր է․ իրեն կերեւնար թե խոհեմ մարդ է․ ուզեց անանկ վիճակի մը մէջ պահել զայն պատուաւոր հպատակութեամբ՝ որ ապահով ըլլայ, և պատրաստած մեծարանքն անկէ ընդունի, ինչպէս որ պարտական էր իրեն․ քիչ մը ատենէն ետև թագաւորի պէս մեծութիւն կըներ։ Գերիին հասկըցուց նշաններով թէ զինքը միշտ պիտի պաշտպանէ, բայց կատարեալ հնազանդութիւն կըպահանջէ իրմէն, և ինչ որ իրեն հրամէ, պէտք է որ կատարէ․ և ինչ բան որ իրեն արգիլէ իր տէրն ու թագաւորը առանձնական հաճութեանը համար, պէտք է որ զգուշանայ։

Այս պատուիրանները նշաններով տըված ատենը գերին ալ

այս խօսքս կըխօսէր Քաղցի. Ռօպէնսօնին միտքն ընկաւ որ լսած էր շատոնց, թէ Ամերիգային լեռան մարդիկը իրենց գլխաւորին այս անունը կուտան։ Ասոր նշանէն աւելի այս խօսքով իրարու բան կըհասկըցընէին, անկէ ետև գէրին երբոր կիմանար որ բան մը կուզէ իր տէրը՝ ինքնալ հնազանդութ̃ ցցընելու համար՝ քանի մը անգամ բարձր ձայնով կըկրկնէր այս Քաղցի բառը, նորէն Ռօպէնսօնին ոտքն իյնելով։

Նաև ուզեց հասկըցընել թէ Ռօպէնսօնին թագաւորական իշխանութ̃ը որչափ զօրութ̃ ունէր. տէգը ձեռքը տուաւ, ու ծայրը իր ոտքին վրայ դրաւ. և անով կիմացընէր թէ իր տէրը իշխանութ̃ ունի կեանքին վրան ալ՝ մահուան վրան ալ։ Իսկ Ռօպէնսօն ինքնագլուխ իշխանութ̃ ձեռքը անոր վրան կըդնէր պաշտպանելու համար։ Անկէ ետև

Նոյնն հրամանն տուաւ՝ որ քովը նստի կերակուր ուտէ. իսկ գերին զայն պատուելու համար՝ գետինը նստաւ, տէրը խոտէ շինած նստարանին վրայ նըստեցուց:

Ահա ասոնց բանն էր մէկ պատկերք մը աշխարհքիս թագաւորութեանց սկզբնաւորութեանը. վասն զի այն մարդիկներն որ ուրիշներէն աւելի գիտուն էին, աւելի սրտոտ և զօրաւոր էին, անոնք կըլլային առջի թագաւորը, և առջի կառավարիչը մէկ տէրութեան մը: Աւելի տկարներն ու աղքատները ապստամբ մարդկանց անիրաւութեան տակն ըլլալով, որոնք առջի ժամանակը աւելի շատ էին քան թէ հիմա, այս բռնաւորներուն զրկանքէն ազատելու համար, կըխնդրէին պաշտպանութիւն և օգնութիւն զօրեղներէն: Այս պաշտպանութեանը փոխարէն կըխոստանային կատարելապէս հպատակ ըլլալ ա-

նոնց, և տարուէ տարի տուրք տալու. իրենց պտուղէն և աշխարներէն. անանկ որ՝ պաշտպանութիւն ընող իշխանները անոնց տուրքովը իրենց ապրուստը հոգալով ժողովուրդը կը կարողանային Թըշնամիներէն ապահով ընելու։ Այս տարեկան տուրքը կոչվեցաւ բեռն ժողովրդեան որ կը պարտաւորէին իր հպատակները Թագաւորին տալու։ Ահա այսպէս է սկիզբը, և հեղինակութիւնը իւրաքանչիւր Թագաւորութեան և տէրութեան, և այսպէս է հնազանդութեան և պարտք հպատակաց։

Ուստի ահա Ռոպէնսոն Ճըշմարտապէս Թագաւոր եղաւ. վասն զի այն կղզին էր իրեն Թագաւորութիւնը, լամաներն ու պըտուղներն էին իր գանձը. Ուրբաթն էր իր հպատակը Թէպէտ մէկ հոգիմը էր, բայց շատ մեծ յարգ ունէր անոր առջին։ Թութակն էր իրեն մէկ հատիկ պալատականը, Թէպէտ անպիտան

անտառուն էր ։ Այս վերազանց թագաւորը շատ անգամ կը խոնարհէր իրեն գերիին այնչափ, որչափ որ արժանապատւութիւնը կրնար իրեն թոյլ տալ ։ Կերակուրէն ետև ուզեց Ռօպէնսօն շնորքով կարգադրել տալ ամէն բանն որ պառկելու համար պէտք էր ։

Այնչափ խոհեմ մտացի էր Ուրբաթ գերին, որ քիչ ժամանակին մէջ ամէն բան կընէր հաւատարմութեամբ բոլորովին իրեն հպատակելով, իբր գլխաւոր պաշտօնեայ, զօրապետ, խորհրդական, և սենեկապետ ։

Սակայն խոհեմութիւն չէր համարեց Ռօպէնսօն առջի բերանը իր բնակարանին մէջ առնել գերին, հրամայեց որ երթայ համբարանոցին մէջ պառկի, ուր բան կըդնէր ։ Վասն զի մեծ անխոհեմութիւն կըլլար, թէ որ չի փորձած լեռան մարդը այնչափ հաւատարիմ գնել, մինչև մէկ

տեղին մէջ պառկիլ, և քնանալով իր կեանքը անոր հաւատալ, նաև ընակարանին ծածուկ ճամբան յայտնել: Ուստի հրամեց Ուրբաթին՝ որ խոստէ տեղ մը շինէ իրեն համբարանոցին մէջ, ու հոն պառկի. որովհետև Ռոպէնսօն միշտ խոհեմութ՟ զգուշութ՟ ընելով բոլոր զէնքերը իրեն քով կըպահէր:

Մ՚չ երեքը անարժան կըհամարեր որ խոնարհական գործքեր ընելով բարի օրինակ տայ իր հպատակին. Թէպէտ մարդուս զարմանք կուգայ Թէ մէկ մարդով ինչ կըլլայ:

Այս պատճառաւ Ռոպէնսօնին վարքը աշխարհքի խրատ եղաւ: Որ ինքնիշխան ըլլալով բոլոր կղզին, և բացարձակ տէր կենաց և մահու գերիին ու լամաներուն, չէր խորշիր, միշտ կըխոնարհիր գերիին առջին ծառայական գործքեր ընելով լամաները կընայէր, ջուր կուտայր,

կաթ կըկթէր , և գերիին ընե-
լու գործքը ինքը կընէր , որ սիր-
տը հանգչելով հոգ չունենայ։ Իսկ
Ուրբաթ գերին կըտեսնէր որ
տէրը լամուներուն կաթը կըկը-
թէ , կըզարմանար թէ ինչ պի-
տի ընէ . որովհետև ամենևին
խելքը չէր հասներ թէ կենդա-
նիին կաթը տանկ պատուական
սնունդ է , վասն զի ոչ երբեք բե-
րանը դրած էր . երբոր Ռոպէն-
սոնին տիպելովը քիչ մը խմեց՝
զուարճանալով կըզարմանար ,
թէ ինչ աղէկ բան է ։ Այս աշ-
խատանքը լմնցնելէն ետև , որ
բոլոր օրը հոգնեցան , երկուան
ալ ուզեցին հանգչիլ։ Ռոպէն-
սօն հրամեց գերիին որ երթայ
տեղը չնորհակալութի ընելով
դէպ 'ի երկինքն ու պառկի որ
զինքը այնչափ վտանգներէն ա-
զատեր էր , և անանկ մարդու
ձեռք ձգեր էր , որ իրեն թէ՛ ըն-
կեր է և թէ՛ բարեկամ՝ ։

1 Թէպէտեւ այս գերին կռապաշտ էր .

## ԺԵ. Դիպուած.

Յայտնի է թէ որչափ մեծ բան է մարդկային ընկերութիւնը, և որչափ մեծ բարիք կընծային անկէ. պէտք է զարմանալով շընորհակալ ըլլալ ստեղծողին որ բնապէս մարդուս սրտին մէջ դրեր է ընկերական հոգի ունենալ և իրարու օգնել՝ չէ թէ գազանի պէս իրարու միս ուտել: Ռօպէնսօնին առջի գործքն եղաւ, որ միւս օրը առնէ ընկերը Էրթայ վայրենիներուն պար խաղած տեղերը տեսնէ. ուր առջի օրը այն սատանայական տօնը կատարեցին:

սակայն Ռօպէնսօն հասկըցուց իրեն որ ամէն բան ընօղը մեծ է. և ամէն մարդ պարտական է ստեղծողին երախտիքը ճանչնալ և շնորհակալութիւն ընել դէպ 'ի երկինքը նայելով: Ահա այսպէս Ռօպէնսօն հիմակուց սկսաւ գերիին ածպաշտութիւն սորվեցընել. որ կամաց կամաց խիստ հոգևոր մարդ եղաւ ու զարմանալի:

Ճամբան երթալու ատենը հանդիպեցան այն տեղին ուր որ երկու վայրենի մարդիկ թաղված էին, գերին խնդրեց Ռօպէնսօնէն որ իրեն հրաման տայ, անոնց մարմինը հանէ ուզածին չափ ուտէ որ աւելի սիրտը պագի ։ Ռօպէնսօն սաստելով հասկըցուց, թէ այդ բանը զարհուրելի ատելութ̃ի և անգթութ̃ի է որ կուզես ընել. վերցուց տէգը սպառնացաւ իրեն թէ կըզարնեմ թէ որ այդպիսի կերակուր ուտես ասկէ ետև ։ Գերին վախնալով զգուշացաւ տիրոջը կամքին դէմ ընել. սակայն կըզարմանար թէ ինչու համար թող չի տար ուտելու թշնամիներուն միսն, որ մանկութէն 'ի վեր սրտին մէջ ատելութ̃ի կար անոնց վըրայ ։ Հասան պար խաղացած տեղը, երբոր տեսան գետինը արիւնով ներկած, մարդու ոսկորներ ասդին անդին ձըգած. Ռօպէնսօն անանկ զար-

հուրեցաւ, որ աչքը մէկալ դին դարձընելով հրամեց գերիին որ շուտով փոս մը բանայ ու թաղէ բարբարոսական կերակուրին մը-նացորդը:

Գերին այս հրամանը կատա-րելու ատենը՝ Ռօպէնսօն մարած կրակը խառնելով, կընայէր թէ կընա՞յ կրակ գտնել. տեսաւ որ բոլորը մարած է, շատ վշտա-ցաւ. վասն զի փափաքելով ըն-կերը գտնելէն ետեւ ուրիշ բանի չէր ցանկար կրակէն 'ի զատ: Ուստի գլուխը կախեր տրտմութ̄ կրակին վրայ կընայէր, որ բոլո-րովին մարած էր: Գերին զինքը այսպէս տրտում տեսնելով շատ նշաններով կըհարցընէր. բայց Ռօպէնսօն չի հասկըցաւ. վեր-ջապէս առաւ կացինը ձեռքն ու կայծակի պէս վազեց անտառը. տէրը մինակ ձգեց, որ ամենեւին չի հասկընալով անոր միտքը կը-զարմանար:

Ռօպէնսօն սկսաւ շփոթիլ եւ

և զարհուրելով վախնալ այս
ի՞նչ բան եղաւ՝ կըսէր․ արդեօք
ապերախտ գերիս զիս ձգեց գը-
նա՞ց՝ ալ չպիտի բերէ կացինս․
չըլլա՞յ թէ նենգութեամբ երթայ ըն-
նակարանս առնէ նաւի, ու զիս
անկէ հալածէ բռնութեամբ․ վախ-
նամ թէ անօրէնը կերթայ զիս
իր քաղաքացի լեռան մարդկանց
կըմատնէ։ Անանկ սարսափելով
դառնացաւ, որ առաւ տեղը ըն-
կաւ գերիին ետևէն, որ գտնէ
ու պատուհասէ ապերախտն, որ
չերթայ միտքը դրած մատնու-
թիւնը կատարէ։ Երբոր չփո-
թելով կերթար՝ տեսաւ որ գե-
րին վազելով կուգայ։ Ռօպէն-
սօն սոսկալով մնաց հոն՝ չի կըր-
ցաւ առաջ երթալ․ վասն զի տե-
սաւ որ մատնիչ ըսած գերին,
ձեռքը չոր խոտեր առեր կու-
գար․ նայիս խոտը մխալով բոց
ելաւ շուտ մը, գերին վար ձգեց
կրակն, ու չոր ծառի ճիւղեր և
խոտեր վրան դնելով աղէկ կրակ

մը վառեց հոն. Ռօպէնսօն կրակին վրայ նայելով՝ շատ կուրախանար, ու կըզուարճանար գերիին ըրած բանին վրայ։ Ուստի ուրախութէն զինքը չի կրցաւ բռնել, ցատկեց ելաւ գերիին վիզը փաթթըրվեցաւ, ու սիրով գըրկեց զինքն ու շատ անգամ ներում խնդրեց, որ անիրաւութեամբ դատեր էր։ Իսկ գերին՝ անտառն որ մտաւ մէկէն երկու չոր ձիւղ կտրեց, ու անհնարին արագութեամբ և ուժով իրար կըքսէր անանկ՝ որ քիչ ատենին մէջ բռնկեցաւ. ու իր քովը պատրաստ չորցած խոտ կար, մէջը փաթթեց բերաւ և սաստիկ փչելուն հովը զարկաւ բոց հանեց. ինչպէս որ ըսինք Ռօպէնսօն ուրախութէն պաղեցաւ մնաց՝ տեսնելով թէ իր կասկածը պարապ ելեր էր 'ի զատ կրակ ալ գտաւ, որ այնչափ ատենէն 'ի վեր զրկըված էր. որուն այնչափ կըփափաքէր։ Բոցին չարժմունքներուն վրայ

նայելով կըզմայլէր․ ետքը կրա-
կոտ փայտ մը առաւ ելաւ գնաց
բնակարանը գերիին հետ ։

Բնակարանին քով շուտով
մեծ կրակ մը վառեց․ կրակին
բոլորը գետնիխնձոր շարեց․ գը-
նաց լամաներուն մէջէն մէկ ձագ
մը բերաւ մորթեց․ կտրեց կը-
տոր մը շամփուրն անցուց տուաւ
գերիին որ դարձնէ ։ Եփելէն
ետև կտոր մը կտրեց , ու մէկ
քանի գետնիխնձոր ալ հանեց
կըձպեց․ ետքը առաւ մայիզ
հունտէն երկու քարի մէջ ման-
րելով խըր թէ ալիւր ըրաւ․ պը-
տուկը լեցուց ջրով կրակը դրաւ
որ եփի ապուր ըլլայ․ վասն զի
ուլթը տարի էր բերանը չէր դը-
րած , անոր համար մեծապէս
կըփափաքէր ։

Իսկ գերին կըտեսնէր այս
պատրաստութիւները, բայց խել-
քը չէր հասնիր թէ ինչո՞ւ համար
կըլլան․ թէպէտ այսչափ միայն
գիտէր , թէ միսը կըխորվէն․ իսկ

մէկալ բաները ամենևին չիյտէր, չէր գիտէր թէ ջուրը ինչո՞ւ համար պտուկին մէջ դրեր կեփէ ։ Ռօպէնսօն եկաւ բնակարանը մըտաւ, գերիին ձգեց որ եփելու բաները նայի զգուշութ՟բ․ բայց գերին կըզարմանար ջրին պղպըջալուն վրայ թէ ինչպէս կեփի ։ Ետքը տեսաւ որ ջուրը վեր ելլելով յանկարծ ամանէն դուրս թափեցաւ, այս բանին անգէտ ըլլալով կարծեց թէ ամանին տակը կենդանի մը կայ, որ այս բանս կընէ․ ուստի ջուրը ասանկ դուրս չի թափելուն համար ձեռքը պտուկին մէջ խօթեց, որ կենդանին բռնէ․ բայց անանկ խեղճ ըլլալով աղաղակ մը հանեց, որ բոլոր բնակարանը գոռաց ։

Ռօպէնսօն այս ձայնէն անանկ զարհուրեցաւ, որ չիյտէր թէ ինչ եղաւ դուրսը․ այն կէտին ուրիշ բան միտքը չեկաւ, բայց եթէ վայրենի մարդիկ եկան կո-

խեցին, և Ուրբաթ գերին բըռ-նեցին։ Ուստի վախին ու բնական սէրն, որ ունէր գերին պաշտ-պանելու՝ իրար խառնըվեցան, ստիպեցաւ ծածուկ Ճամբայէն փախչելով ազատիլ. բայց մըտա-ծեց որ մարդկութն չէր իր գե-րին կամ ընկերը ձգել թշնամի-ներուն ձեռքն ու փախչի։ Ա-սոր համար այս խորհուրդը ձը-գեց, ու մէկէն զէնքերն առաւ ելաւ բնակարանէն դուրս, միտ-քը դրաւ թէ պէտք որ ըլլայ մին-չև բոլոր արիւնը թափէ. միայն թէ այս անգամ ալ ազատէ գե-րին մարդակեր թշնամիներուն ձեռքէն։ Բայց երբոր կացինը ձեռքը դուրս ցաթկեց, տեսաւ որ գերին մինակ կըպօռայ կա-ղաղակէ, ի՞նչպէս զարմացաւ մը-նաց, չգիտէր թէ ի՞նչ ըսուրցէ։ Քիչ մը մտմտալէն ետև՝ հասկը-ցաւ թէ գերին ձեռքն երելուն համար կըպօռայ։

Ռոպէնսոն սիրտ տվաւ իրեն

որ ձայնը կարէ. սակայն տարիէն ետև երբ որ սկսաւ գերիին խօսքերը և բնութիւնը հասկընալ, անատեսը իմացաւ, որ այնչափ սոսկալի աղաղակը չէ թէ միայն ցաւուն համար էր, հապա աւելի երևակայական զարհուրանացը համար: Վասն զի լեռան մարդիկ հաւատք և կրթութի չունենալնուն համար, սովորութի ունին բան մը պատահածին պէս պատճառը չգիտնալով սոսկալի կայլայլին: Ուստի այս ողորմելի աւելորդապաշտ հեթանոս գերին ալ միշտ միտքը դրած էր թէ մէկ աներևոյթ հոգի մը կայ՝ որ ասանկ ամէն բան կընէ. որոնց որ պատճառը չէր կրնար հասկընալ: Այս հոգին ինքնիրեն բան չըներ կըսէր, այլ միշտ մէկ մարդու մը հրամանով կընէ ասանկ բաները, որուն հրամանին տակն է: Եւ այն մարդուն տակը շատ հոգիներ կան, որոնց կըհրամայէ. որ է կախարդ կնիկ

մարդ մը կըսէր։ Զորօրինակ՝ Թէ որ լեռան մարդկանց մէկ անասունը յանկարծ հիւանդնար, որուն պատճառը չգիտնալով մէկէն կաւտային Թէ կախարդ կընիկը կախարդելով անասունը հիւընդցուց, կամ Թէ չար հոգին սաանկ ըրաւ [1]։

Իրաւ է՝ շատ միամիտ ժողովուրդ ալ կայ որ աւելորդապաշտուԹե մէջ են իրենց քուրմերուն չարուԹէն, որ ժողովուրդին միտքը սաանկ աւելորդա-

1 Մինչև հիմա ալ վայրենի մարդիկ այս միտքին վրայ են, հապա ամէն տեղաց հասա մարդիկ կարծեն՝ Թէ խելքերնին չի հասած ծանր բանը չար հոգին կընէ, կամ չար ժամանակին մէջ ըլլալով կըլլայ։ անոր համար կըսեն Թէ չար սահաԹի էկաւ. Ահա սաանկ աւելորդապաշտուԹե շատ անխելք մարդիկ ժանտամահին պատճառը չգիտնալով կարծեն Թէ չար հոգի է. ուստի անոյշ բաներ կըդնեն, որ այն չար հոգին իրենց չի դըպչի։ Բայց Թէ որ ատոր վրայ անդրադառնան՝ պիտոր ամըչնան իրենց անխելքուԹեը վրայ հասկընալով ժանտամահին պատճառը։

պաշտութիւնք պաշարեր են, որպես զի կախարդութիւն ընելով սատակնին առնեն. շատ անգամ կըկեղծաւորին թէ կըճանչնանք պատճառն, ու կըխոստանան թէ աստուածային անունով կախարդութիւնը կուրենք՝ բռնադատելով չար հոգին որ թող տայ։ Ահա ասանկ սուտ խօսքերը ստըկով կըծախեն ռամիկ ժողովուրդին։ Նայիս հիւանդութիւնը բնականաբար կըդադրի, անոնք կուրախանան թէ մենք լաւցուցինք, և միամիտ ժողովուրդը կըխաբեն թէ մեր արուեստովը յաջողեցաւ։ Շատ մարդիկ կան մինչև հիմա, որոնց միտքը ասանկ աւելորդապաշտութիւնք խաւարած ըլլալով կախարդութեան կաւտան ու կըհետեւին։

Ասկէ կըհետեւի թէ այն վայրենի լեռան մարդիկ ինչպէսի աւելորդապաշտութիւնք մեծ կըհամարին ասանկ բաները. մինչ զի որչափ որ զարմանալի բան ի-

րենց հանդիպալի, երբ իրենց խեղճ միտքը չի կրնար ըմբռնել. մէկէն կընծայեն չար հոգիներուն որ կընեն. ահա այսպէս եղաւ և Ուրբաթ գերիին ալ. Վասն զի ոչ լսեր էր և ոչ փորձով գիտեր թէ ջուրը տաքնալով կըպղպըջայ, և բնաւ չէր փորձած ձեռքը տաք ջուրը խօթելու. ուստի չգիտնալով թէ ձեռքին կսկիծը ասկէ պատճառեցաւ, որ ջրին մէջ խօթելով մէկէն երեցաւ, հաստատ հաւատաց թէ կախարդչար հոգին ցաւցուց. բայց ասալ միտքը դրաւ թէ Ռօպէնսօնն այն չար հոգիին տէրն է։

Ուրբաթն երբոր մէկը չի տեսած բանը կըտեսնէ, որ խելքէ դուրս կերևնայ, կամ արուեստաւոր մարդու հանդիպելով զանազան բաներ կընէ առջին, որ անկարելի կերևնան. զորօրինակ թռչունին գլուխը կը կտրեն կըփակցընեն ևն, ասանկ բաները կախարդութի սեպելով սատանայական չի կար.

ծէ լեռան մարդիկներուն պէս ։ Զէ թէ անանկ բաները խելքէ դուրս են, հապա խելքը կարճ և հաստ ըլլալով ասանկ արուեստներէն դուրս է. Թէ որ խելքը բարակ և կրթած ըլլար՝ այնչափ չէր զարմանար, ու ամէն բանին պատճառը կրգտնէր ։

Ինչպէս ըսինք՝ Ռօպէնսօն անանկ զարմացաւ մնաց, որ առջի բերանը չի կրցաւ բան մը զուրցել և մխիթարել գերին, նաև շամփուրը ձեռքէն առնելով միսը գարձընել. իսկ գերին զարհուրելով միակերպ պտուկին վրայ կրնայէր հետաքրքրութ̃բ ։ Եւ որովհետև Ռօպէնսօնը երկնաւոր հօգիի մը տեղ էր դրեր՝ դողալով և մեծարանքով միայն երեսը կրնայէր ։

Ռօպէնսօն ասանկ ահաւոր երևնալուն պատճառը՝ մէյմը մարմինին ճերմակութիւնն էր, մէյմ՝ ալ երկայն մօրուքն էր. որ գերին կրտեսնէր թէ ամե-

նուին իրենց չէր նմանիր ոչ գոյնը և ոչ մօրուքը. որովհետև Ամերիգացիք մօրուք չունին, ու երկար ատեն անցնելէն ետև քիչ մը կըբուսնի. անալ շուտ մը կածիլէն։

Բայց այս միջոցիս մէջ ապուրն ու գետնախնձորը եփեցան, դքալ չըլլալուն համար Ռօպէնսօն ապուրը լեցուց քօքօյին ամաններուն մէջ, որպէս զի խահվէի պէս քիչ քիչ խմէ, իսկ գերին ամենևին չի մօտեցաւ ու բերանը չի դրաւ ապուրը, կարծելով թէ կախարդած դեղ է։ Նաև սոսկալով Ռօպէնսօնին կընայէր, որ այնչափ փափաքանօք կուտէր. իսկ գերին ախորժանօք կերաւ միայն խորված մսէն ու գետնախնձորէն։

Որչափ քաղցր և ախորժելի եկաւ Ռօպէնսօնին այս կերակուրն, որ այնչափ տարի չէր կերած. բոլոր քաշածնեղութիւնները մոռցաւ, և կարծեց որ չէ թէ

անապատ կղզիին մէջ է, Հայա բազմաժողով մեծ քաղաքի մը մէջն է։ Անանկ որ ա̃ծային նախախնամութ̃ը անկարծելի դիպուածով մը մէկ րոպէին մէջ այնչափ տարուան փափաքը լցուց, և սրտին վէրքը փարատեց. Շատ անգամ մեզ ալ այսպէս կընէ, բայց մեր զգայութ̃ը չի համբերելով մէկ նեղութ̃ի մը տեսածին պէս կըյուսահատի, իբր անդարմանելի։ Իսկ Ռոպէնսոն այս երջանիկ կէտին մէջ կարծէր թէ ամէն բարիքը կատարեալ ունի կըվայելէ, և բոլոր սրտովը շնորհակալ կըլլար ա̃յ։

Կերակուրը լմընցաւ՝ Ռոպէնսոն մէկ դի քաշվեցաւ որ աղէկ մտածական ընէ այս երջանիկ դիպուածներուն վրայ, որ յանկարծ այսպէս փոխվեցաւ վիճակը. ամէն բան իրեն զուարճալի կերևնար, որովհետև մինակ չէր՝ ընկեր մը ունէր. Թէպէտ չէր կրնար խօսակցութ̃ի ընել, բայց

այնչափ ընկերութիւն ալ շատ մեծ բան էր. և շատ մեծ մխիթարութ͞ի էր, որ կրնար իրեն մեծապէս օգնութ͞ի հասնիլ։ Նաև կրակ ունեցաւ, որ կրնար լաւ առողջ կերակուր ուտել ինչ բան որ ուզէր։ Կըսէր ինքն իրեն թէ ինչ բան կայ հիմա, որ կարենայ իմ հանգստութ͞իս աւրել, և թող չի տալ որ երջանիկ ապրիմ. ահա՛ ասկէ ետև կըզուարճանամ խաղաղութ͞բ այնչափ բարութենց մէջ, որ Ա͞Ծ ինծի պարգևեց։ Ահա՛ լեցուն պտուղ, և այնչափ անասուններ, որ սեղանս ամէն կերակուրով կըլեցընեն։ Ասկէ ետքը մոռնամ անցածներըն ; որ այնչափ տանջըվեցայ, և այնչափ տարի անապատիս մէջ կեանքս մաշեցի։ Ահա գերիս ուժով և զօրաւոր իմ տեղս կաշխատի։ Այսանկ մտածելով և ինքնիրեն խօսելով նայֆս յանկարծ միտքը փոխվեցաւ։ Ի՞նչ., թէ որ այս ամէն աղեկու-

Թիւնները մէկէն անցնին եւ ինչ պիտի ընեմ կըսէր․ եթէ գերիս մեռնի, և կրակս մարի նորէն, ես ինչպէս կըլլամ։ Այս խորհուրդը բոլորովին սիրտն այլայլելով արիւնը պաղեցուց։

Մանաւանդ եթէ զըւարճութ̃ թոյլ և հանգիստ կեանքի սորվիմ, ետքը ինչպէս պիտի դիմանամ նեղութեանց և խիստ աշխատանաց մէջ, թէ որ գլուխս բան մը գայ ըսելով տրտմեցաւ։ Սկսաւ սրտանց հառաչել, թէ ինչ օգուտ եղաւ, որ առաջուան տկար և պակասաւոր վարքս շըտկեցի կրթութ̃․ և դիպուածներուն բռնութ̃ այնչափ աշխատաւոր և պարկեշտ ըլլալս ինչո՞ւ պէտք եղաւ, երբոր հիմա պիտի ըլլամ ուտելու խմելու ետեւէ առանց աշխատանաց․ որով քաջութիւնս ալ կերթայ՝ առողջութիւնս ալ․ հոգիս ալ պիտի տըկարանայ մարմինս ալ։ Ամենեւին ա̃ծ չուզէր այսանկ բան։ Այս

խօսքս ըսած ատենը ցաթկեց ե-լաւ սկսաւ բակին մէջ երթալ գալ ։ Այս միջոցիս մէջ գերին ժողվեց սեղանն, ու մնացած կերակուրը պահեց. և տիրոջը հրամանով գնաց լամաները կթելու ։

Ռօպէնսօն նորէն սկսաւ խօսիլ. թէ որ աշխատանքէ փախչիմ կաննոներս ձգեմ՝ շուտով կավրիմ, և վիճակս գէշ կըլլայ. ձեռքերս որչափ որ անգործ մընան, ես կըլլամ անշնորհք և անպիտան մարդ մը ։ Ուստի ընկաւ երեսի վրայ երկրպագութի̃ ընելով աղաչեց այ̃, որ թող չի տայ զինքը. փրկէ անանկ անկարգութեանց, և անանկ զինքը պահէ պարկեշտ և խոհեմ ։

Պէտք է որ կըսէր նորէն երգում ընեմ ստեղծողիս առջին. որպէս զի միշտ ըլլամ պահեցող և պարկեշտ, կերակուրս պարզ՝ այնչափ որ զիս առողջ պահէ, առանց որկրամոլութեան, թէպէտ և շատ բաներ ունենամ, և մե-

Ծապէս առատութեն մէջ ըլլամ։
Նաև պէտք է որ նոյն աշխատան֊
քով իմ կեանքս անցընեմ. Թէ֊
պէտև այնչափ հարկաւոր չըլլայ
ինծի։ Ամէն շաբթըվան մէկ օրը՝
չեփած կերակուրներ ուտեմ.
ինչպէս որ մինչև հիմա անանկ
պաղ կերակուրներով ապրեցայ.
և ամէն ամսուն երքի օրը ա֊
նանկ առանձնանամ ինչպէս որ
եղայ առջի օրն, որ հոս ոտք կո֊
խեցի. նոյն օրը կրկրկեմ գե֊
րիս դաշտը 24 ժամ հոն Թողլ
մնայ։

Այս առաքինական առաջա֊
դրութիւնս ընծելէն ետև սիրտը
քաղցրանալով բերկրեցաւ, և
հանգչեցաւ. որովհետև մար֊
դուս հոգին աշխատանքով և ա֊
ռաքինութե֊ կատարեալ կըլլայ,
լաւ կըհասկընար Թէ որչափ բա֊
րիք յառաջ կուգան այս կամա֊
ւոր ձգնուէս, որ առաջադրեց։
Սիրտը հեռացընելով հեշտա֊
լի բերկրութենէ, խիղճը աւելի

մաքուր և պարզ եղաւ: Սակայն իր փորձովը խիստ լաւ գիտէր մարդկային մտաց անհաստատութիւը. անոր համար խիստ հարկաւոր կիմանար անանկ ըզգուշութիւն մը ունենալու ընդդէմ բնական փոփոխականութե: Ուստի ուզեց որ տեղ մը գրէ նշանէ այս խրատը, որպէս զի շատ անգամ տեսնէ. մանաւանդ թէ ամէն օր մէկ քանի անգամ կարդայ այս գովելի առաջադըրութիւը: Անոր համար կացինով փորեց բնակարանին դրանը վըրան այս երկու խօսքս. Աշխատութէ, Պահեցողութէ [1]:

1 Ռօպէնսօն փորձով գիտէր թէ որչափ վնասակար ախտ են դատարկութիւն ու որկրամոլութիւնը. անոր համար սրտին մէջ գրեց աշխատութիւն ու պահեցողութիւն, որ ամէն մարդու հարկաւոր դեղ են. վասն զի առանց ասոնց անհնար է առաքինի կեանք ունենալ, հարկաւ ախտաւոր կըլլայ մարդ. որովհետև ամէն չարեաց սկիզբը թուլութենէն առաջ կուգայ: Ռօպէնսօն տեսաւ որ ամէն հանգստութիւն ունի, սաստիկ վախցաւ, չըլ-

## ԺԸ. Դիպուած.

Սրդ Ռօպէնսօնին ըրած առաջադրութինը շատ մեծ խրատ է մանհացուցման. և ամէն բանէն աւելի զարմանալու գործք է, որ առաքինական վարքը չի թուլնալու համար՝ բոլոր ունեցած առատութինը և հանգիստը ձգեց, ու իր առջի ձգնաւորական վարքը չի փոխեց։ Այս օրինակ ամէն մարդու, որ բարի վախճանի համար պէտք է կամքը կտրել, առաքինութեն հետևելով ամենևին չար սովորութի մը չունենալ։

Նոյն կըլլայ կատարեալ մարդ՝ ինչպէս որ եղաւ Ռօպէնսօն. որ

ըլլայ, թէ թուլնալով առաքինութիւնը կորսընցնէ ախտաւոր ըլլայ։ Այս առոր համար կըսեն գիտունները, թէ որչափ որ մարմինը կըգիրանայ, հոգին կըտկարանայ. և որչափ որ մարմինը կըտկարանայ՝ հոգին կըզօրանայ։

ամէն նեղութիւն քաշելէն ետև, և ամէն կերպով կամքը կոտրելէն ետև անանկ վիճակի մէջ դրաւ զինքն, որ քանի որ այն կղզին ոտք էր կոխեր այնպիսի երջանիկ կեանք չէր ունեցեր ։ Միայն մէկ անհանգստութիւն մը մնաց իրեն, որ կը վախնար՝ չըլլայ թէ վայրենի մարդիկ յանկարծ դառնան գան իրենց երկու ընկերները փնտռելու համար . նաև հաւանական կերևնար որ եթէ գան, նորէն մարդասպանութիւն և վտանգ պիտի ըլլայ . վասն զի պէտք էր կռիւ ընելով ծեծկվիլ և կատաղութեամբ իրարու արիւն թափել և իրար չարաչար մեռցընել .

Այս կասկածս բռնադատեց որ նորէն աշխատին իրենց ապահովութեանը համար, որպէս զի եթէ հանդիպի՝ կարենան զիրենք պաշտպանելու ։ Հատոնցմէ կուզէր Ռօպէնսօն իրեն բնակարանը աւելի ամըրցընել . բայց ո-

րովհետև մինակ էր , անկարելի էր այս բանը կատարել : Հիմա որ ընկեր ունեցաւ , միտքը հաստատեց որ կրնայ կատարել այս գործքը : Ուստի ելաւ լեռանը վրան , որ նայի՝ թէ ինչ կերպ կրնայ ամբրցնել . նայեցաւ դիտեց ամէն տեղ , որոշեց որ ծառէ պատին չորս դին փորէ խորունկ ու լայն խրամ (խէնտէկ) բանայ , և մէջ տեղը շինէ մէկ ամուր պատնէշ մը . նաև ասալ միտքը դրաւ որ այն վազած ջուրը երկուս բաժնէ . մէկ մասը խրամին մէջ թող տայ և մէկ մասն ալ բակին մէջ վազցընէ . որպէս զի թէ որ պաշարվի առանց ջրի չի մնայ :

Այս խորհուրդը և շինելու բաները գերիին հասկրցնելու համար շատ մեծ դժուարութիներ կըքաշեր . սակայն ելան գացին ծովին քով . հոն որչափ խեցիներ կային՝ որ կրնային գետինը փորել , բոլորը ժողվեցին բե-

րէն, ու երկուսն ալ սկսան աշխատիլ։ Ցայտնի է թէ այս գործքը դիւրին բան չէ. վասն զի պէտք էր որ փոսը 8 ոտք բարձր և լայն ըլլար, որ իրենց օգուտ ընեէր. իսկ շրջապատը պիտի ըլլար 100 ոտք։ Եւ սակայն այս զարհուրելի աշխատանքիս համար երկրթէ գործիք մը չունէր, ոչ բրիչ, և ոչ թի ունէր. մանաւանդ թէ 400 ցիցեր պէտք էր պատնէշին համար, որ կտրելու և շիտկելու էր զանոնք մէկ քարէ կացինով մը. ուստի շատ մեծ աշխատալի էր այս ջանքը։ Վերջապէս ջուրը հոն վազցընելու համար պէտք էր ճամբայ մը փորել. ուր տեղ տեղ արգելներ և բարձր տեղեր ըլլալով հարկաճղքելու էր որ ջուրը անցնի։

Այս բոլոր դժուարութիւնները ամենևին սիրտը չի պաղեցուցին Ռոպէնսօնին, որ սկսեր էր գերիին հետ աշխատիլ. իբր զի՛ աշխատասէր և չափաւոր վարքը ու

մէն դժուար բան իրեն դիւրին կընէր. և անանկ քաջութիւն մը ստացեր' էր, որ ամենևին դատարկ չէր կընար կենալ, ոչ հեշտութիւն գիտէր, և ոչ թուլութի. որչափ որ ծանր և դժուար բանի մը ձեռք զարնէր' միշտ այս խօսքերս կըսէր. Աստուծով և շարունակելով: Ուստի ոչ երբեք թուլացաւ իր գործքէն, որ դժուար կերևնար' թէ կարենայ գլուխ տանել:

Այս կերպով երկուքը միատեղ կաշխատէին ուրախութիւն առտըվանէ մինչև իրիկուն. որ անանկ անյարմար գործքերով ամէն օր առաջ կըտանէին գործքը զարմանալի կերպով մը: Ած ողորմեցաւ որ 2 ամիս անցաւ: վայրենիներէն մարդ մը չերևցաւ. վասն զի հակառակ հով մը շարունակ փչելով արգիլեց որ այն կղզին չի կրցան գալ: Ուստի բոլոր այս ժամանակիս մէջ աշխատանքի հետ էին. վասն

զի հարկ չեղաւ որ բանի մը հա-
մար զգուշութիւն ընելով գործքը
ձգեմ ։

Ռօպէնսօն այս աշխատանքիս
մէջ՝ կըջանար որ գերիին քիչ
քիչ Նեմցեի լեզուն սորվեցընէ ․
շատ կըփափաքէր որ այս լեզուով
հետը խօսի ․ իսկ գերին այնչափ
մեծ ջանք ունէր, որ քիչ ժա-
մանակին մէջ շատ խօսք սորվե-
ցաւ ։ Վարպետն ալ աւելի ա-
խորժելով՝ սկսաւ այլեւայլ ճամ
բայով դպրատան կարգով սոր-
վեցընել ․ ամէն անգամ որ բան
պէտք կըլլար՝ կըդնէր գերիին
առջին ու անունը կուտար ։ Բայց
երբ անանկ խօսք կըլլար՝ որ չէր
կրնար ցցընել անոր, զանազան
շարժմունքներով կիմացընէր ․
անանկ որ գերին կրնար հասկը-
նալ ։

Այս եղանակով աշկերտը 6
ամսըվան մէջ սկսաւ Նեմցեի
լեզուով բաւական հասկըցնել
պէտք եղած բաները ։ Ահա աս-

ալ նոր երջանկութիւն մը եղաւ Ռոպէնսոնին . որ մինչեւ անատենը գերիին հետ անլեզու մունջի պէս ընկերութիւն կընէր , բայց հիմա կրնար մտքին խորհուրդը յայտնել , եւ քաղցրութեամբ խօսակցիլ իրարու հետ ։ Ի՞նչ անպատմելի ուրախութիւն իմացաւ Ռոպէնսոն , որ առաջ անբան թութակին խօսքին վրայ այնչափ կուրախանար . հիմա որ բուն մարդու հետ կը խօսէր՝ ինչ եղաւ սիրտը ։ Ո՛րչափ աւելի գերիին հետ խօսակցութիւն ըրաւ , ուղածէն աւելի գտաւ ։ Վասն զի այս պատանին անկեղծութեամբ եւ ազատութեամբ լցված էր . մանաւանդ անանկ փակած էր տիրոջն՝ որ չէ եղած ։ Ուստի օրէ օր Ռոպէնսոնին սէրը կաւելնար վրան. շատ չանցաւ իր բնակարանին մէջ առաւ՝ որ գիշերն ալ միատեղ ըլլան ։

Երկու ամիսէն ետեւ լմընցու-

ցին փոսը, անանկ որ ալ Թշնամինէրէն վախնալու բան չի մնաց. Նաև եթէ գային մօտենային հոն, դիւրաւ կրնային փախցընել. վասն զի ով որ մօտենար փոսին, մէկէն կրնային զարնել թէ՛ աղեղով, և թէ՛ տէգով. ուստի հասկըցան, որ բաւականապէս ապահով եղած են:

()ր մը Ռոպէնսոն ու գերին գացին ծովուն մօտ բարձր քարիմը վրան ելան, ուր տեղաց կրնային ծովուն վրայէն հեռուն տեսնել. յանկարծ մէկ քանի կղզիներ տեսան, որ հեռուէն ամպի պէս կերևնային. գերին աչքը տնկեց դէպ 'ի այն կողմը կընայէր: Նայիս մէկէնիմէկ ցաթկեց այլայլելով՝ վար վեր ընկաւ. անանկ նորաձև շարժմունքներով որ Ռոպէնսոն կարծեց թէ յանկարծակի կատաղութի՛ մը եկաւ վրան: Զօրացի՛ր, զօրացի՛ր կըկանչէր միշտ ցաթկըռտելով:

Ռոպէնսոնն իրեն հարցուց, թէ ինչո՞ւ համար սատանին դէմն անցած այլայլեցար ։

Պանդխտութեանց թէ ահա իմ քաղաքս ։ ահա իմ ազգիս բնակարանը ։ Այսպէս ուրախութեն շփոթած էր ։ Իր դէմքը աչքերը և շարժուածքը յայտնի կընէր հայրենասիրութիւն ու քաղաքը տեսնելու փափաքը ։ Ռոպէնսոնին անկարելի եկաւ այս գործքը, և ճշմարիտը խօսելով գովելի բան էր․ որ փորձելով հասկըցաւ թէ գերին որչափ կըսիրեր իրեն հայրենիքն, ու իր ծընողքը ։ Սակայն Ռոպէնսոն վախցաւ, որ չըլլա՞յ թէ օր մը առիթ գտնէ ու ձգէ զինքը դառնայ իր հայրենիքը ։ Ուստի հասկընալու համար կամեցաւ Ռոպէնսոն փորձել անոր սիրտը․ և ետքը այս խօսակցութիւներս ըրաւ․ որով կընայ հասկըցվիլ թէ որչափ գերադասանց բնութեան տէր էր գերին ։

Հասկցուց Ռոպէնսոն թէ կը-
փափաքէ՞ս Հայրենիքդ երթալու,
և անոնց հետ տանելու։ Գերին
ալ պատասխան տուաւ, թէ ո՛չ
մ՞ւր. էր, շատ կըցանկայի տեսնե-
լու։ Կրկնեց Ռոպէնսոն արդեօք
անոնց քով երթայիր նորէն մար-
դու միս ուտելու՞։ Ըսաւ
գերին՝ թէ ճշմարիտ կըսեմ որ
չէի ուտեր, ես անոնց կըսորվե-
ցընէի որ վայրենի չի մնան. Հա-
պա կաթ ու ոչխարի միս ուտեն,
և ամենեւին մարդու միս չուտեն։
Ռոպէնսոն ըսաւ, կրնա՞ս քանոթ-
նաւ մը շինել. և երկիրդ եր-
թալ։ Հրամմերես ըսաւ։ Անաւ
ըսաւ՝ խիստ լաւ. շինէ՛ մէկ նաւ
մը ինչպէս որ կուզես. բայց ին-
չո՞ւ համար աչքդ գետինը կը-
նայի տրտում։ Անոր համար ը-
սաւ, որ կըտեսնեմ թէ տէրս
բարկացած է ինծի, վասն զի
կուզէ զիս խրկել. բայց գիտ-
նաս երբոր դուն հետս չես, ա-
մենեւին չեմ երթար։ Ռոպէն-

հա նորէն քէզ կընդունիմ սի-
րով. արցունքներս սրբէ՛նք, և ի-
րաւք չի ձգենք անմնուէն ։

Այս տրտմալի խօսքերը փո-
խելու համար սկսաւ նորէն խօսք
բանալ նաւակին վրայ, ու զա-
նազան խնդիրներ ըրաւ. վեր-
ջապէս բանեց գերիին ձեռքէն
տապաւ կտրած ծառը ցցուց, որ
այնչափ տարի աշխատելով կը-
փորէր ։ Գերին երբոր տեսաւ
սկսաւ կամաց մը խնդալ. որ
այնչափ տարիներուն մէջ անանկ
քիչ էր փորեր, որ չորս մատ չի
կար ։ Ռօպէնսօն հարցուց թէ
այս աշխատանքէն ինչ հասկը-
ցար. գերին ալ պատասխան տը-
վաւ. թէ կարծեմ որ շատ ժա-
մանակ կորսնցուցեր ես գրեթէ
պարապ տեղը. որովհետև կըր-
նայիր այս ծառը քիչ օրւան մէջ
կրակով շատ դիւրին փորել ։
Այս բանն որ լսեց Ռօպէնսօն՝
ուրախութենէն խելքը գլխէն գը-
նաց. իրեն անանկ կուգար՝ որ

նաւը լմընցաւ, ու ծովուն մէջ ժուռ կուգայ. և երջանիկ համբորդութեան ցամաքը հասաւ, ու եւրոպացոց հետ խօսակցելով կըզըւարճանայ։ Այս խօրհուրդներըն անցնելէն ետև, որոշեց որ առավանց կանուխ սկըսի գործքըն առաջ տանիլ։

Ուէպէտ գործքին համբան գտան, բայց չգիտէր թէ կրնա՞յ գլուխ ելլել. կամ թէ կրնայ անով համբորդութիւն ընել, վասն զի ապագայն միշտ անստոյգ ըլլալով շատ փոփոխութեանց տակ է, որ շատ անգամ պատրաստ կըհանէ մարդուս յոյսը։ Անդադար կըտեսնենք որ անյաջող կըմնայ մեր հաստատ յոյսը, անոր համար միշտ պէտք է իմաստութիւն սպասել և պատրաստ կենալ ասանկ դիպուածներու մէջ։ Ռօպէնսօն այսպիսի բաները շատ անգամ փորձած ըլլալով ամէն բան յանձնեց ա̃ծային նախախնամութեան ու դարձաւ իր բնա-

## ԺԹ. Դիպուած.

Վերջի դիպուածէն յայտնի եղաւ, որ շատ բան կըպատահի աշխարհքիս մէջ, որ պէսպէս արգելքներով կըխափանուի, ու ճամբան չի գտնըվելով երկար ատեն անկատար կըմնայ. սակայն մէկ պզտի գիւտ մը քիչ աշխատանքով և քիչ ժամանակի մէջ գըլուխ կըտանի, որ տարիներով մարդու մը միտք չէր եկած. ինչպէս եղաւ Ռօպէնսօնին. որ այնչափ տարի հօգին հանեց աշխատելով ծառը փորելու համար, և հիմա մէկ լեռան մարդ մը անանկ լոյս մը տուաւ իրեն, որ կարծեց թէ՛ նաւը լմնցած է ու քաղքէ քաղաք կըպտըտի։

Բայց շատ բան ալ կըլլայ, որ գործքը կարգի դրած ատենը արգելք մը կըպատահի ու անկատար կըթողու. ինչպէս՝ երբ Ռօպէնսօն եղաւ միւս օրն որ նա-

ւը փորել տայ գերեին, Նայիս յանկարծ անձրեւ մը եկաւ այնպէս սաստիկ՝ որ քանի այն կըղզին եկած էր գլխտելով տեսէր էր որ տարւոյն երկու անգամ անանկ սաստիկ անձրեւ կուգայ հոն՝ միշտ գիշերահաւասարին ատենը[1]։ Այս անձրեւային եղանակը հասարակօրէն երկու ամիս կըքշէր. այս միջոցիս մէջ շարունակ անձրեւելով՝ անկարելի եղաւ որ գործքի ձեռք զարնեն։ Նաեւ տաս փորձեր էր որ խիստ վնասակար էր առողջութե այս անձրեւին ատենը դուրս ելլել թրջիլ. ուստի բռնադատեցան որ նաւը ձգեն եւ ուրիշ գործք մը հնարեն առանց դուրս ելլելու։

1 Գիշերահաւասար կըլլայ տարին երկու անգամ, մէյմը Մարտի 9 ին, մէյմ ալ սեպտեմբերի 10 ին. երբոր արեգակը այն կենդանակերպներուն տակը կմտնէ, որ գիշեր ցորեկ հաւասար կըլլայ. վասն զի հաւասար ժամանակ կանգնէ արեւը թէ աշխարհքիս վրան եւ թէ տակը։

Ո՛րչափ մեծ երջանկութիւն էր Ռօպէնսօնին, որ այս տարաժամ անձրեւոտ եղանակին երկար գիշերները կրակի լոյս և ընկեր ունեցաւ, որ միատեղ կանչխաւսէր, և խօսակցութիւն ընելով սրտին նեղութիւնը կը փարատէր: Նաեւ որ այս տաղտկալի գիշերները մինակ կանցընէր անգործ և մութ տեղը, հիմա ընկերոջը հետ նըստած կրակին և լուսին քով կաշխատէր ուրախութիւն ամենեւին ձանձրութիւն մը չունենալով:

Լեռան մարդիկ որչափ գիւրին կերպով բաներ կըրծնէին, Ռօպէնսօն սորվեցաւ գերիէն. և շատ բան ալ ինքն անոր սորվեցուց, որ ամենեւին միտքէն չէր անցած: Եւ այսպէս երկուքն ալ իրենց ճանաչմունքը, և ուշիմութիւը կատարելագործեցին փոխնիփոխը իրարու լոյս տալով շատ մանտրըմունտրը գործքեր չինեցին այս միջոցիս մէջ. որ եթէ միայն ըլլային անկարելի էր որ

լութեն մէջ ընկղմած էր վայրե-
նի գերին հաւատքի կողմանէ,
ահա այս յետագայ տրամախօ-
սութենէս կիմացուի, որ իրարու
հետ ըրին: Ռուպէնոսն հարցուց,
թէ ըսէ ինծի սիրելի. գիտե՞ս ա-
ղէկ, ո՞վ է որ ստեղծեց այս ծովը
ու ցամաքը, կենդանիները, նաև
քեզ: Գիտեմ ալ պատասխանեց տը-
ղան թէ Թուփան ստեղծեց այս
ամէն բաները: Ո՞վ է ըսաց՝ Թու-
փան: Է այն, որ որոտում կընէ
երկինքը. այսինքն խիստ շատ
տարեց ծեր մըն է, որ ամէն բա-
նէն առաջ կենդանի ըլլալով
ստեղծեց կայծակը. նաև արե-
գակէն լուսնէն և աստղերէն շատ
առաջ է. անանկ որ ամէն ստեղ-
ծածները իրեն կըկանչեն ու կա-
ղաղակեն ո՜:

Կրկնեց Ռուպէնոսն, թէ մեռ-
նելէն ետև ո՞ւր կերթան քու
ընկերներդ: Պատասխանեց թէ
կերթան Թուփանին քով. որ
կըբնակի բարձր լեռներուն վր-

րանն ։ Այն թագաւորն ընտանեբուն վրայ բնաց՝ ո՞չ է ոտսեր զայն ։ Միայն Օլօքաքէ քահանաներն կրտսերաներն, որ իշխանութիւն ու-նէին հոն եկեղեց[1]. և Թուփանեկին կանչելով ծն նաւն ամէն բանն ա-նոր կը հարցընեն, անկէ խոր-հուրդ կառնեն, և յետոյ ինչ որ անկէ լսեն, մեզի քերեն կի-մացընեն ։ Ոսպէնսոն ըսաւ, թէ անոնք որ մտնելէն ետև կեր-թան Թուփանեկին քով, երանու-թեան մէջ կըլլաբժանանո՞ն ։ Ո՛հ

1 Այս վայրենիները օրէնք ծածկապաշտութէ չունենալով սոսկալի առասպելներով խա-ւարած էր միտքերնին. բայց կաւատային որ մէկ գերագոյն ծերունի կայ Թուփան անուա-նով, որ աշխարհիս ստեղծիչ է. բարերա-րուն աղէկութին կաւատայ, գէշերուն ալ գէ-շութին ։ Իսկ իրենց քուրմերը Օլօքաքէ ա-նունով կերթան Թուփանին քով, ու հետը խօսելով կանգան օրէնք կըդնեն, և գուշա-կութիններ կընեն ։ Ահա սոսկալ հեթանո-սական առասպելներով գերին պաշարված ըլլալով կըպատմէ Ոսպէնսոնին իր հաւ-տաքը ։

լսաց․ անտարակոյս կըփառաւո-
րին, որ թշնամիները զիրենք մե-
ռուցին կերան ։

Ռօպէնսօն այս հեթանոսա-
կան մոլորութիւններս որ լսեց ա-
կանջները գոցեց․ անկէ ետեւ
պարզպարզէս ետեւէն եղաւ՝ որ
գերիին միտքը սրբելով բարի
խորհուրդներ տալ․ և ստեղծո-
ղին ծանօթութիւնը տալով հան-
դերձեալ կեանքը սորվեցնել ։
Նաև հասկըցուց իրեն, թէ մեծ
է գերագոյն եակ մըքէ․ գոյս․
ամենակարող, ամենիմաստ, և
ամենաբարի․ որ ինչպէս ստեղ-
ծեր է, անանկ ալ կըկառավարէ
և կըպահէ ամէն բան․ որ չունի
ամենևին սկիզբն, ամէն տեղ ներ-
կայ ըլլալով ամենուն միտքը և
խորհուրդը կըտեսնէ․ ամէն խօսք
կըլսէ, և ամէն գործք կըդիտէ․
ամէն տեսակ բարիով լի է, և ա-
մէն չար կատէ ։ Թէ հոս և թէ
հանդերձեալը միայն զանոնք կը-
փառաւորէ երանութեամբ, որ կը-

քին գլխաւոր ճշմարտութիւնը սորվեցաւ . ինչպէս որ վարպետը ջանաց իրեն սորվեցնել ։

Նա անկէ ետեւ երանելի եղաւ գերին՝ որ իր տեղէն եկաւ այս կղզին ընկաւ ա՟ծպաշտութ՟ն սորվեցաւ . և այս մտածականը խորհելով միտք առաւ՝ թէ ա՟ծային նախախնամութ՟ը յայտներ էր իրեն վրայ մեծ ողորմութիւնը , զինքը թշնամիներուն ձեռքը ձգելով . որովհետեւ այս դիպուածն որ չըլլար , ո՞ւր պիտի տեսնէր Ռօպէնսօնը , ուրեմն կըսէր ես միշտ խաւար կռապաշտութեան մէջ պիտի մնայի , չպիտի ճանչնայի աս տէրս , ամենակարող բարի ստեղծողս ։ Անկէ ետքը Ռօպէնսօն կըջանար միշտ աղօթք ընել գերիին առջին . մինչև մէկ սքանչելի տեսարան մը եղաւ ջերմեռանդութեան . ո՞րպիսի ուրախութ՟բ և սիրով տիրոջը աղօթքին խօսքերը կըկրկնէր ։

Ու այս այսպէս երկուանալ անանկ երջանիկ վարք ունէին, որ բոլորովին մէկ սիրտ էին, և միայն մարմնով բաժնըված էին։ Իսկ անձրևային տրտում եղանակը անցաւ առանց ձանձրութ̄ մը իմանալու ։ Սկսաւ երկինքը բացվիլ․ հովերը դադրեցան և հողմաքեր ամպերը ցրվեցան ։ Ռօպէնսօն և գերին դուրս ելան օդին մէջ, գարնան քաղցր հոտն առին․ նաև ուժ առնելով շատ զօրացան․ ուստի՝ վազեցին ուրախանալով գացին իրենց ցանկալի գործքին ձեռք զարկին, որ անձրևէն առաջ որոշեր էին ։

Գերին իբր ճարտարապետ մը նաւին սկսաւ կրակով փորել ծառին կոճը․ անանկ դիւրին և քաջող կընէր, որ Ռօպէնսօն կըռունադատէր իր անձին տարտամութե̄ վրայ տրտնջալու, որ ամենևին մօքէն չէր անցած այս ճարտարութ̄իը․ սակայն մխիթարվելով այսպէս կըսէր ինքն-

իրեն․ Թէ որ միտքս ալ դար այս բանը, ի՞նչ օգուտ, որ կրակ չունենք։

Կրակին չինելը անանկ աղէկ առաջ կերթար օրէ օր, մինչև անկարելի կերևնայ պատմութիւնը․ վասն զի Ռոպէնսօնին անչափ տարիներով աշխատածը, գերիին օգնութիւնը կատարեցաւ երկու ամսըվան մէջ։ Ուստի ուրիշ բան չի մնաց ընելու, բայց եթէ առագաստ (ելքէն) մը որ գերին սկսաւ չինել․ և թիերն որ Ռոպէնսօն վրան առաւ չինելու։

Թէպէտ դիւրին բան չէր առագաստին չինելը, որ ո՛չ գործիք կար և ո՛չ բան կար, չգիտէր թէ ինչպէս պիտի գործէ՝ կտաւի պէս բան մը չինէ․ բայց ինչպէս վերջն ըսինք թէ ծառին կեղևը արուեստով մը կը հիւսէր, ու գործելով կտաւի պէս կը չինէր․ տեսեր էր, որ լեռան մարդիկ անանկ կը չինէին նաւերուն առագաստը․ ուստի այս կերպով

սկսաւ առագաստը շինել ։ Ռօ-
պէնսօնեան սկսաւ թիերը շինել ․
Երկուքն ալ կը ջանային շուտով
կատարել իրենց գործքը ։

Միայն այս նաւակը ցամաքն
էր գերանք վրայ կեցած ․ պէտք
էր որ ծովը տանէին ․ բայց իրենց
ուժը բաւական չէր ։ Մեծ դըժ-
ուարութիւն մնաց նաւը ջրին մօ-
տեցընել, որ դժբաղդութեան քա-
նի մը մղոն հեռու էր ծովէն ։
Հիմա պաշարուեցան մնացին թէ
ինչպէս ընեն ․ ոչ հրելով կրնայ-
ին տեղէն շարժել, և ոչ քաշե-
լով ․ նաւին ծանրութիւնը իրենց
կարողութենէն շատ վեր էր ։ Ռօ-
պէնսօն կը մտածէր որ լծակով
հրէ, ինչպէս որ երկրաշարժու-
թեան ատենը այն մեծ քարը
հրելով դուրս ձգեց բնակարա-
նէն ․ սակայն տեսաւ որ անանկ
դժուար կըլլար այս կերպով ը-
նելը, որ ամիսներ կուզէր ծո-
վուն մօտեցընել ։ Ուրիշ ճամ-
բայ մը յաջողութեան միտքն ինկաւ,

ւր փոխել տայ գերիին, նախ յանկարծ անձրեւ մը սկսաւ այնպէս սաստիկ՝ որ քանի այն կղզին եկած էր դիտելով տեսեր էր որ տարին երկու անգամ անանկ սաստիկ անձրեւ կուգայ հոն՝ միշտ գիշերահաւասարին ատենը[1]: Այս անձրեւային եղանակը հասարակօրէն երկու ամիս կըքշէր. այս միջոցին մէջ շարունակ անձրեւելով՝ անկարելի եղաւ որ գործքի ձեռք զարնեն: Նաեւ ասալ փորձեր էր որ խիստ վնասակար էր առողջութեան այս անձրեւին տակը դուրս ելլել թրջիլ. ուստի բռնադատեցան որ նաւը ձգեն եւ ուրիշ գործք մը հնարեն առանց դուրս ելլելու:

1 Գիշերահաւասար կըլլայ տարին երկու անգամ, մէյմը Մարտի 9 ին, մէյմ ալ սեպտեմբերի 10ին. երբոր արեգակը այն կենդանակերպներուն տակը կմտնէ, որ գիշեր ցորեկ հաւասար կըլլայ. վասն զի հաւասար ժամանակ կանցընէ արեւը թէ աշխարհքիս վրան եւ թէ տակը:

Ո՛րչափ մեծ երջանկութիւն էր Ռօպէնսօնին, որ այս տրտում անձրևոտ ձմեռնակին երկար գիշերները կրակ լոյս և ընկեր ունեցաւ, որ միատեղ կաշխատէր, և խօսակցութիւն ընելով սրտին նեղութիւնը կը փարատէր։ Նաև որ այս տրտմալի գիշերները մինակ կանցընէր անգործ և մութ տեղը, հիմա ընկերոջը հետ նըստած կրակին և լուսին քով կաշխատի ուրախութեամբ ամենևին ձանձրութիւն մը չունենալով։

Նեւան մարդիկ որչափ գիրին կերպով քանի մը կըշինէին, Ռօպէնսօն սորվեցաւ գերիէն. և շատ բան ալ ինքն անոր սորվեցուց, որ ամենևին միտքէն չէր անցած։ Եւ այսպէս երկուքն ալ իրենց ճանաչմունքը, և ուշիմութիւնը կատարելագործեցին փոխնիփոխը իրարու լոյս տալով շատ մանտրըմունտրը գործքեր շինեցին այս միջոցիս մէջ. որ եթէ մինակ ըլլային անկարելի էր որ

կարենայն մէկը չինել: Անա-
տենը ոչ միայն հասկըցան, այլև
յայտնի տեսան թէ որչափ օգ-
տակար մեծ բան է մարդկանց
ընկերութիւնը և միաբանական
կեանքը կենակցութը̃ բարեկա-
մական սիրով. և որչափ դառն
է բաժանումը՝ ամէն մէկը առ-
դին անդին ցրվելով գազանի
նման [1]:

Ուրբաթ գերին ծառի կե-
ղևներէն գիտէր հիւսել բարակ
ազնիւ փսիաթ (խսիր) որ կտաւի
նման պատուական հագուստ կըր-
նար: Ռոպինսոն ալ հետը գոր-
ծելով շատ նիւթ պատրաստե-
ցին հիւսելու. որ բաւական ե-
ղաւ երկուքին ալ հագուստ շի-
նելու: Ինչ մեծ հանգստութի

1 Բաժանումը և անմիաբանութիւնը մեծ
պատիժ տուաւ մարդուս աշտարակաշինութե
ատենը. բայց հիմա մարդիկ ատելութիւնը
պաշտպանելով աւելի կը յօժարին անմիաբան
ըլլալ և իրար ատել, քան թէ սիրով կե-
նակցիլ, որ է ընդդէմ բնութեան:

եղաւ Ռոպէնսոնին. երբոր այն կանչին կաշի լաթերը ձգեց՝ որ հարկադրուեր էր մինչև նոյն օրը հագնելու, ու գործած բարակ լաթ հագաւ։

Պետրոսին նաև ճարտարութիւն ունէր քօքօսին թելերէն ալ թել մանել, և ուրիշ ծառերէն ալ չուան շինել Ռոպէնսոնին շինածէն աղէկ։ Շատ դիւրին կերպով կը մանէր գիշերները. մինչ զի սանկ աշխատելով գիշերները իրենց խիստ կարճ կերենային. Թէ որ այս չըլլար՝ շատ ծանր պիտի գար իրենց։

Սանկ նստած աշխատանքի մէջ ըլլալով՝ Ռոպէնսոն ջանաց որ գերիին մտքին ծուռ և հեթանոսական խաւար խորհուրդները ցրուէ, ու անոնց տեղը կամաց կամաց բարի խորհուրդներ, և ճշմարտութեան սկզբունքներ հաստատէ՝ ինչպէս որ իրենն կըվայլէր. իսկ թէ ինչպիսի թանձր տգիտութեն և՝ զարհուրելի մո-

ըսաց . անտարակոյս կըփառաւո_
րէն , որ Թշնամիները զիրենք մե_
ռուցին կերան :

Ռօպէնսօն այս ՀեԹանոսա_
կան մոլորութիւներս որ լսեց ա_
կանջները գոցեց . անկէ ետև
պարըզապէս ետևէն եղաւ՝ որ
գերիին միտքը սրբելով բարի
խորհուրդներ տայ . և ստեղծո_
ղին ծանօթութիւնը տալով հան_
դերձեալ կեանքը սորվեցընէ :
Նաև հասկըցուց իրեն , Թէ ած
է գերագոյն եակ մըն է . գուրս .
ամենակարող , ամենիմաստ , և
ամենաբարի . որ ինչպէս ստեղ_
ծեր է , անանկ ալ կըկառավարէ
և կըպահէ ամէն բան . որ չունի
ամենևին սկիզբն , ամէն տեղ ներ_
կայ ըլլալով ամենուն միտքը և
խորհուրդը կըտեսնէ . ամէն խօսք
կըլսէ , և ամէն գործք կըգիտէ .
ամէն տեսակ բարիով լի է , և ա_
մէն չար կատէ : Թէ՛ հոս և Թէ
հանդերձեալը միայն զանոնք կը_
փառաւորէ երանութե̃ , որ կը_

քին գլխաւոր Ճշմարտութիւնը սորվեցաւ. ինչպէս որ վարպետը ջանաց իրեն սորվեցընել։

Մ՛հա անկէ ետև երանելի եղաւ գերին՝ որ իր տեղէն եկաւ այս կղզին ընկաւ ծառայութե սորվեցաւ. և այս մտածականը խորհելով միտք առաւ՝ թէ ածային նախախնամութիւնը յայտնէր էր իրեն վրայ մեծ ողորմութիւնը, զինքը թշնամիներուն ձեռքը ձգելով. որովհետև այս դիպուածն որ չըլլար, ուր պիտի տեսնէր Ռօպէնսօնը, ուրեմն կըսէր եւ միշտ խաւար կռապաշտութե մէջ պիտի մնայի, չպիտի Ճանչնայի աս տէրս, ամենակարող բարի ստեղծօղս։ Անկէ ետքը Ռօպէնսօն կըջանար միշտ աղօթք ընել գերիին առջին. մինչև մէկ սքանչելի տեսարան մը եղաւ ջերմեռանդութե. որպիսի ուրախութեամբ և սիրով տիրոջը աղօթքին խօսքերը կըկըրկնէր։

Իրաւ այս այսպէս երկուսնալ անանկ երջանիկ վարք ունէին, որ բոլորովին մէկ սիրտ էին, և միայն մարմնով բաժնըված էին։ Իսկ անձրևային տրտում եղանակը անցաւ առանց ձանձրութե̅ մը իմանալու ։ Սկսաւ երկինքը բացուիլ․ Հովերը դադրեցան և Հողմաբեր ամպերը ցրուեցան ։ Ռոպէնսօն և գերին դուրս ելան օդին մէջ, գարնան քաղցր հոտն առին․ նաև ուժ առնելով շատ զօրացան․ ուստի սկսեցին ուրախանալով գացին իրենց ցանկալի գործքերին ձեռք զարկին, որ անձրևէն առաջ որոշեր էին ։

Գերին իբր Ճարտարապետ մը նաւին սկսաւ կրակով փորել ծառին կոճը․ անանկ դիւրին և յաջող կընէր, որ Ռոպէնսօն կըբռնադատէր իր անձին տարտամութե̅ վրայ տրտնջալու, որ ամենևին մտքէն չէր անցած այս Ճարտարութի̅ը․ սակայն մխիթարվելով այսպէս կըսէր ինքն-

իլլեն․ Թէ որ միտքս ալ գար այս բանը, ի՞նչ օգուտ, որ կըրակ չունէի։

Կաւլին չինելը անանկ աղէկ առաջ կերթար օրէ օր, մինչև անկարելի կերևնայ պատմութիւնը․ վասն զի Բոդգէրասոնին անչափ տարիներով աշխատանքը, գերիին օգնութիւնը կատարեցաւ երկու ամսըվան մէջ։ Ուստի ուրիշ բան չի մնաց ընելու, բայց եթէ առագաստ (եէլքէն) մը որ գերին ակաւ չինել․ և Թինքին որ Բոդգէրասոն վրան առաւ չինելու։

Թէպէտ դիւրին բան չէր առագաստին չինելը, որ ո՛չ գործիք կար և ո՛չ բան կար, չիյտէր թէ ի՞նչպէս պիտի գործէ՝ կտաւի պէս բան մը չինէ․ բայց ինչպէս վերն ըսինք թէ ծառին կեղևը արուեստով մը կըհիւսէր, ու գործելով կտաւի պէս կըշինէր․ տեսեր էր, որ լեռան մարդիկ անանկ կըշինէին նաւերուն առագաստը․ ուստի այս կերպով

սկսաւ առագաստը շինել ։ Ռօ-պէնսոնալ սկսաւ թիերը շինել . Երկուքն ալ կըրցածնուն չափ շուտով կատարել իրենց գործքը ։

Ամէնչըն այս նաւակը ցամաքեն էր գետրանք վրայ կեցած . պէտք էր որ ծովը տանէին . բայց իրենց ուժը բաւական չէր ։ Մեծ դըժ-ւարութիւնը մնաց նաւը ջրին մօ-տեցընել , որ դժբաղդութեն քա-նի մը միլոն հեռու էր ծովէն ։ Հիմա պաշարվեցան մնացին թէ ինչպէս ընեն . ոչ հրելով կրնայ-ին տեղէն շարժել , և ոչ քաշե-լով . նաւին ծանրութիւնը իրենց կարողութենէն շատ վեր էր ։ Ռօ-պէնսոն կըմտածէր որ լծակով հրէ ; ինչպէս որ երկրաշարժու-թեան ատենը այս մեծ քարը հրելով դուրս ձգեց քարայրա-նէն . սակայն տեսաւ որ անանկ դժւար կըլլար այս կերպով ը-նելը , որ ամիսներ կուզէր ծո-վուն մօտեցընել ։ Ուրիշ ճամ-բայ մը յաջողութե՞ մտքին ընկաւ ,

որով եւրոպա բնականներըը ծանր բաները կրտանէին, որ է պատուատակ (պօճրուզատ)։ Ուստի կլոր հաստ գերաններ հաստա- տեցին տեղ տեղ. չուաններով նաւը կապեցին այն փայտին ու սկսան ուրիշ երկայն փայտով մը հաստ գերանը դարձընել. նայիս դիւրութեամբ սկսաւ դառ- նալ գործիքը, և անով նաւն ալ առաջ կուգար։ Ռօպէնսօն երբոր տեսաւ թէ նաւը առաջ- կըքալէ՝ ուրախութենէն չըյտեր ինչ ընէ, որ երկու օրէն ետև ծովին քով հասաւ. բայց այս ուրախութիւնը կրկնապատիկ ա- ւելի եղաւ՝ երբ նաւը ծովին վը- րայ երթալով, յայտնի եղաւ որ յաջող ճամբայ պիտի ընէ։

Ահա ամէն բան կատարեալ է. Հիմա մնաց որ կերակուրի պատրաստութիւն տեսնեն ու ճամ- բայ ելլեն. իրենց պէտք եղածին չափ պատրաստեցին, սակայն ուր պէտք էր երթալ չըյտէին.

Ուրբաթ գերին կըփափաքէր որ իր եղած կղզին երթան. Ռօպէնսօն կուզէր որ Ամերիգայի ցամաքն ելլեն. ուր կըյուսար թէ կամ սպանեօլ գտնէ, կամ ուրիշ եւրոպացի։

Գուերրին կղզին շատ հեռու չէր, մէկ քանի մղոն կըքաշէր. իսկ ցամաքը քառապատիկ աւելի հեռու էր. Եթէ չիտակ այս կղզին երթային, ցամաքէն աւելի կըհեռանային ու ճամբուն վտանգը կաւելընէին. Գերին նաւարկութեն արուեստին անտեղեակ ըլլալով հեռու ճամբայ ընել չէյտեր. միայն իր կղզին հասնիլ կրնար երթալ։ Ամենեւին չէյտէր թէ Ամերիգայի ցամաքն ի՞նչ ճամբայով երթալու է. Նմանապէս Ռօպէնսօն ալ նաւապետութիւն չգիտնալուն համար՝ անտեղեակ էր այս ճամբորդութիւնն ընելու։

Վերջապէս անստուգութիւնը առիթ տուաւ Ռօպէնսօնին, որ

երթայ աւելի քաղաքական մար-դիկ փնտռէ. բոլոր դժուարու-թիւնները և գերիին աղաչանքը մէկ դի ձգեց, ու որոշեց որ միւս օրը պատրաստի ճամբայ ելլել. ուստի յաջող հով մը եղածին պէս՝ առագաստը բանան, ու յանձնելով դէպ 'ի այն կողմն երթան, ուր գերին կարծիք ու-նէր թէ մօտ տեղ ցամաք կըգըտ-նըլլի: Բայց հոս երկան կըլլայ պատմել. յետագայ գլխուածին մէջ կըպատմենք[1]:

1 Հայրենեաց քաղցրութիւնը դուրս եր-թալով աղէկ կիմացուի. ինչպէս եղաւ Ուր-բաթին՝ որ բնական է. սակայն մարդու պէտք է որ ուր որ երթայ աղէկ անուն ձգե-դէ, և ուր որ ըլլայ՝ առաքինական վարքով ստեղծողին ձեռքին տակն ըլլայ. վասն զի ինչ օգուտ, երբոր մէկը յանդգնութեամբ ան-արգանք կըլլայ իր հայրենեացը. անանկ վարք պէտք է ունենալ որ պարծանք ըլ-լայ ամենուն:

## Ի. Գիւղանձ.

Ահա եկաւ ժամանակն որ Ռօպէնսոն թողու այսչափ տարւան բնակարանը, գերիին հետ միատեղ նաւը մտնէ երթայ յաջող հովով, որ սկսաւ անոյշ փըչել: Ահա այսպէս է մարդուս փոփոխական վիճակը, որ միակերպ չի կրնար մնալ. շատ մարդիկ իրարու հետ անմանկասատիկ սիրով կըկապվին, որ կարծես թէ յաւիտեան չպիտի զատվին, կընայիս քիչ ժամանակին մէջ պզտի բանով մը անմանկ ատելի կըլլան, որ մէկմէկու անունն չեն ուզեր տալ:

Շատ մարդիկ տեղի մը վրայ անմանկ սէր կըձգեն, որ կերեւնայ թէ մինչեւ վերջը այնպէս պիտի մնան. բայց քիչմը կանցնի բոլորովին կըփոխվին: Շատ անգամ ծանր նեղութեն մէջ ըլլալով անանկ կըյուսահատին, որ կար-

ծեն թէ յաւիտեան այն վիշտը պիտի քաշէն, նայիս օրերը կանցնի, այն նեղութիւնն ալ կըմոռացըվի. ինչպէս որ եղաւ Ռօպէնսօնին, որ ամէն պատրաստութիւնը տեսնելէն ետև՝ երբոր պիտի ձըրգէր թնակարանը երթար, եղաւ թնակարանին վրայ կեցաւ, սկըսաւ դիտելով չորս դին նայիլ և մտածելով տրտմիլ: Այս միջոցիս մէջ միտքէն ընկան բոլոր քաշած թանները այն մինակութեան մէջ, և Աստուածային նախախնամութիւններին՝ որ տեսած էր. սկըսաւ խորունկ մտածել, թէ ինչ զարմանալի կերպով Աստուած զինքը հոն ձգեց, ու ամենևին ողորմութիւնը չի հեռացուց իրմէն: Այս մտածականը անանկ շարժեց սիրտն, որ ուրախալի արտասունք մը աչքէն գետի պէս կըվազէր: Աչքը վերցուց դէպ 'ի երկինքն ու բազկատարած ջերմեռանդ աղօթքով՝ աղաղակեց առ ամենակարող տէրը:

Ո՛վ Հայր երկնաւոր, ա՟ծ սրտի իմոյ. ի՞նչպէս կրնամ շնորհակալ ըլլալ անչափ բարերարութեանցդ, որ մինչև հիմա ինձի ըրիր: Անկարելի է որ խօսքով կարենամ յայտնել սրտիս բորբոքը. կըթողում չեմ կրնար ուրիշներուն յայտնել իղձս. միայն բերանս հողին տալով առաջդ կիյնիմ հողերուն մէջ խառնըվելով կոչընչանամ առջիդ: Բայց որովհետև քեզի ամէն բան յայտնի է, ամենատես աչքդ թո՛ղ կարդա՛ սրտիս վրայ գրած անպատմելի շնորհացդ երախտագիտութիւնը: Ահա այն սիրտն է որ դուն ստեղծեցիր միայն քեզ սիրելու և քեզի փափաքելու համար: Այս սիրտը շատ անգամ կըվշտանայ, շատ անգամ ալ կըմխիթարվի քեզմով: Ո՛վ ստեղծող՝ ահա այս սիրտը միայն քեզի կընծայեմ անչափ բարերարութեանցդ համար. ընդունէ՛ ամբողջ և կատա-

ընծայագործէ։ Ո՞վ երկնաւոր հայր, ահա զիս ամենակալ թեւերուդ տակը. ուր տեղն որ ես զիս վըստահութ՟ք յանձներ եմ, և կարգադրէ՛ ինծի՝ ինչ որ հայրական կամացդ հաճոյ է։

Ես ո՛չ երբէք առաքինութ՟ն ճամբայէն դուրս կելլեմ, որուն մէջ դրաւ զիս քու բարութ՟իդ. և ո՛չ բնաւ առաքինութ՟է կըթուլնամ։ Ահա բոլորովին քեզ եմ ապաւինեալ, դուն զիս կառավարէ՛ բարեսէր իմաստութ՟ըդ. հնազանդ եմ կամացդ, ուր որ ինծի առաջնորդես։ Միամիտ քեզ վստահանալով աներկիւղ կըմտնեմ նորէն պէսպէս վըտանգներու մէջ, միայն թէ աներեւոյթ պաշտպանութ՟իդ ինծի հետ ըլլայ։ Գթա՛ իմ անմահ հոգւոյս, և մխիթարէ՛ որ զօրանայ փորձութ՟եց մէջ, որ անպակաս են. նաև պահէ՛ սիրտս տըկարութ՟է անհամբերութ՟է և ապերախտութ՟է ո՛վ երանական և

յաւիտենական քաղցրութի̄ հոգ-
ւոյս , արարի՛չ իմ պաշտպան իմ
և ամենայն ինչ ա̄ծ ։

Սոպէնսօնին այս ջերմեռանդ-
խոկումը , անանկ ձմլեց սիրտն՝
որ երեսը գետինը քսելով միայն
կուլար . հուսկ յետոյ ծածուկ
մխիթարութի̄ մը եկաւ վերէն
սիրտը զօրացուց , վեր ելաւ նո-
րէն իր տեղերուն վրան նայե-
ցաւ . վասն զի նոյն միջոցը խիստ
քաղցր եղան իրեն , որ պիտի ձը-
գեր երթար առանց դառնալու .
խեղճին աչքերը թաց և տրտում
անդադար տնկած ծառերուն
վրայ կընայէր ողորմագին , որ ի-
րեն այնչափ օգտակար էին . դառ-
նար կընայէր ըրած բաներուն
վրայ , որ ձեռքին աշխատանքով
և ճակտին քրտինքովը ըրեր էր ։

Այս տրտմութե̄ մէջ ամէն
տեսած բանը իրեն խիստ սիրելի
կերևնար , որոնցմէ պիտի զատ-
վէր . ինչ եղաւ սիրտը երբ վար
ինջաւ տեսաւ որ սիրական լա-

մանները խոտ կուտէին ։ Թէ որ մէկէն աչքը անդին չի դարձը֊ներ իր սիրական կենդանինե֊րէն, միտքը կըփոխվէր չէր եր֊թար ․ Վերջապէս իր քաջութ̃ը յաղթեց այս կսկիծներուն ու զօրացաւ ․ Թևերը բացաւ տե֊սած բաներուն վրայ որպէս թէ կուզէր ամէն բան գրկել ․ Մնա՛ք բարով կանչեց բարձր ձայնով ․ Մնա՛ք բարով, որ վկա՛յ էք իմ քա֊շած նեղութ̃եցս ։ Վերջին ան֊գամ ալ մնա՛ք բարով ըսաց՝ լա֊լով սկսաւ երթալ, ու աչքը նո֊րէն երկինքը դարձուց, հեռա֊ցաւ անկէ ․ բայց միշտ դէպ ՚ի հօն կընայէր ․ երթալու ատենը նը տեսաւ իր հաւատարիմ սի֊րական փօլ թութակը որ ծառէ ծառ թռչելով ետևէն կուգար ․ Սիրտը չդիմացաւ, թևը երկն֊ցուց ձեռք ըրաւ անունը տալով կանչեց, որ հետը տանի ․ Նայիս նոյն կէտին թռչունը հօն հա֊սաւ տիրոջը ձեռքին վրայ նըս֊

տաւ. և շուտ մը թևերն վրայէն քալելով ելաւ թիկունքին վրայ նստաւ: Ռոպէնսօն գնաց նաւըն եղած տեղը հասաւ, ուր Ուրբաթգերին ամէն բան պատրաստած կըսպասէր իրեն անհամբերութ̅:

Ուստի առանց ուշանալու նաւը մտան Նոյեմբերի 30ին. իններորդ տարին էր որ Ռոպէնսօն այն անմարդաբնակ կղզին ելաւ: Առագաստը բացին՝ Ճամբայ ելան. հովը պաղ և յաջող, ու երկինքը պարզ էր. բայց հազիւ թէ քանի մը մղոն հեռացան նայիս ծովուն մէջ ապառաժի մը հանդիպեցան, որ ջրին մէջէն շղթայի պէս ետևէ ետև բուսած էին. որ կղզիին մէկ սարէն սկսած մինչև ինը մղոն կերթար ծովուն մէջ: Նայեցան որ վտանգաւոր էր ասոնց մէջէն անցնիլ, հարկադրեցան նաւը դարձընել ուրիշ կողմը. որպէս զի պտըտելով կարենան անցնիլ այս ժայռերէն:

Այս վտանգաւոր տեղերէն անցնելուն պէս՝ սկսաւ հովը սաստկանալ, և նաւը անանկ արագ կերթար, որպէս թէ շատ առագաստներ բացած ըլլար. մինչև վախնալով առագաստը ցածցուցին, վասն զի կըվախնային՝ որ չըլլայ թէ սաստիկ հովը զիրենք յափշտակէ. բայց այս զգուշութիւնը օգուտ չըրաւ. որովհետև նաւը նոյն արագութեն սաստիկ կըվազէր ալիքներուն վրայէն. ուստի հասկըցան որ հոսանքի (ախընտըի) մէջ էին [1]։

Ազատ Ռոպէնսոն անխոհեմութե և յանդգնութե զինքը

1 Ծովին տակը խորտուբորտ ըլլալուն շատ լեռներ կըգտովին. յայտնի է թէ ջուրը բնապէս կըվազէ դէպ 'ի ցած տեղը լեռներուն մէջ պտըտելով. ասկէ կըլլայ հոսանք և պտոյտք ծովու, որուն մէջ շատ անգամ վտանգ կըպատահի. ինչպէս եղաւ Ռոպէնսոնին՝ որ այսպիսի հոսանքի մէջ ըլլալով չգիտէր թէ ուր կերթայ. բայց այս հոսանքը տեւլի մակընթացութէ պատճառած էր. վասն զի ջուրը աճելով դէպ 'ի այն կողմը գետոյպէս կըվազէր։

փորձանքի մէջ չի ձգեց, այլ ա͞ծային թոյլտուութեամբ այս վտանգն ալ գլխուն եկաւ. կը-մխիթարուէր՝ թէ ուրեմն այ վը-ճիռն է որ ես ամէն տեղ բոլո-րովին իրեն յանձնեմ զիս ։

Շատ աշխատեցան որ թիով կարենան ելլել այն ջրերէն բայց ճար չեղաւ. վասն զի ջրին բռնու-թիւնը զիրենք յափշտակեց կայ-ծակի պէս կըտանէր. անանկ հե-ռացան, որ իրենց կղզին կորսըն-ցուցին ։ Կերեւնար թէ անկարե-լի էր այս վտանգէն ազատիլ. ո-րովհետեւ կէս ժամին մէջ այն-չափ գացին որ բարձր լեռան գը-լուխն ալ չի կրցան տեսնել ։ Սա-տի եթէ այս հոսանքը դադրէր, չէին կրնար դառնալ երթալ ի-րենց կղզին. վասն զի այնչափ հեռուն ըլլալով կողմնացոյց (փուսուլա) չունէին, որ նաւը շտկելով ճամբան գտնէին [1] ։

1 Կողմնացոյց գործիքին մէջ գրած է 3ա

Ռօպէնսօն կողմնացոյց չունենալով անկարելի էր, որ կարենար գտնել իր կղզին, երբ չէր երևնար: Ո՞րչափ մեծ վախու մէջ էին խեղճերը. կընայէին որ ահագին ովկիանոսին մէջ ձոլթ ցամաք չիկայ, ուտելու բաներնին խիստ քիչ. քան զայս յուսահատելու և սոսկալի բան ի՞նչ կրնար ըլլալ: Անատենը յայտնի եղաւ որ ճշմարիտ բարեպաշտութիւնն ու մաքուր խիղճմտանք, եղաւ Ռոպէնսօնին մէկ անգին գանձ մը այն փորձանքին մէջին որ այն դառն միջոցին մէջ առանց յուսահատութե̃ Ա̃յ ապաւինեցաւ. թէ որ ասանկ չըլլար ի՞նչպէս կրնար համբերել այսպիսի ծանր փորձանաց. շատոնց

հովերը և կիսահովերը, նաև աշխարհքին չորս կողմը. մէջ տեղը կայ ասեղ մը՝ վրան դրած շրջական մագնիսը, որ միշտ դէպ 'ի հիւսիս կընայի. ուստի նաւը որ կողմը դառնայ կմ հովը որ կեռէն փչէ՝ կըյայտնէ. ասոր գործածութիւնը ժգերորդ դարուն սկըսաւ: Տե՛ս Ճեմ. 138:

յուսահատելով զինքն սպաններ էր, որ շուտով ազատի սարսափելի վտանգէն՝ և անօթի մեռնելէն ։

Իսկ գերին տիրոջմէն աւելի փորձ առաքինի չըլլալուն համար, ընկաւ վերջին յուսահատութեան մէջ. մինչև չի կրցաւ այլ աշխատիլ՝ բացարձակապէս սիրտը կոտրելով ձգեց թիերն ու սկսաւ խեղճութեամբ Ռօպէնսօնին երեսը նայել յուսահատ կերպով. և անոր հասկըցուց թէ իյնինք ծովս որ մէկէն մեռնինք յանկարծակի, ու այս վշտալի դառնութենէ ազատինք, որ մեզ կըսպառնայ ։

Ռօպէնսօն մէկէն սաստեց խեղճ ընելով, և ուզեց քաջալերել սիրտը. ետքը անոյշ խօսքով երեսը զարկաւ անոր տկարութիւն՝ որ ա̃ծային նախախնամութենէն յոյսը կտրեր էր, որ ամէն բան լաւ կըկարգադրէ ։ Նաև քիչ խօսքով միտքը ձգեց բոլոր

16 *

մխիթարական խօսքերն որ ըսած էր իրեն առաջուց։ Չէ՞ որ՝ կըսէր աշխարհքիս վրայ եղած ամէն բաները նաև մենք ալ ա̃յ ձեռքին մէջն ենք։ Ինքը չէ՞ ովկիանոս ծովին ստեղծօղը։ Մի թէ չի՞ կրնար հիմա հրամայել այս ալիքներուն, որուն մէջ չարաչար կըվտանգինք, և մեզ մէկ ապահով տեղ մը ձգել։ Դուն կըմտածես ծովը խղդըվիլ, որ ազատիս անդառնալի վճռէն՝ որ քու վրադ դըրված է։ Խելքդ գլուխդ ժողվէ անմիտ պատանի, գիտցիր որ հոգիդ անմահ պիտի մնայ յաւիտեանս յաւիտենից անսահման իշխանութ̃ե տակը երկնաւորին. և չի կրնար հասնիլ երջանկութեան ասանկ անհնազանդ ըլլալով անոր իշխանութ̃եը. նաև դէմ դնելով բընական կարգաց՝ կուզես խորտակել բռնութեամբ այն կապերը, որով հոգին մարմնին հետ կապած է։

Այս փրկարար խրատներս անանկ դպան Ուրբաթ գերին սրտին՝ որ սկսաւ ամընչնալ իր տկարութե̄ը վրայ. մէկէն երկուսն ալ թիերը ձեռք առին սկսան անդադար քաշել. թէպէտ ամենևին յոյս մը չէր կար, թէ կարենան ազատիլ։ Ռոպէնսօն կըսէր, մենք որչափ որ հոգինիս վրանիս է՝ ջանանք մեր պարտքն ընել մեզ փրկելու համար. սակայն եթէ ճարերնիս հատնի, թող մեռնինք միխթարվելով թէ երկնաւորին կամքը այս է. նայէ՛ սիրելի եղբայր՝ անոր կամքն է ամենաբարի և ամենագէտ, անանկ՝ որ մեզի պէս անմիտ խեղճերուն խելքն ու միտքը չի հասնիր։

Իսկ հոսանքին արագութե̄ը միակերպ ըլլալով շարունակ յափըշտակէր կըտանէր նաւը, այնչափ որ առաջ միայն բարձր տեղերը և լեռներուն ծայրերը կերևնային, անոնք ալ կորան. ուա

տի ալ յոյս չի մնաց ազատելու։ Բայց տակայն երբոր մարդկային հնարքը ճարը կըհատնի, ու անբաղդներուն կորուստը կըմօտենայ, անատենը կըհասնի ամենակարողին ձեռքն, որ բոլոր աշխարհք կըկառավարէ. և մարդն որ պիտի այն կէտին կորսըվէր, մէկէն կըփրկի անանկ զարմանալի եղանակով, որ ամենևին մտքէն ալ չէր անցած. ինչպէս որ այս դիպւածիս մէջ յայտնի երևցաւ։

Ռոպէնսոն բոլորովին յուսահատած էր՝ թէ պիտի կարենայ ազատիլ մօտակայ մահուանէ. բայց չարաչար աշխատելով անանկ հոգնեցաւ որ հարկադրեցաւ ձգել թիերը. նայիս մէկէն տեսաւ որ հոսանքին վազելը դադրեցաւ, վասն զի նաւակը այնչափ արագ չէր երթար և ջուրը առաջվան պէս խառնիխուռն չէր։ Նաև դիտեց՝ որ ծովուն երեսը այս հոսանքին ջուրը

Երկուս բաժնուած էր անհաւա-
սար․ մեծ մասը արագ կըվազեր
դէպ ՚ի հիւսիս, և մէկալը այն-
չափ արագ չէր, որ դէպ ՚ի հա-
րաւ կըխոտորէր, որուն մէջ
մտած էր նաւը։

Այս բանս որ տեսաւ զըւար-
ճանալով կանչեց գերիին քաջա-
լերէ՛ ուրախ եղիր, ա̃ծ կուզէ որ
մենք չի մեռնինք․ նաև շուտ մը
անոր հասկըցուց թէ իր յոյսը
ն̃յ է հաստատեր․ անատենը եր-
կուսը միատեղ ուրախութ̃ք ձեռք
առին թիերը կըքաշէին, որ հոգ-
նելէն ձգեր էին։

Զօրանալով սիրտ առին
քաղցր յուսով, որ մեռնելէն
պահվեցան․ Ետքի ձիգը թափե-
լով ելան հոսանքին մէջէն, և
զըւարճութ̃ք հասկըցան որ քա-
շած նեղութ̃ինին, և ջանքը պա-
րապ չեղաւ ետքը եկաւ։ Ռո-
պէնսօն՝ որ սորված էր ամէն
բան խորունկ քննելով դիտել
և ուշադիր ըլլալ, նայեցաւ՝ որ

հովը վրայ իրենց յաջող ծառայ-
ել. բացաւ առագաստը հովին
տուաւ, ու երկու մանր առագաստ-
ներն ալ բացաւ, որ շուտով կա-
րենայ ելլել այն տեղերէն ու
մտնել խաղաղ ծովուն մէջ:

Գերիին ուրախութենէն չիտէր
թէ ինչ ընէ. Նայիս ցաթկեց
փաթթըվեցաւ տիրոջը. իսկ
տէրը աղաչեց, չափաւորէ ուրա-
խութիը այն միջոցին մէջ, մինչև
բոլորովին ազատին անկէ. վասն
զի շատ աշխատանքի կարօտ էին,
որ բոլորովին ազատ ըլլան վտան-
գէն ու դառնան իրենց կղզին:
Վերջապէս ելան այն գէշ ջրե-
րուն մէջէն մտան խաղաղ ծովը.
սակայն իրենց կղզին անանկ հե-
ռացաւ որ հազիւ թէ սև կէտի
նման հորիզոնին ձոթը կերև-
նար: Որոնք անդադար թի քա-
շելով, և յաջող հովը գործա-
ծելով առաջ կերթային, որ դէպ
'ի արևելեան կողմը կղզիին կը-
տանէր նաւը յաջողութ՟. ուր

որ շտկեր էին. նայիս մէկէն տե-
սան կղզին քանի մը լեռները։
Երթանք սիրելի կըսէր Ռօպէն-
սօն. որ նաւին առաջընստեր էր,
կռնակին կողմն էր կղզին. եր-
թանք բարեկամ, ահա մեր քա-
շած նեղութեանց վերջ եղաւ։ Աս-
կէ ետեւ մեզի չի վայլեր տեղ եր-
թալ. դառնանք մեր բնակարա-
նը նստինք։ Այս խօսքս չի
լմնցուցած, նայիս յանկարծ,
նաւը անանկ սարսեցաւ որ թի-
երը ձեռքերէն ելան, ու իրենք
ալ ընկան նաւուն գոգը. մէկէն
ալիքները նաւուն մէջ գալով
ջուրը ծածկեց զիրենք, մինչեւ
մնացին ողորմելիները անշարժ.
որ ինչ կերպ ըլլալը հետեւեալ
դիպուածով կիմացուի[1]։

1 Ահա Ռօպէնսօնին ածպաշտութեան յոյսը
այս վտանգէս ալ զիրենք ազատեց. որ ոչ
երբէք ամընչցուցեր էր զինքը. վասն զի թէ
հաստատ յոյսը չի կորսընցընէ մարդը, որ-
չափ մեծ վտանգի մէջ իյնի՝ թէյ ապաւինե-

## ԻԱ. Դիպուած.

Ռօպէնսօն առջի վտանգէն հազիւ ազատեր էր, նորէն ընկաւ ուրիշ վտանգի մէջ, որ առաջինէն շատ ծանր էր. վասն զի նաւակը մէկէնիմէկ ցամաքը նստաւ մնաց անշարժ ալիքները մէջը կը լեցվէին. եթէ իրաւ քարի վրայ հեծած ըլլար, անտարակոյս կը կորսըվէին: Ռօպէնսօն շուտ մը թիովը փորձեց նայեցաւ, որ ջրին բարձրութի̃ւը երկու ոտքէն աւելի չէր. ուստի յօժարութի̃ւ ցաթկեց ծովուն մէջ: Ետեւէն ալ գերին ջուրը մտաւ. ու իրարու սիրտ տալով կընայէին թէ ի՞նչ պիտի ըլլայ. Ետքը տեսան՝ որ նաւը չէ թէ քարի վրայ էր, հապա աւազի վրայ խրած էր.

լով չի շփոթիր թերահաւատութի̃. ուստի մեծ մխիթարութի̃ն է վշտացելոց Ռօպէնսօնին այս դիպուածը, որուն նմանելով պէտք է ապաւինիլ ա̃յ ամէն նեղութեանց մէջ:

երկուքն ալ իրենց ուժը միացը-
նելով կըհրէին դէպ 'ի ջրին խո-
րունկ դին, որ հանեն անկէ.
հուսկ յետոյ աշխատելով նաւը
վտանգէն ազատեցին յաջողութ̃ ։
Նաւուն մէջի ջուրը պարպեցին,
որ լեցուն ըլլալով շատ աշխատե-
ցան մինչև որ թիով և ափոճներին
ջուրը դուրս թափեցին ։ Ետքէն
որոշեցին որ աւելի զգուշութ̃
երթալու համար՝ միայն թի քա-
շեն առանց առագաստի, որպէս
զի ազատութ̃ կարենան նաւը
շտկել ուզածներնուն պէս ։ Նա-
ւը դարձուցին դէպ 'ի ցամաք
լեզուն՝ որ քովէն անցնին, յու-
սալով թէ շուտով կըլմըննայ,
սակայն 4 ժամ գացին չի կըցան
վախճանին հասնիլ, որ շատ եր-
կընցած էր հիւսիսիէն հարաւ ։ Ռա-
պէնսօն տեսաւ որոշեց որ 9 տա-
րի առաջ հոն այն սոսկալի ալէ-
կոծութ̃իր քաշեր էր և հոն ծոփն
էր ընկած, և նոյն աւազն էր որ
առջի անգամ նաւը խրեցաւ ա-

## ԻԱ. Դիպուած.

Ռոպէնսօն առջի վտանգէն հազիւ ազատեր էր, նորէն ընկաւ ուրիշ վտանգի մէջ, որ առաջինէն շատ ծանր էր. վասն զի նաւակը մէկէնիմէկ ցամաքը նստաւ մնաց անշարժ ալիքները մէջը կը լեցվէին. եթէ իրաւ քարի վրայ հեծած ըլլար, անտարակոյս կը կորսըվէին: Ռոպէնսօն շուտ մը թիովը փորձեց նայեցաւ, որ ջրին բարձրութիւնը երկու ոտքէն աւելի չէր. ուստի յօժարութեամբ ցաթկեց ծովուն մէջ: Ետեւէն ալ գերին ջուրը մտաւ. ու իրարու սիրտ տալով կընայէին թէ ի՛նչ պիտի ըլլայ. ետքը տեսան՝ որ նաւը չէ թէ քարի վրայ էր, հապա աւազի վրայ խրած էր.

լով չէր շփոթիր թերահաւատութեամբ. ուստի մեծ մխիթարութիւն է վշտացելոց Ռոպէնսօնին այս դիպուածը, որուն նմանելով պէտք է ապաւինիլ Աստուծոյ ամէն նեղութեանց մէջ:

Երկուքն ալ իրենց ուժը միացը-
նելով կը հրէին դէպ 'ի ջրին խո-
րունկ դին, որ հանեն անկէ․
հուսկ յետոյ աշխատելով Նաւը
վտանգէն ազատեցին յաջողութ՟։
Նաւուն մէջի ջուրը պարպեցին,
որ լեցուն ըլլալով շատ աշխատե-
ցան մինչև որ թիով և ափոճներին
ջուրը դուրս թափեցին։ Ետքէն
որոշեցին որ աւելի զգուշութ՟
երթալու համար՝ միայն թի քա-
շեն առանց առագաստի, որպէս
զի ազատութ՟ կարենան Նաւը
շտկել ուզածներնուն պէս։ Նա-
ւը դարձուցին դէպ 'ի ցամաք
լեզուն՝ որ քովէն անցնին, յու-
սալով թէ շուտով կըլմըննայ,
սակայն 4 ժամ գացին չի կըցան
վախճանին հասնիլ, որ շատ եր-
կընցած էր հիւսիսիէն հարաւ։ Մա-
պէնսօն տեսաւ որոշեց որ 9 տա-
րի առաջ հոն այն սոսկալի ալե-
կոծութիր քաշեր էր և հոն ծովն
էր ընկած, և նոյն աւազն էր որ
առջի անգամ Նաւը խրեցաւ ա-

լէկոծութի։ Արդ՝ որովհետև Ռոպէնսոնին գտնըված տեղը հանդարտ էր ծովը, հանգիստ կրնար առաջ երթալ. ուստի թի քաշելով ջանացին, որ կղզին հասնին, որ կերևնար թէ շատ հեռուն չէ։ Հուսկ յետոյ հասաւ նաւը Ռոպէնսոնին կղզին, արեգակը ծագեր էր լեռներուն ծայրը. ելան ցամաքը հանգչեցան, թէպէտ անհնարին հոգնած էին. բայց անանկ սոսկալի վտանգէն ազատելնուն համար՝ շնորհակալ ըլլալով կուրախանային։ Բոլոր այն օրը երկուան ալ բան չէին կերած նաւուն մէջ, մինչև որ ցամաքն ելան. անոր համար իրենց բնակարանը չի գացած նստեցան հետերնին առած պաշարը կերան։ Կերակուրէն ետև տարին նաւը ծոցի կամ (խոյի) մը մէջ կապեցին, ու նաւուն մէջ դրած բաները առին բնակարանը գացին։

Ռոպէնսոն ու գերին պառ-

կեցան, բայց գերին մէկէն խո-
րունկ քուն մտաւ, իսկ Ռօպէն-
սօն ջերմեռանդ սրտով շնորհա-
կալ կըլլար Այ այս նոր պարգեւացը
վրայ, որ ըրաւ իրենց. ետքը ինքն
ալ պառկեցաւ քնացաւ ։

Միւս օրը նախաճաշիկն ընե-
լու ատենը ընկերոջն ըսաց, թէ
պատրաստ եղիր որ միատեղ նո-
րէն ճամբայ ելլենք երկրորդ
փորձի՝ ալ ընենք ։ Ած չընէ,
ըսաց գերին ։ Կրկնեց Ռօպէնսօն
թէ ուրեմն դուն միտքդ դրերես
որ ինծի հետ միատեղ կեանքդ
անցընես այս կղզիին մէջ, որ
տեղ մը չերթաս ։ Հրամերես ը-
սաւ. միայն թէ հայրս հօս ըլլար ։
Հայր ունի՞ս որ ըսաւ ։ Կրնայ ըլ-
լալ որ ըսաց․ ես բռնըվելէս ետեւ
մեռած ըլլայ ։

Այս միջոցին մէջ Ուրբաթ
գերիին սիրտն ելաւ, անանկ
կսկըծաց որ կերակուրը ձեռքէն
ձգեց, ու սկսաւ աղեկուրի պէս
արտասունք թափել սաստիկ ալ-

լով։ Ռօպէնսօն չի կրցաւ ինքը զինքը բռնել ծնօղքը միտքը գալով․ ուստի երկուքը միատեղ սրտերնին ցաւելով իրենց ծնողացը վրայ՝ լացին երկան ատեն առանց խօսելու։ Ետքը Ռօպէնսօն ըսաց․ մի՛ լար սիրելի՛ Ուրբաթ, քու հայրդ պէտք է որ ողջ ըլլայ, շուտով կերթանք կըգտնենք ու հոս կըբերենք։

Ո՛րչափ մեծ եղաւ գերիին ուրախութիւնը այս բանս որ լսեց, խելքը գլխէն գնաց, չի կրցաւ իր աղաղակը բռնել, զանազան շարժմունքներով Ռօպէնսօնին ոտքը փաթթըվեցաւ, և չուզեց թող տալ․ նաև սրտին հառաչանքը թող չէր իտար՝ որ բան մը խօսի։

Ի՛նչ զարմանալի բան էր որդիական սէրը այս վայրենի մարդուս, որ հօրմէն ոչ կրթութիւն մը առած էր, և ոչ օգտակար բան մը սորված էր․ միայն իրեն ծնելուն պատճառն էր հայրը

անանկ ողորմելի վիճակի մէջ . սակայն բնութիւը իրեն սորվեցուցեր էր , որ ա՛յմէ ետև ծնողքը սիրէ , անոր համար այսչափ կողքար ։ Հապա ո՛րչափ մեծ ամօթ է մեր մանկանց , որ այսչափ իրենց ծնողաց բարիքը տեսեր են , այսչափ կրթուի առեր են , որ վայրենի մարդումը չափ ծնողացը վրայ գութ չունին ։

Իրա՛ւ որ ա՛ծ ամէն մարդու սրտին վրայ գրեր է սէր և երախտագիտութիւն ունենալ ծնողաց վրայ . ո՛հ քանի սոսկալի հրէշ է՝ թէ որ ասանկ քաղաքական մարդկանց մէջ այսպիսի տմարդութի ըլլայ , որ ծնողքնին չեն պատուեր . և սոսկ այն բնական օրէնքը սրտին մէջէն կաւրեն , ամենևին գութ մը չունենալով ծնողաց վրան . մանաւանդ թէ վիշտ և նեղութի տալով անոնց ։ Արդարև ասանկ հրէշաւոր գազաններուն քովէն պէտք է փախչիլ . վասն զի այս բանս ժան-

տախտ է ընկերութեան, և մեծ
մահացու մեղք. անանկ որ
շատ չի ուշացըներ, շուտով
ա̃յ ահեղ պատիժը կըթափէ
գլխուն:

Երբոր գերիին ուրախական
այլայլութ̃ը քիչ մը անցաւ:
Ռօպէնսօն հարցուց թէ կրնա՞ս
նաւը մինչև ձեր եղած կղզին
տանել. ուզեց ապահով ըլլալ,
որ երթալու ատենը մէկ վտանգ
մը չի հանդիպի, ինչպէս առաջ
պատահեցաւ: Ուրբաթ գերին
հաստատեց, թէ այնչափ լաւ
գիտեմ այս ճամբան որ վստա-
հութ̃բ գիշերն ալ կրնամ եր-
թալ. վասն զի շատ անգամ ե-
կեր գացեր եմ կըսէր այս կըղ-
զին իմ քաղաքացիներուս հետ՝
տօնախըմբութ̃ի կատարելու մեր
յաղթութ̃ը համար, որ շատ
անգամ պատահած է:

Հարցուց Ռօպէնսօն թէ ու-
րե՞մն դուն ալ ուրիշ վայրենի
մարդկանց պէս կընէիր, որոնք

Թշնամիները բռնեն կուտեն ։ Պատասխանեց գերին, թէ ասոր տարակոյս չի կայ ։ Դուն ալ քու բաժինդ կառնէիր ըսաց. Հրամերես ըսաւ, բայց վա՜յ ինձ, չիստէի թէ մեղք է ։ Հարցուց թէ այս կղզիին ո՞ր կողմը կելլէիք հասարակօրէն ։ Մենք միշտ հարաւային կողմը կելլէինք՝ ըսաց. վասն զի այն տեղը ամենուն մօտ էր մեր տեղէն. ուսկից որ կուգայինք. Նաև շատ քօքօյի ծառ կը գտնէինք հոն ։

Ռոպէնսօն զարմանալով իմացաւ ա͞յ ողորմութիւնը. որուն միշտ պարտական էր շնորհակալ ըլլալ, և փառաբանել արարիչն՝ որ զինքը հիւսիսային կողմը բերեր ձգեր էր. որովհետև թէ որ հարաւային դին եղած ըլլար, շուտով կերակուր կըլլար վայրենի մարդկանց ։ Անատենը Ռոպէնսօն խօսք տուաւ գերիին թէ ետքէն կերթանք հայրդ փնտռենք կը գտնենք ։ Նաև անոր հասկըցուց

որ մէկէն այս բանը չեմ կրնար ընել. վասն զի այս եղանակս մասնաւորապէս պարտէզները փորելու և բան տնկելու ատեն է. ուստի ժամանակ չունէք ձգել անկէ հեռանալ։

Ապա երկուքը միատեղ սկսան աշխատիլ գետինը փորել մէկըզմէկէ աւելի ջանալով։ Իսկ պարապ ատենը կաշխատէին որ գործիքնին աւելի կատարելագործեն։ Ռօպէնսօնին համբերութիւն ու ճարտարմտութիւնը միակերպ զարմանալի ըլլալով, գիւտ հնարեց ու երկրագործի գործիք մը շինեց, թէպէտև ուրիշ բան չունէր, բայց եթէ սուր քար մը ունէր, որով կըծակէր այս գործիքը՝ ակռաներ անցընելու համար. այս գործիքը օգտակար համարեց, որ ժամանակով կրնար իրենց պէտք ըլլալ։ Գերին ալ իր կողմանէ սուր քարով մը շինեց երկու բրիչ, անանկ կարծր փայտէ՝ որ եր

կաթի տեղ կըբռնէր ¹ ։

Ռոպէնսոնն ոչ միայն կըհոգար իրեն պէտք եղած բաները, այլեւ կըմտածէր որ իր բնակարանը քիչ քիչ զարդարէ ։ Այսոր նման միշտ աշխարհքին մէջի բաները ա-ռաջ եկան ու արուեստները հնա-րեցին ։ Այսպէս աշխարհքին մարդիկ պարապաւորեցան ուրիշ բան չի մտածել, բայց եթէ ա-նանկ միջոցներ գտնել, որով կարենան աղէկ ապրիլ ապահո-վութիւն. չունէին կամք անանկ արուեստներ ծաղկեցնել, որ կը-ծառայեն միօրինակ գեղեցկացը-նելու շրջակայ առարկաները, կամ թէ հեշտութիւն անանկ բան խնդրել, որ իրենց ու անասնոց մէջ հասարակ են ։

¹ Վայրենիները երկըլթէ բան չինել չեն. անոր համար սանտրծողը այն երկիր-ները անանկ ծառեր բուսուցեր է՝ որ փայ-տերը խիստ կարծր ըլլալով, երկաթ գործի-քի տեղ կըբռնեն. գրեթէ երկրագործնե-րուն ամէն բանը անկէ է ։

Սակայն հագիւ թէ մարդիկ իրենց ապահովութիւն ու ապարուստը հոգացին, նաև խնդրեցին նախ հարկաւոր բաները, ետևէն բերկրական բաներն ալ հնարեցին, և օգտակարին հետ գեղեցիկն ալ սահմանեցին ։ Այս կերպով նախ և առաջ ամէն բան գտնըվեցաւ, ետքը կատարելագործեցաւ, Ճարտարապետութիւնը, քանդակագործութիւնը, պատկերահանութիւնը, և այլ նմ արուեստներն որ կըճանչնանք ազատական արուեստի անունով[1] ։

1 Արուեստն է կատարելութիւն մտաց արուեստաւորին, որ ուզած բաները կանոնով կըշինէ ։ Բայց հին ատենէն 'ի վեր երկու կըբաժնըվի արուեստը, Ազատական և Մեքենական ։ Ազատականը առաջ ազնուականները միայն կըսորվէին . որ են՝ Քերականութիւն, Բանաստեղծութիւն, Երաժշտութիւն, Բժշկութիւն, Նկարչութիւն են . Իսկ մեքենականը՝ ծառաներուն գործքն ըլլալով ծառայական ալ կըսվէր . որ է Հիւսնութիւն ։ Դարբնութիւն, Երկրագործութիւն . են ։ Տես ճեմա'' . 11 ։

Ոսպէնոսն սկսաւ զարդարել և գեղեցկացընել իր պարտէզը, այնպէս ձևեր և քառակուսիներ կտրեց. աղէկ մը կարգաւորելէն ետև, լայն ճամբաներ բացաւ՝ չուանով չափեց, ծառատունկներով այնպէս բաներ շինեց խուցի նման, կենդանիի նման, ևն.

Մէն մէկ պարտէզին մէջ զանազան բաներ տնկեց. Ասոնց մէջը լէմոնի ծառեր ալ աճեցուց, որ ամէնէն օգտակար ըլլալով ասդին անդին կղզիին մէջ բուսած էին. Շատ մատղաշ ծառերու վերայ հացի ծառի ճիւղեր պատուաստեր էր. որուն ուրիշ մէկ տեսակն ալ տեղ մը գտեր էր՝ հոն աճեցուց.

Գերին այս գործողութեցս վրայ զարմանալով հաստատեց, թէ չեմ կրնար իմ զարմանքս յայտնել. և խելքս չի հասնիր՝ թէ ի՞նչպէս կըլլայ այս պատուաստըն ու կաճի. թէ որ Ոսպէն-

ղը՝ այնչափ կենդանի կըմնացընէն , որոնք մարդու զէնքը չունին . Նաև պէտք ըսգածէն աւելի բան մը չէնք կրնար գործածել առանց մեղադրութեն :

Ձուկ բռնելէն ետև հասարակօրէն կըլողային . Ռոպէնսոն խիստ կըզարմանար գետերին վրայ , որ ձկան պէս ծովուն տակ կըմտնէր կելլէր . Հոն բարձր ապառաժ մը կար , կելլէր ծայրէն կընետվէր ծովը և ժամանակ մը ջրին տակը կըմնար , մէկէն ջրէն դուրս կելլէր զանազան շարժմունքներով երբեմն կռնակին վրայ կըպառկէր , երբեմն ալիքներուն հետ կըխաղար . անանկ անկարծելի բաներ կընէր , որ տէրը զարմանք կը քաշէր : Ռոպէնսոն մտածելով կըզարմանար մարդու բնական յաջողութենը վրայ . որ ամէն կերպ բան ընելու կըյարմարի , երբոր փոյթ կունենայ մանկութե առնելը ինք զինք կրթելու :

Երբեմն զըւարճանալու հա-
մար որսորդութիւն կընէին. գե-
րին շատ յաջող կըգործածեր
աղեղն ու տէգը, լամայի ձագեր
և թռչունները կըզարնէր իրենց
պէտք եղածին չափ. վասն զի
ինչպէս ըսինք՝ Ռօպէնսօն գա-
գազանական անգթութիւն կըսե-
պէր միայն զըւարճութեան համար
կենդանի մեռցընել անօգուտ
տեղը: Ռօպէնսօնին գերազան-
ցութիւը գերիին վրայ՝ էր խել-
քին և ճարտարմութեանը կողմա-
նէ. նմանապէս գերին ալ անկէ
շատ պակաս չէր խելքով. ունէր
աղէկ ճարպիկութի, և օգտա-
կար արուեստ, որ տէրը մինչև ան-
ատենը չէր գիտեր. ոսկորէ բա-
ներ շինել գիտեր, քարէ և խե-
ցիներէ զանազան պիտանի գոր-
ծիքներ կընէր. շատ յաջող էր
փայտէ և տախտակէ բաներ
հնարելու, անանկ ճարպիկ էր և
գեղեցիկ կըշինէր՝ որ կարծէիր
թէ երկըթէ գործիքներով շի-

նած են. զորօրինակ պատահ-
մամբ գտաւ ձևի ոսկոր մը, ա-
ռաւ շինեց քերիչ (ըռէնտէ).
գտաւ մէկ ձիւղմը բուսոյ (մէր-
ձանի), գործիք ըրաւ. խեցի
գտաւ, դանակ շինեց. կարծրա-
ցած ճկան կաշի մը գտաւ, խար-
տոց շինեց։ Ահա այս օգտակար
գործիքներով յաջողութիւն շինեց
տան պիտանի բաներ մեծ ու
պզտիկ, որ աւելի հանգիստ եղաւ
իրենց վիճակը ամէն բան հնա-
րելով։

Գուերին սորվեցուց Ռօպէնսօ-
նին արուեստ մը, որ ծառի պը-
տուղներէն հաց շինէ, որ խիստ
հարկաւոր էր. վասն զի հացի
համ ունէր, ու հացի պէս որ-
նունդ կուտար. վայրենի մարդիկ
առանց պատրաստութեան այս
հացը շինեն կուտեն. բայց Ռօ-
պէնսօն աման մը կըտաքցնէր,
ու վրան կեփէր զգուշութեամբ, որ
կատարեալ հաց կըդառնար։

Յետոյ սորվեցաւ գերիէն

քաղաքացիին պտուղը եփել, որ ա-
ռաջ գտեր էր. այս պտուղները
բոհրելով կըլլար մէկ համով
բան մը անմնդարար: Ռօպէնսօն՝
որ միշտ բան փորձել կըսիրէր,
այս բոհրած պտուղներէն առաւ
երկու տափակ քարի մէջ դրաւ
մանրեց ալիւր ըրաւ, ետքը կա-
թով եփեց. երբոր կերաւ՝ տե-
սաւ որ չիքօլաթ է, անպատմելի
ուրախացաւ:

Այս այսպէս օրէօր յայտնե-
ցան Ռօպէնսօնին նոր նոր գիւ-
տածներ, որով իր հարկաւոր
և օգտակար բաները կըլեցընէր:
Սակայն իր սովորութիւնը չէր փո-
խեր. միշտ կըջանար որ քիչով
շատանայ, և պարզ բաներ ուտէ
չափաւոր:

Մինչէ ետև երկուքը միատեղ
կղզիին հեռու տեղերը կերթա-
յին կըպտըտէին, շատ անգամ
բոլոր կղզին կըշրջէին. մանա-
ւանդ որ հովը դէմ ըլլալով վայ-
րենի մարդիկ չէին կրնար հոն

մօտենալ. ուստի առիթ գտնե-լով շատ նոր բաներ ուսման՝ որ իրենց օգտակար կրնար ըլլալ:

Մեր պարտէզին աշխատանքը լմնցաւ. ու ղրկին որ Ճամբայ ելլեն երթան գերիին հայրը գտնեն. սակայն որչափ որ եր-թալու ատենը մօտեցաւ, այն-չափ ալ Ռոպէնսօնին մտմտուքը սաստկացաւ: Եթէ այս վայրենի մարդիկ զիս թշնամիի տեղ դնեն կըսէր, կամ թէ քեզ չի ճանչ-նալով կերակուր ըլլանք գազան մարդկանց, ինչպէս պիտի ըլլայ. ամենուն չեր կրնար գերիին վրայ վստահանալով այս կաս-կածները մէկ դի դնել:

Իսկ գերին ա̃մ կերպ երդու-մով հաստատեց, թէ այդ ամէն կասկածներն են պարզ երևակայ-ութիւն. որովհետև աղէկ կը-ճանչնար իրեն քաղաքացիները, երդում կընէր՝ թէ անհնարին է որ ծուռ նային մէկի մը որ իրենց թշնամի չէ: Ռոպէնսօն

լաւ հաւանեցաւ թէ գերին իրեն ասանկ հաստատուն չէր վկայեր, թէ որ փոքրիկ տարակոյս մը ունենար. ուստի բոլոր ունեցած կասկածանքը նետեց, ու գերիին հաւատարմութեանը վրայ կապվեցաւ, և բարի հաւատքով որոշեց միւս օրը առագաստը բանալ Ճամբայ ելլել։

Այս խորհրդով նաւակն որ ցամաքը քաշեր էին, ջուրը ձգեցին. և նոյն իրիկունը գետնախնձորներ եփեցին, և ուրիշ պաշարներ պատրաստեցին գրեթէ 8 օրուան բան։ Գերին յայտնեց՝ թէ այս պարագայիս մէջ Ճամբու համար ուրիշ կերակուր ալ կըրնամ պատրաստել։ Սորվեցուց տիրոջը նոր կերպով բոլորը միատեղ խորվելու մէկ լամայի ձագ մը քիչ ժամանակին մէջ, որով միսը աւելի կակուղ և համով կըլլար։

Այս բանիս համար գետինը փոս մը բացաւ երկու ոտնաչափ

խորունկ, և մէջը լեցուց չոր փայտեր և տափակ քարեր, կրակ վառեց, ու վրան կախեց լաման. կըրակին վառելովը և բոցովը կատարելապէս մազերը խանծեց. յետոյ քերեց վրան խեցիով անանկ մաքրեց, որ կարծէիր թէ տաք ջրի մէջ խաշած մաքրած է: Նոյն խեցիով լամային փորը բացաւ պարպեց: Այնչափ ատենին մէջ կրակն ալ հասաւ, ու փոսը չորս դիէն տաքցաւ, մէջի քարերն ալ կրակ դարձան: Ըզգուշութ̃ մէկ դի քաշեց կրակներն ու քարերը, որչափ որ պէտք էր փոսին տակը գոցելու համար թողուց: Այս քարերուն վրայ քզքօյին տերևներէն շարեց, լաման ալ վրան դրաւ՝ ուրիշ տերևներով ալ վրան գոցեց շուտով, և մնացած քարերն ալ վրան լեցուց, բոլորն եղաւ գետնի թոնիր մը:

Քանի մը ժամ անցնելէն ետև հանեց լաման այն թոնիրէն

մէջէն. Ռոպէնսոն որ կերաւ զարմացաւ համին վրայ. վասն զի անանկ կակուղ անանկ պատուական համեղ էր միսն՝ որ չէր կրնար ըլլալ։ Եւ այսպէս այս կերպը սորվելով շատ անգամ ասանկ կեփէր[1]։

## ԻԲ. Դիպուած.

Ռոպէնսոն և գերին ամէն բաներնին պատրաստելէն ետև՝ պառկեցան քնացան, կէս ժամ անցաւ՝ Ռոպէնսոն մէկէնիմէկ արթնցաւ ահաւոր կայծակին ձայնէն, որ փայլատակեց զարկաւ նոյն կէտին մէջ։ Որոտմանն

[1] Օտահիտ կղզիին բնակիչները իրենց շըները ասանկ կեփէին կուտէին. երբոր հոն գացին Ինկիլիզները կերան այն մսէն. որ խիստ համով ըլլալովը շատ զարմացան։ Վասն զի անոնց շները միս չէին ուտեր. հապա պտուղ կուտէին. անոր համար մսին համն ալ շատ տարբեր է մեր աշխարհքի մսէն, և հարկաւորապէս համով կըլլայ։

ձայները սոսկալի կըլսվէին , գետնաշարժութիւնը մէկ դիէն , փայլակն ու ալէկոծութիւնը մէկալ դիէն ։ Ռոպէնսոն ձայն տալով գերիին կըսէր , ե՛լ նայէ ։ Աչքը բացաւ գերին ու ո՜ծ ըսելով , ի՞նչ պիտի ըլլայինք կըսէր , թէ որ ծովուն վրայ գտնվէինք ։

Այս միջոցս հեռուէն լսեցին թնդանօթի ձայներ . գերին կարծեց թէ որոտում է , իսկ Ռոպէնսոն հաստատ հասկըցաւ թէ թնդանօթի ձայն է . ուրախանալով մէկէն ելաւ վառարանին քով վազեց , ընկերոջն ալ ըսաց որ ետևէն երթայ . քաշեց մէկ վառած փայտ մը առաւ ու չուանէ սանդուղէն վեր ելաւ . գերին ալ ետևէն ելաւ , բայց չէյտէր թէ տիրոջը միտքը ի՞նչ է ։ Ռոպէնսոն պատրաստվեցաւ մեծ կրակ մը վառելու լերանը վրան որ նշան տայ ծովու եղողներուն . որպէս զի գիտնան թէ կղզիին մօտ են , և հոն ապահովութիւ

օգնութ̃ն կրնան գտնել. որով-
հետեւ անտարակոյս գիտէր՝ թէ
կղզիին մօտ նաւ կայ վտանգի
մէջ. եւ թնդանօթին ձայնը
յայտնի նշան կուտար օգնութ̃ի
հանելու։ Սակայն կրակին բո-
ցը հազիւ թէ վեր ելած էր՝ ա-
նանկ անձրեւ մը վրան եկաւ, որ
բոլոր կրակը մարեց։ Ռօպէնսօն
ու գերին հարկադրեցան բնա-
կարանին մէջ նստիլ, որպէս զի
անձրեւէն չի թրջին։ Երկինքին որո-
տումը ծովին գոչումը եւ զարհու-
րելի փայլակները աւելի սաստ-
կացան. Թէպէտեւ այսչափ սոս-
կալի աղաղակներ կըլլային, բայց
Ռօպէնսօն մտադրելով երբեմն
երբեմն թնդանօթի ձայն կառ-
նէր. վերջապէս տարակուսե-
ցաւ՝ թէ այն ձայնը չըլլայ թէ
ամպի գոռալ ըլլայ հեռուն։

Ի վերայ այսր ա̃մի բոլոր գի-
շերը սիրտը խղճալով երեւակայ-
ութիւնը զինքը տանջեց, միտքը
կըբերէր որ մօտ տեղ նաւ մը

ալէկոծութե՟ն վտանգի մէջ է ։

Այս ալ կըմտածէր որ նաւապետը թէ որ այս ահագին վտանգէն ազատի, արդեօք զիրենք նաւին մէջ կընդունէ՞ր, ու եւրոպա կըտանէ՞ր ։ Շատ անգամ ելաւ կրակ վառեց, ամէն անգամ անձրեւը մարեց. ուրիշ ճար չը գտաւ օգնութի՟ն ընելու խեղճերուն, որ վտանգաւոր ալէկոծութե՟ն մէջ կըչարչարուէին՝ ինչպէս կըկարծէր, միայն աղօթք կընէր ա՟յ անոնց համար կաղաչէր ջերմեռանդութ՟բ, որպէս զի այն մերձաւոր վտանգէն ազատէ խեղճերը ։ Որովհետեւ (կըսէր) ա՟ծային բարութիւը միշտ բարի կընէ բարիներուն եւ առաքինիներուն, ու ինչ որ կուտայ՝ բարի է ։

Առաւօտուն դադրեցաւ այն ահագին փոթորիկը. իսկ Ռօպենսօն գերիին հետ միատեղ ելաւ մէյմը վախնալով՝ մէյմը յուսալով ծովուն քովը գնաց, որ նայի թէ ինչ կար եւ ինչ էր պա-

տահած , աղէ՞կ թէ գէշ ։ Բայց մէկէն աչքերնուն երևցաւ մէկ տրտմալի բան մը՝ որ Ռօզէնասօնին սիրտը վշտացուց, և գերին յուսահատեցաւ․ իբր զի ալէկոծութիւը իրենց նաւը առեր տարեր էր մեծ ծովը․ սկսան ողբալ արտասուօք թափելով, գերին յուսահատելով սիրտը կոտրեցաւ՝ երբոր տեսաւ թէ իր բերկրալի յոյսը ոչընչացաւ, որ պիտի երթար հայրը գտնէր ։

Խեղճին երեսին գոյնը մեռելի գոյն դարձաւ, լեզուն կապվեցաւ, չէր կրնար խօսք մը արարտաբերել․ աչվըները մըթնելով գետինը կընայեր, և բոլոր մարմինը կըդողար․ որպէս թէ հոգին մարմինէն պիտի զատվէր՝ մահուան դուռը հասածի պէս ։ Աչքէն արտասուքը աղբիւրի նըման կըվազէր․ սրտին հառաչանքը՝ խօսքը կարգելուր․ երբեմըն կուրծքին կըզարնէր, և երբեմն մազերը կըփեթթէր ։ Խել

Ռոպէնսոն տեսաւ որ իր անբաղդութիւնը ամէն տեղ յայտնի կըլլայ, հարկ եղաւ որ ուրիշէն ալ ցաւակից ըլլայ, ու մխիթարէ. ուստի գերիին յուսահատութեանը վրայ սիրտը ցաւելով կըմխիթարէր և կըջանար այսպիսի խելացի խօսքերով սիրտը զօրացընէ։

Շատ բան զուրցելէն ետև ըսաց քաղցրութեամբ. ո՞վ գիտէ սիրելի, կրնայ ըլլալ որ մեր նաւուն կորուստը մեզի աւելի օգտակար ըլլայ։ Ո՛վ գիտէ թէ այս փոթորիկը ուրիշ կողմանէ ինչ օգուտ ետքը պիտի բերէ թէ՛ մեզի, և թէ՛ ուրիշներուն։ Կըրկնեց գերին դառնութեամբ, թէ ինչ օգուտ պիտի բերէ. զրկեց մեզ մեր նաւէն, ահա շահը։ Իրաւ է ըսաց, որովհետև մարդ ենք՝ չափաւոր է մեր միտքը, և տեսութիւնս կարճ է. մենք հիմա ուրիշ բան և օգուտ մը չենք տեսներ այս փոթորիկէն, բայց եթէ մեր նաւին կորուստը։ Դուն

կուտան որ Ած ամենաբարին ան- հուն իմաստութ̃ը ուրիշ պատ- ճառ մը չունենայ այս փոթորի- կը տալու. ինչպէս քու տկար միտքդ կըհամարձակի դատաս- տան կտրել և չափի մէջ դնել անսահման խորհուրդը ամենա- կալին :

Պատասխանեց գերին, թէ ճշմարիտ է քանդ ընդհանրա- պէս. բայց մեզի համար մասնա- ւորապէս ինչ օգուտ կրնայ ու- նենալ այս ալէկոծութիս : Այս բանը ինծի՛ կըհարցընես՝ ըսաց. ահա ամենագէտը անանկ կըկա- ռավարէ ընդհանուր տիեզերս, որ խելք ու միտք չի հասնիր. մարդ կրնայ շատ բանի վրայ կարծիք ընել դատաստան կըտ- րել. բայց ո՞վ կարող է հաստա- տել, թէ ճշմարիտ է : Կրնար ըլլալ որ մեր կղզին վրայ մա- հաբեր արտաշնչութ̃ի, և թու- նաւոր գոլորշիք մը գար. այս փոթորիկն եղաւ՝ որ ցրւէ տանի.

ու մեզ վտանգէն պահէ, որ կըր-
նար հիւանդութիւն և մահ պատ-
ճառել։ Կարելի էր թէ մեր նա-
ւակը թէ որ մնար, որուն վրայ
այսչափ կըկսկըծանք, մեզ կոր-
սընցնէր։ Կրնար ըլլալ որ......
բայց ինչո՞ւ համար կրնար ըլլալ.
բաւական չէ՞ մեզի գիտնալ, թէ
մեծ ամենաբարին է, որ ըստ իւր
կամացը կուզէ՝ ալէկոծութիւն կը-
հանէ, կուզէ՝ կըդադրեցընէ, և
ամենայն արարածք կըճանչնան
իրենց արարիչը իմաստուն հայր
ամենազօրած։ Գերին զասոնք
լսելով ինքն իրեն եկաւ ու սկը-
սաւ ամընչնալ սխալմանցը վը-
րան, և շատ զըղջացաւ ըրած տըր-
տունջին համար, ու բոլորովին
իւր արդար դատաստանին հնա-
զանդեցաւ։ Սակայն Ռօպէնսօն
անդադար ծովուն երեսը կընայ-
էր, որ նաւ մը բան մը տեսնէ.
բայց ուրիշ բան չի տեսաւ, միայն
ընդարձակ ծով։ Ուստի հետե-
ւցուց թէ խաբւեր է. և միտքն

որ դրեր էր թէ թնդանօթի ձայն եկաւ , անտարակոյս ամպի գոռալու ձայն էր ։ Տրտմեցաւ որ այս յոյսն ալ փուճ ելաւ , եւ դարձաւ սկսաւ իր բնակարանը երթալ ։

Բայց ամենեւին սիրտը չէր հանգչէր , միշտ իրեն կերեւնար թէ նաւ մը երկըթի վրայ կեցած է կղզիին քով ։ Չդիմացաւ ելաւ լեռանը վրան , ու նայեցաւ արեւմտեան կողմը . բայց բան մը չի տեսաւ , որ սիրտը հանգչէր ։

Սակայն միշտ անհանգստութեան մէջ էր և տրտմութեան , ուստի ելաւ գնաց խիստ բարձր լեռան մը վըրայ , ուսկից որ կրնար տեսնել արեւելեան կողմը կղզիին . մեծ հոգով ծայրը ելաւ ու մէկէն ծովը նայեցաւ . բայց ինչ մեծ բերկրութիւն զգաց սրտին մէջ , երբոր տեսաւ որ չէ խաբուած . ահա նաւ մը կեցեր էր ծովուն վըրայ թէպէտ հեռուն էր , բայց որոշ տեսաւ որ մեծ նաւ էր ։

Անհնարին է Ռոպէնսոնին ըրած բաները պատմել, չափազանց ուրախութէն չգիտէր ի՛նչ ընէ․ կայծակի պէս թռաւ, շունչը հատնելով հասաւ բնակարանը, և առաւ զէնքերը վրան, որ առանց անոնց հեռու տեղ չէր երթար․ չի կրցաւ բան զուրցել գերիին, որ զարմացեր էր անոր իրար անցնելուն վրայ՝ քան թէ խօսքին, որ այսպէս կըսէր ։ Անոնք ահա՜ հոն են, շո՛ւտ շո՛ւտ ։ Մէկէն ելաւ սանդուղէն վեր, ու վազեց գնաց թռչունի նման ։ Գերին այս խռովութը և շփոթած գործքը տեսնելով նաև կէսկտուր խօսքը լսելով կարծեց թէ լեռան մարդիկ եկան հոն հասան․ ուստի ինքն ալ առաւ իր զէնքերը ետևէն գնաց արագութ ։ Ասանկ ճամբայ ընելով 12 մղոն տեղ գացին, ու չի կրցան հասնիլ ծովուն քով, ուսկից նաւը աւելի մօտ կերևնար․ և հոն գերին հասկըցաւ եղած բաներուն

պատճառը, երբ Ռօպէնսօն հեռութենէն նաւը ցըցուց իրեն։ Իսկ գերին զարմացած մնաց. այնչափ հեռուն էր, որ կերևնար թէ այս նաւը հարիւրապատիկ աւելի մեծ պէտք էր ըլլար իրեն տեսածներէն ։

Ռօպէնսօն չիյտէր թէ սրտին ուրախութիւնը ինչպէս յայտնէ, երբեմն կըցատկէր՝ երբեմն ուրախութեան ձայներ կըհանէր, և երբեմն կըգրկէր գերին. արտասունք թափելով երդում կընէր անոր ալ մասնակցելով սրտին մէջի կիրքը ։ Հիմա կըդառնանք եւրոպա կըսէր, և Ամպուրկ քաղաքը պիտի տեսնես՝ ինչ տներ շինած կան . և այս խեղճ օրերը՝ պիտի ուրախութեան օրերու փոխվին, միշտ պիտի զըւարճանանք հանգիստ և ցանկալի վիճակի մէջ։ Ռօպէնսօնին բերնէն խօսքը աղբիւրի պէս կըվազէր, որ ոչ երբեք կըցամքի ։ Այսպէս անընդհատ մինչև մէկալ օրը պի-

տի խօսէր, թէ որ չի մտածէր
թէ անխոհեմութիւն է անգին ժա-
մանակը կորսընցնել փուճ խօս-
քերով. նաև ամէն բանէն աւե-
լի պէտք էր մէկ կերպով մը հաս-
կընալ, թէ ի՞նչ ազգ են նաւին
մէջի մարդիկը, իսկ թէ ի՞նչ
կերպ պէտք էր իմանալ, չգիտ-
նալով պաշարվեցաւ մնաց։

Ուստի փորձեց թէ կրնա՞յ լը-
սել տայ ձայնը նաւուն մէջ ե-
ղողներուն, բայց անօգուտ. թէ-
պէտ ալէկոծութ՟ն ատենը հովը
փոխվեցաւ, ու ցամաքէն դէպ 'ի
նաւը կըփչէր։ Աղաչեց ընկերոջն
որ շուտով կրակ վառէ, որպէս
զի նաւին մէջի եղողները կարե-
նան տեսնել։ Մէկէն կրակը վա-
ռեցաւ, բոցը մինչև ծառերուն
բարձրութիւնը ելաւ. Աչքը միա-
կերպ նաւուն վրայ էր հաստա-
տեր ու ամէն վայրկեան կըդիտէր,
թէ արդեօք մակոյկը կինջեցը-
նե՞ն ծովը՝ ցամաք գալու համար.
Բայց պարապ տեղը սպասեց։

Վերջապէս կրակը մէկ ժամէն ետքը վառեցաւ, բայց ամենեւին մակոյկ մը չերեւցաւ։ Ուրբաթ գերին ուզեց լողալով նաւուն երթալ թէպէտեւ հեռուն էր. որպէս զի կանչէ մէջի եղողներին՝ որ ցամաք գան։

Ռոպէնսոն զրկեց գերին, ու հաւանեցաւ որ երթայ՝ չէ թէ յանդգնութե՟ համար, այլ ձեռքէն եկած օգնութի՟ը հեղգութե՟ չի ձգէ՝ ըսէ։ Շուտով գերին լաթերը հանեց ծառի մը ճիւղ կտրեց բերանն առաւ, սկսաւ ալիքներուն վրայէն լողալով երթալ։ Ռոպէնսոն ընկեր եղաւ իրեն միայն աչքին տեսութե՟ը և ջերմեռանդ աղօթքով։

Գերին յաջողութե՟ նաւը հասաւ ու մէկ երկու անգամ նաւուն բոլորը պտըտեցաւ։ Անդադար ձայն կուտար մարդկանց, բայց մարդ մը չերեւցաւ իրեն. հուսկ յետոյ տեսաւ՝ որ նաւուն մէկ կողմէն սանդուղ մը կախուած

եր, վեր ելաւ կանանչ ձիւղը ձեռքը[1]:

Արթոր վեր ելաւ Նաւին վրայ՝ ասդին անդին կընայէր, տեսաւ մէկ չի տեսած կենդանի մը՝ վախուն սարսափեցաւ, որուն մազերը սև էին և բրդոտ: Տեսածին պէս կենդանին անանկ հաչեց որ գերին անանկ ձայն չէր լսած վախցաւ. բայց կենդանին մէկէն սկսաւ քծնիլ և քաղցրութեամբ իրեն քսվիլ. մինչև գերին ալ չի վախցաւ, կենդանին ալ մօտեցաւ ու խոնարհութեամբ իրեն կըքսվէր պոչը խաղցընելով ողբագին կուռնար, մինչև գերին հասկըցաւ թէ իրեն օգնութիւնը և պաշտպանութիւնը կուզէ:

1 Ծառին կանանչ ձիւղը վայրենի մարդկանց մէջ նշան է խաղաղութեն. ով որ կականչ ձիւղ մը ձեռքը կըմօտենայ մէկուն՝ ամենևին վախնալու բան չի կայ. ասոր համար գերին ալ իր ապահովութենը համար այս զգուշութիւնն ըրաւ, որ ուրիշը զինքը թշնամի կարծելով չի մեռցընէ:

Երբոր կենդանին դրանը քով կեցաւ՝ գերին ալ համարձակեցաւ կենդանին սիրել և գգուել, կենդանին ալ կերևնար թէ ուրախութենէ կը զուարճանար. իսկ գերին վեր վար կը պտըտէր շարունակ մարդ կը կանչէր, բայց մարդ մը չերևցաւ։ Երբոր զբաղելով աստղին անդին կը նայէր ու չիտեսած բաներուն վրայ կը զարմանար՝ որ նաւուն վրայ աչքին կը պատահէին, կռնակը մէկալ դին դարձուց կը նայէր. նայիս յանկարծ ետևէն մէկը զարկաւ իրեն անանկ սաստիկ՝ որ վար ընկաւ [1]։ Վեր ցաթկեց սարսափելով աչքը չորս դին դարձուց, թէ ի՞նչ է. մէկէն զարհուրեցաւ մնաց, տեսաւ հոն կենդանի

[1] Այս կենդանին մեծ այծ էր, որ կաթը խմելու համար եւրոպացիք մեծ նաւերու մէջ կը պահեն. իսկ աղջի կենդանին եւրոպայի մեծ շուն էր։ Ասոնք Ամերիգայ չըլլալուն համար՝ գերին շատ վախցաւ, ու փախաւ։

մը մեծ ծուռ եղջիւրներով, և երկայն մօրուքով, որ ետևի երկու ոտքին վրայ ելաւ կեցաւ և սպառնալով պատրաստուեցաւ երկրորդ անգամ զարնել անոր։ Գերին սոսկալով աղաղակեց, և ինքը զինքը ծովը նետեց՝ փախաւ։ Այծի տեսած սև կենդանին հարկաւորապէս մազոտ շուն էր, որ գերիէն չի զատուելով ծովը նետուեցաւ ու սկսաւ անոր ետևէն լողալով գալ։

Գերին երբոր ետևէն լողալու ձայն կառնէր, կարծէր թէ այն եղջիւրաւոր կենդանին է ետևէն կըվազէ, անանկ զարհուրեցաւ վախնալով, որ արտաքոյ կարգի կըլողար, և մէկէն ծովուն տակը կըմտնէր ու կելլէր։ Ահա նոր օրինակ մը, որ կըտեսնենք թէ վախը որչափ մեծ վնաս կրնայ բերել. որովհետև անանկ վտանգի մէջ կըձգէ մարդն, որ պիտի այն վտանգը չի գար թէ որ վախը չի տիրէր վրան։

Գերին չէր համարձակէր ետին նայելու. երբ քիչ մը կըհանգչէր, նորէն արագ արագ կըլողար, որ շունը չէր կրնար ետեւէն հասնիլ։ Ցամաքն որ հասաւ, վախուն չի կրցաւ խօսք մը զուրցել. եկաւ Ռոպէնսոնին ոտքն ընկաւ մարեցաւ. քիչ մը անցաւ շունն ալ եկաւ հասաւ։

Ռոպէնսոնին խելքը գլխէն գնաց որ ճար ընէ, մարելն անցընէ հաւատարիմ ընկերոջը և անանկ խեղճ վիճակի մէջ չի թողու. վրան ընկաւ շունչ կուտար իրեն, կըշփէր կըցնցէր, և բարձր ձայնով անունը կըկանչէր, բայց քանի մը րոպէ անցնելէն ետեւ գերին աչքը բացաւ և նշան տուաւ թէ ողջ է։ Հուսկ յետոյ միտքը վրան եկաւ սկսաւ խօսիլ և պատմել այն սոսկալի դիպուածն որ իրեն պատահեցաւ. Նաւ ինչպէս այն նաւը փայտէ ահագին լեռ մը երեւցաւ իրեն, որուն վրան երեք հաստ ծառեր

տնկած էին այսինքն (տիրէկներ)։ Նաև ինչպէս և կենդանին այնչափ սիրելով քծնեցաւ իրեն. և ինչպէս այն մօրուքաւոր և եղջիւրաւոր հրէշ կենդանին զինքը պիտի մեռցրնէր ։

Դարձեալ ըսաց թէ կարծեմ այն հրէշ կենդանին այս մեծ շարժող լեռանը այսինքն Նաւին տէրն էր, որովհետև ուրիշ մարդ մը չէր տեսած հոն ։ Ռօպէնսօն այս պատմութիւներս զարմանալով կըլսէր. մինչև մտածելով իմացաւ որ եղջիւրաւոր ըսած կենդանին այծ պիտի ըլլայ։ Նաև Նաւը աւազի վրայ նստած պիտի ըլլայ, որ մէջի ճամբորդները ձգեր փախեր էին մակուկին մէջ մտնելով. սակայն չէր կրնար հասկընալ, թէ արդեօք փախչողները ողջ մնացեր էին. վասն զի ինչպէս յայտնի է, եթէ դէպ 'ի այն կղզին եկած ըլլային, պէտք էր որ իրենց եղած տեղը մօտենային, բայց հօն ոտքի նշան մը

երթալ այնչափ հեռու ըլլալով. Թէպէտև երթար՝ ի՞նչ շահ, ի՞նչ կրնար ազատելու : Վերջապէս մտածեր որ լաստ (սալ) շինէ, անկէ ուրիշ յարմար ճամբայ չէր կայ կըսէր. որով կրնանք երթալ նաւին քով, և պիտանի բաները կրնանք ազատել :

Որոշեցին որ իրենցմէ մէկը դառնայ բնակարանը, ուտելու բան բերէ. նաև չուան, և ուրիշ պիտանի բաներ բերէ ինչ որ կար: Գերին պատրաստ ըլլալով, այս աշխատանքը վրան առաւ, ճամբայ ելաւ : Ռօպէնսօն ալ այն միջոցը սկսաւ ծառեր կտրել լաստին համար : Գերին իրիկվան դէմ հազիւ կրցաւ դառնալ. իսկ Ռօպէնսօն շատ զուարճացաւ շանը հետ. որ իրեն քաղաքացին ըլլալով Եւրոպայէն՝ կըխաղար հետը սիրելով : Շունն ալ իրեն կողմանէ սէրը և ուրախութ̃իը յայտնելով իր երջանկուե̃ը վըրայ կըզուարճանար. ու Ռօպէն-

սօնին հաճոյ ըլլալու համար իր սորված խաղերը կընէր առջին։ Գերին որ դարձաւ եկաւ՝ Ռօպէնսօն ամէն բանէն առաջ կըտոր մը բան կերցուց շանը, որ նոյն օրը բան մը չէր կերած։ Ած յաջողեց որ այն գիշերը աղւոր լուսին կար. բոլոր գիշերը երկուսն ալ աշխատեցան շարունակ։ Կէս գիշերէն ետև քուներնին կոխեց, պառկեցան խոտին վրան, շունը ոտքերնուն տակը իրենց պահապան կեցաւ մինչև առաւօտ, որ հոգնութիւննին անցնելով ուժ առին անոյշ քընով[1]։

1 Ռօպէնսօն որչափ ուրիշին խեղճութենը վրայ գթալով օգնութեն ընել ուզեց, ած ալ իրեն աղէկութեն ընելով օգնեց. և ինչպէս հաստատուն յոյս որ ունէր Ածային նախախնամութենը վրան, բոլորը կատարուեցաւ անկարծելի եղանակաւ։

ալիքներուն մէջ խղդըլուած էին
չկային :

Այս մտքերով խիստ շատ ցա-
ւեցաւ Ռօպէնսօնին սիրտը, որ
յօժարութեամբ կըզոհէր տրտմալը
կեանքին կէսը որչափ որ պիտի
ապրէր, միայն թէ մարդ և նա-
ւավար գտնէր ու միատեղ եւրո-
պա երթար : Բայց այս անկնկա-
լութիւնը մտքէն հանելէն ետև մի-
նակ պէտք էր մտածել, որ նա-
ւուն մէջէն պէտք եղած բաները
դուրս հանէ, որչափ որ կարելի
էր, և յետոյ գործածէ, որով-
հետև նաւը անտէր մնացեր էր.
Թէ որ ինքը չառնէր, կամաց կա-
մաց ծովը պիտի երթային. ա-
տոր համար Ռօպէնսօն իրաւունք
ունէր որ առանց խղճմտանքի
պէտք եղած բաները նաւէն
դուրս հանէ ու գործածէ քա-
շած աշխատանքին տեղը իբր ա-
ւանդ, և երբոր տէրն ելլէր, ետ
կուտար :

Հասարակօրէն այսպէս է եւ-

րոպայի օրէնքը, որ ծովէն ելած բաները իրեք կըբաժնեն. մէկ բաժինը տիրոջը կուտան. մէկ բաժինը ծովէն հանողին է, մէկալ բաժինն ալ քաղքին տիրոջը կուտան։ Այսով Ռոպէնսոն ալ իրաւունք ունեցաւ նաւը պարպելով բաներուն տէր ըլլալ. միայն՝ որ տէր չի կար, երկրորդ՝ աշխատանքովը պիտի հանէր. և երրորդ՝ կղզիին օրինաւոր տէրը ինքն էր, որուն մօտ ցամաքն ընկեր էր նաւը. իբր զի օրէնքը կըցըցընէ, թէ մէկ երկիր մը, և ինչ և իցէ բան՝ երբոր տէր չունի, անոր կլլնի բնականապէս, որ նախ և առաջ զայն ժառանգեց։

Ռոպէնսոնին ուշը երբոր վըրան եկաւ, որ ուրախութէն այլայլեր էր եւրոպայի նաւ տեսնելուն համար, առջի խնդիրքն ու ջանքն եղաւ՝ նաւը անփնաս ցամաքին վրայէն հանել։ Անանկ որոշեր էր որ գերիին հետ միա-

տեղ մէջը մտնէ Եւրոպա եր-
թայ . եթէ Եւրոպա չըլլայ, գէթ
Անգղիայի Եւրոպացիները եր-
թայ գտնէ : Միտքը դրեր էր՝
որ այս անկազմ նաւովը մեծ
ծովը ճամբայ ընէ, որ նաւավա-
րութէն արուեստը չգիտէր : Ռօ-
պէնսօն իրեն լաստովը նաւին
չորս քոլորը պտըտեցաւ . և ամէն
դիէն ջրին բարձրութիւնը չափեց.
հուսկ յետոյ յուսահատելով շատ
սիրտը կոտրեցաւ . վասն զի ա-
նանկ ցած էր ջուրն, որ անհնար
էր որ կարենայ նաւը ջրին վրայ
ելլել : Իր զի փոթորիկը բերեր
նաւը երկու քարի մէջ էր ձգեր,
այնպէս գամլեր էր որ անկարե-
լի էր ոչ առաջ երթալ, և ոչ
ետ դառնալ : Հարկ էր անանկ
մնալ, մինչև որ ալիքները կտոր
կտոր խորտակէին :

Ռօպէնսօն երբոր յոյսը կըտ-
րեց այս բանիս վրայ, պատրաստ-
վեցաւ նաւուն մէջ մտնել, ու
նայել թէ ինչ բան կրնար պար-

պել մէջէն ։ Գերին մէկալ օրւան քաշած վախը չի մոռնալով տիրոջը հետ միատեղ մտաւ նաւին մէջ. սակայն վախուն սկսաւ դողալ երբոր տեսաւ եղջիւրաւոր հրէշը, որ զինքը այնչափ վախցուցեր էր ։ Բայց այծը առջի օրւան պէս կատղած չէր, ուժէ ընկած տկարացեր էր՝ անանկ որ չէր կրնար վեր ելլել. վասն զի իրեք օր էր որ բան չէր կերած կենդանին ։

Ռոպէնսոն ամէն բանէն աւելի նայեցաւ որ բան մը գտնէ անօթի այծին կերցընէ. որ ուտելով տկարութէն զօրանայ ։ Որովհետև նաւի մէջի եղած բաներուն ծանօթ էր, առանց դըժւարութեն փնտռած խոտը գըտաւ. երբոր այծին առաջը լեցուց, անանկ փափաքելով կուտէր, որ կուզէր բոլորը մէկէն կլլել. շատ զըւարճացաւ Ռոպէնսոն այս բանիս վրայ, թէպէտ գերին անանկ կըսարսափէր այ-

ծին ձեւէն՝ որ վախուն չէր կըրնար աղէկ մը նայել. վասն զի այն երկիրները չըլլալուն համար իրեն անծանօթ էր :

Հուսկ յետոյ Ռոպէնսօն մըտաւ նաւուն համբարը խորշ խորշ պտըտեցաւ, ամէն տեղ գտաւ բիւրաւոր բարիք որ եւրոպայ մեծ բան մը չեն համարեր. բայց իրեն առջին ամէն մէկ բանը՝ անգին գանձ էր : Հոն գտաւ ազնիւ պակսիմաթ, բրինձ, ցորեն, ալիւր, գինի, վառօդ, գընտակ (կիւլլէ, սաչմայ). հոն գըտաւ թնդանօթ, հրացան (թիւֆէնկ, փիշտով,) և զանազան թուրեր, դանակներ, նաև կացիններ, սղոցներ, մկրատներ, կռաններ (չէքիճներ), և այլ շատ պէսպէս երկըթէ գործիքներ : Դարձեալ՝ տեսաւ հոն կերպ կերպ ամաններ, ափսէներ, և ամէն սեղանի և խոհարանի բաներ : Վերջապէս գտաւ հոն ամէն տեսակ զգեստներ, հագնե-

լու լաթեր, կտաւ, չուխայ, կօ-
շիկ, գուլպա, և այլ շատ բա-
ներ, մինչև Ռոպէնսօնին խելքը
գլուխէն գնայ։

Անոնցմէ մէկ բան մը եթէ ի-
րեն տեղէ մը ցցընէին առա՞ջ
սիրով կուտար այն իրեն ոսկիէ
գունտը, որ արդէն ձգեր մոռ-
ցեր էր։ Իսկ Ուրբաթ գերին
այսչափ զանազան բաներ տեսնե-
լով՝ սասանեցաւ մնաց. ամէնն
ալ իրեն անծանօթ էին, և ա-
մենևին գործածութիւնը չկյտէր։
Եւ ընդհակառակն՝ Ռոպէնսօն
ուրախութենէն կուլար տղու նման,
որն որ ամէն բանի կըդպչի, և
ամէն տեսած բանին վրայ կու-
րախանայ թէ պիտի առնէ. ու-
րիշ բան մը տեսնէ, աւելի աղէկ
կարծելով առջինը կըձգէ՝ անոր
կըփակչի սիրտը։ Հուսկ յետոյ
Ռոպէնսօն ուզեց նաւէն տակն
ինջնիլ, բայց տեսաւ որ լեցուն
ջուր է, որպէս թէ նաւին գոգը
լիճ դարձեր էր։

Սկսաւ մտածել թէ առջի դասաւորութեան ինչ բան պէտք էր տանել ցամաքը. ամենեւին չի կրցաւ որոշել, թէ որը առնէ, և որը թողու: Երբեմն մէկ բանը կուզէր առնել. երբեմն ուրիշ բան; որ իրեն կերեւար թէ բացարձակապէս աւելի հարկաւոր է. շատ անգամ ալ պիտանի բանը կըձգէր, ուրիշ բան մը կընտրէր. ետքը անալ կըձգէր: Հուսկ յետոյ այսպէս որոշեց իր ընտրութիւնը, նախ ուզեց հանել ամէն բանէն աւելի պիտուական սեպած բաները. զոր օրինակ ա. երկու տակառ (Փըչի) վերցուց՝ մէկը վառօդ, մէկալը մանր գնտակ. բ. երկու հրացան և երկու զոյգ ատրճանակ (փիշտով). երկու թուր, և երկու դանակ. գ. երկու հագուստի լաթեր, մէկը իրեն համար, մէկալն ալ գերիին. դ. երկու կապոց շապիկ. ե. երկու կացին, երկու սղոց, երկու քերիչ, (ռէնտէ), և երկրթէ դաւաղան-

ներ, քանիմը կուան, և շատ երկաթեղէն պիտանի գործիք. Ե. քանի մը գիրք, Ճերմակ թուղթ գրիչ՝ մելան. Զ. հրահաններ (չախմախ) աբեթով և քարով. Է մէկ տակառ պակսիմաթ. Ը. քանի մը կտոր հաստ կտաւ. Թ. այծը: Որովհետև Ռօպէնսօն սաստիկ գթած ըլլալով չէր կրցաւ այս կենդանին հոն ձգել անխընամ վտանգի մէջ. որ կրնար իրենց դառնալէն առաջ նաւը ընկղմելով կորսուիլ: Մանաւանդ թէ ամէն հարկաւոր բաներէն առաջ այծին տեղ շինեց լաստին վրայ, կասկածելով չըլլայ թէ մոռնայ: Զարմանալին այն եղաւ որ գին ընելու բաներուն չէ դպաւ, վասն զի անարժան համարեցաւ առնել այնպիսի բաներն որ եւրոպա մեծ համարում ունին: Նաւապետին խուցին մէջ գտեր էր աման մը ոսկիի մանրուք. և մէկ մնտուկ լեցուն անգին անդամանդ (ելմաս).

բայց չի կամեցաւ մօտենալ ա-
նոնց, որ իրեն օգուտ մը չու-
նէին:

Շատ անգամ ժուռ գալով նաւին մէջ դիտեց առաւ պէտք եղած բաները՝ զետեղեց լաստին վրայ, ինչ որ կուզէր տանիլ, մինչև ամէնը կատարեցաւ: Ընելու այլ բան չի մնաց, բայց եթէ քիչ մը ատեն կուզէր որ մակընթացութիւնը սկսի. ասոր համար հարկադրեցաւ որ սպասէ ու ետքը Ճամբայ ելլէ, որ լաստը ջրերով ցամաքին երթայ. որովհետև առանց մակընթացութեան անկարելի էր ցամաք հանիլ:

Ռոպենսօն այս միջոցս ուզեց կերակուր ուտել եւրոպայի կերպով, որ երկար ատեն էր չէր կերած. Գնաց նաւին մէջ փնտռեց չորցած միս, և չոր ծուկ գտաւ, քանի մը պախսիմաթ, կարագ եղ, և պանիր, գտաւ նաև շուշայ մը գինի, սեղան դրաւ նաւավարին խուցը. կանչեց գերին՝

աթոռներով սեղան նստան ։ Ահա այսպիսի սեղան նստիլ դանակով պատառաքաղով կտրել ուտել եւրոպացիի պէս՝ մեծապէս զըւարճացուց Ռօպէնսօնին սիրտը ․ մանաւանդ եւրոպայի կերակուրներն ու հացը ․ մինչև ուրախութենէն չգիտեր թէ ինչ ընէ ։ Այս բաներուն շատ անգամ այնչափ տարի կըփափաքեր ու չէր գտներ ։ Մարդ չի կրնար երևակայել թէ անոր քիմքը (տամաղը) ինչպիսի համ և ինչ քաղցրութի կառնէր ։ Եւ իրաւունք ունէր, որովհետև 9 տարի միակերպ զրկըված էր բոլոր այս կերակուրներէն, և ամէն հանգստութենէն ։

Իսկ գերին՝ որ չգիտեր թէ եւրոպացոց կերակուրը և սեղանը ինչ է, խիստ զարմացեր էր, և չգիտեր թէ ինչպէս գործածէ դանակն ու պատառաքաղը (չաթալը) ․ Ռօպէնսօն կըսորվեցընէր իրեն ։ Գերին ալ բաղձալով

նմանիլ տիրոջը՝ պատառաքաղով կտոր մը միս առաւ բերանը տանելու ատենը՝ իրեն սովորութ̃ը պատառաքաղին կոթը ձեռքին հետ բերանը տարաւ, և մսին կտորը դէպ 'ի ականջը գնաց: Ռօպէնսօն գինի մը ուզեց անոր խմցընել. հրաժարեցաւ գերին խմելու, որ մինակ ջուր խմելու սորված էր. և բնութիւնը չէր կրնար տանել բարկ խմելիքի: Բայց պակսիմաթին վրայ խեցաւ՝ ախորժակին յարմար ըլլալով:

Մակընթացութ̃ը երբ սկսաւ՝ անոնք ալ իջան լաստին վրայ, ու մեկնեցան նաւէն. ջրին բարձրանալովը հանգիստ լաստը դէպ 'ի ցամաք կերթար. մինչև քիչ ժամանակին մէջ կղզին հասան և պատրաստվեցան ցամաք հանել բաներն որ լաստին վրայ բեռցուցած էին:

Գերին հետաքրքրութ̃ ունեցաւ գիտնալ թէ ինչ զօրու-

թէ և ինչ օգուտ ունէին այն բաներն որ դուրս հանեցին ։ Ասոր հետաքրքրութիւնը լեցընելու համար Ռօպէնսօն ծառի մը ետին անցաւ, ու իր լաթը հանեց. Նաւէն հանած լաթերը հագաւ, գուլպաները և կօշիկները ոտքն անցուց, կատարեալ զօրապետի կերպարանք մտաւ. գլխարք (շափղայ) մը գլուխը դրաւ, սուրն ալ մէջքը կապեց. մէկէնիմէկ եկաւ Ուրբաթ գերիին երևցաւ ։ Գերին զարմանալով հիացաւ ու ետև ետև փախաւ. վասն զի մէկէն չի ճանչցաւ տէրը, կարծեց թէ գերազանց հոգի է ։ Իսկ Ռօպէնսօն չիկրցաւ զինքը բռնել՝ որ չծիծաղի, սկսաւ բարեկամութեամբ ձեռք մեկնել քովը կանչել՝ հաստատելով թէ ես միշտ նոյն Ռօպէնսօն եմ, և միշտ քեզի բարեկամ. միայն հագուստս ու բաղդս փոխուեցաւ ։ Յետոյ հանեց Նաւավարի հագուստ մը տուաւ գերիին, ու հասկըցուց ինչպէս

երթալ այնչափ հեռու ըլլալով
թէպէտև երթար՝ ի՞նչ շահ, ի՞նչ
կրնար ազատելու: Վերջապէս
միտածեր որ լաստ (սալ) շինէ,
ասկէ ուրիշ յարմար ճամբայ չէր
կայ կըսէր. որով կրնանք երթալ
նաւին քով, և պիտանի բաները
կրնանք ազատել:

Որոշեցին որ իրենցմէ մէկը
դառնայ բնակարանը, ուտելու
բան բերէ. նաև չուան, և ուրիշ
պիտանի բաներ բերէ ինչ որ կար:
Գերին պատրաստ ըլլալով, այս
աշխատանքը վրան առաւ, ճամ-
բայ ելաւ: Ռօպէնսօն ալ այն
միջոցը սկսաւ ծառեր կտրել լաս-
տին համար: Գերին իրիկվան
դէմ հազիւ կրցաւ դառնալ. իսկ
Ռօպէնսօն շատ զըւարճացաւ
շանը հետ. որ իրեն քաղաքացին
ըլլալով եւրոպայէն՝ կըխաղար
հետը սիրելով: Շունն ալ իրեն
կողմանէ սէրը և ուրախութի̃ւը
յայտնելով իր երջանկութե̃ը վը-
րայ կըզըւարճանար. ու Ռօպէն-

սօնին հաճոյ ըլլալու համար իր սորված խաղերը կընէր առջին։ Գերին որ դարձաւ եկաւ՝ Ռօպէնսօն ամէն բանէն առաջ կըտոր մը բան կերցուց շանը, որ նոյն օրը բան մը չէր կերած։ Ան յաջողեց որ այն գիշերը աղուոր լուսին կար. բոլոր գիշերը երկուսն ալ աշխատեցան շարունակ։ Կէս գիշերէն ետև քուներնին կոխեց, պառկեցան խոտին վրան, շունը ոտքերնուն տակը իրենց պահապան կեցաւ մինչև առաւօտ, որ հոգնութիւննին անցնելով ուժ առին անոյշ քընով[1]։

1 Ռօպէնսօն որչափ ուրիշին խեղճուէը վրայ գթալով օգնութիւն ընել ուզեց, ան ալ իրեն աղէկութիւն ընելով օգնեց. և ինչպիսի հաստատուն յոյս որ ունէր նծային նախախնամութէը վրան, բոլորը կատարուեցաւ անկարծելի եղանակաւ։

## ԻԳ. Դէպ–ած.

Հազիւ թէ արշալոյսը բացվեցաւ և արևելեան կողմի երկինքը սկսաւ կարմրիլ, Ռօպէնսօնին քունը այլ չէր տարաւ կանուխ ելաւ արթընցուց գերին. որ ելլէ գործքը առաջ տանի, որ գիշերվընէ սկսեր էին : Այնպիսի ջանքով աշխատեցան բոլոր օրն, որ նոյն իրիկունը կատարեցին լաստը : Անանկ լաւ յարմարեցին ծառին փայտերը իրարու հետ, և այնպէս գերանները կարգով կապեցին չուանով և ուռիի ճիւղերով. որ հաստատ տախտակամած եղաւ յարմար ճամբայ երթալու. գրեթէ 20 ոտնաչափ երկայնութի և լայնութիւն ունէր : Նաև առաջուց մտածելով ոտքի կամ (թէքէրլէկի) վրայ շինեցին այս լաստը ծովին քով, որ դիւրին եղաւ ծո-

վր ձգել առանց ժամանակ կորսնցնելու ։

Մեծ յաջողութիւն եղաւ որ առտուանց սկսաւ մակընթացութիր եւ շատ չանցաւ ծովը բարձրանալով լաստը ջրին վրայ ելաւ որ 6 ժամէն ետեւ երբոր տեղատուութի ըլլալով ծովը կըքաշվէր՝ ջուրը ետ վազելու առենը գետի պէս լաստը պիտի առնէր տանէր մինչեւ մեծ նաւուն քով ։ Եւ այսպէս ժամանակին որ եկաւ՝ նստեցան լաստին վրան՝ ծովն առաւ քշեց լաստը , կէս ժամին մէջ հասան նաւուն վրայ ։

Ռօպէնսօն եւրոպայի նաւ տեսնելով անանկ սիրտն ելաւ՝ որ նաւին շատ տեղը համբուրեց շատ անգամ ․ վասն զի եւրոպայէն եկած էր , եւ եւրոպացի մէջը նստած էր ․ այս պարագաները սրտին գութը կըշարժէին ։ Սակայն աւա՜ղ ափսոս ո՞ւր էին այն սիրելի եւրոպացիները , նաւը կար , իրենք չի կային , արդեօք

ալիքներուն մէջ խղդըլված էին չկյտէր ։

Այս մոքերով խիստ շատ ցաւեցաւ Ռօպէնսօնին սիրտը, որ յօժարութե կըզոհէր տրտմալի կեանքին կէսը որչափ որ պիտի ապրէր, միայն թէ մարդ և նաւավար գտնէր ու միատեղ եւրոպա երթար ։ Բայց այս ակնկալութիւը մտքէն հանելէն ետև մինակ պէտք էր մտածել, որ նաւուն մէջէն պէտք եղած բաները դուրս հանէ, որչափ որ կարելի էր, և յետոյ գործածէ, որովհետև նաւը անտէր մնացեր էր․ թէ որ ինքը չառնէր, կամաց կամաց ծովը պիտի երթային․ ասոր համար Ռօպէնսօն իրաւունք ունէր որ առանց խղճմտանքի պէտք եղած բաները նաւէն դուրս հանէ ու գործածէ քաշած աշխատանքին տեղը իբր աւանդ, և երբոր տէրն ելլէր, ետ կուտար ։

Հասարակօրէն այսպէս է եւ-

րոպայի օրէնքը, որ ծովէն ելած բաները իրեք կըբաժնեն. մէկ բաժինը տիրոջը կուտան. մէկ բաժինը ծովէն հանողին է, մէկալ բաժինն ալ քաղքին տիրոջը կուտան: Այսով Ռօպէնսօն ալ իրաւունք ունեցաւ նաւը պարպելով բաներուն տէր ըլլալ. մէյմ՚ որ տէր չի կար, երկրորդ՝ աշխատանքովը պիտի հանէր. և երրորդ՝ կղզին օրինաւոր տէրը ինքն էր, որուն մօտ ցամաքն ընկեր էր նաւը. իբր զի օրէնքը կըցըցընէ, թէ մէկ երկիր մը, և ինչ և իցէ բան՝ երբոր տէր չունի, անոր կիյնի բնականապէս, որ նախ և առաջ զայն ժառանգեց:

Ռօպէնսօնին ուշը երբոր վըրան եկաւ, որ ուրախութեն այլայլէր էր եւրոպայի նաւ տեսնելուն համար, առջի խնդիրքն ու ջանքն եղաւ՝ նաւը անփնաս ցամաքին վրայէն հանել: Անանկ որոշեր էր որ գերիին հետ միա-

տեղ մէջը մտնէ եւրոպա եր-
թայ. եթէ եւրոպա չըլլայ, գէթ
Ամերիկայի եւրոպացիներուն եր-
թայ գտնէ: Միտքը դրեր էր՝
որ այս անկազմ նաւովը մեծ
ծովը ճամբայ ընէ, որ նաւավա-
րութեան արուեստը չգիտէր: Ռօ-
պէնսօն իրեն լաստովը նաւին
չորս բոլորը պտըտեցաւ. և ամէն
դիէն ջրին բարձրութիւնը չափեց.
հուսկ յետոյ յուսահատելով շատ
սիրտը կոտրեցաւ. վասն զի ա-
նանկ ցած էր ջուրն, որ անհնար
էր որ կարենայ նաւը ջրին վրայ
ելլել: Ինչ զի փոթորիկը բերեր
նաւը երկու քարի մէջ էր ձգեր,
այնպէս գամուեր էր որ անկարե-
լի էր ոչ առաջ երթալ, և ոչ
ետ դառնալ: Հարկ էր անանկ
մնալ, մինչև որ ալիքները կտոր
կտոր խորտակէին:

Ռօպէնսօն երբոր յոյսը կտրե-
րեց այս բանիս վրայ, պատրաստա-
վեցաւ նաւուն մէջ մտնել, ու
նայել թէ ինչ բան կրնար պատ-

պել մէջէն ։ Գերին մէկալ օր-
ւան քաշած վախը չի մոռնալով
տիրոջը հետ միատեղ մտաւ նա-
ւին մէջ․ սակայն վախուն սկսաւ
դողալ երբոր տեսաւ եղջիւրա-
ւոր հրեշը, որ զինքը այնչափ
վախցուցեր էր ։ Բայց այծը առ-
ջի օրուան պէս կատղած չէր, ու-
ժէ ընկած տկարացեր էր՝ անանկ
որ չէր կրնար վեր ելլել․ վասն
զի իրեք օր էր որ բան չէր կե-
րած կենդանին ։

Ռոպէնսոն ամէն բանէն աւե-
լի նայեցաւ որ բան մը գտնէ ա-
նօթի այծին կերցընէ․ որ ուտե-
լով տկարութենէն զօրանայ ։ Ո-
րովհետեւ նաւի մէջի եղած բա-
ներուն ծանօթ էր, առանց դըժ-
ւարութեան փնտռուած խոտը գը-
տաւ․ երբոր այծին առաջը լե-
ցուց, անանկ փափաքելով կու-
տէր, որ կուզէր բոլորը մէկէն
կլլել․ շատ զուարճացաւ Ռոպէն-
սոն այս բանիս վրայ, թէպէտ
գերին անանկ կըսարսափէր այ-

ծին ձևէն՝ որ վախուն չէր կըր-
նար աղէկ մը նայել. վասն զի
այն երկիրները չըլլալուն համար
իրեն անծանօթ էր ։

Հուսկ յետոյ Ռօպէնսօն մը-
տաւ նաւին համբարը խորշ խորշ
պտըտեցաւ, ամէն տեղ գտաւ
բիւրաւոր բարիք որ եւրոպայ
մեծ բան մը չեն համարիր. բայց
իրեն առջին ամէն մէկ բանը՝
անգին գանձ էր ։ Հոն գտաւ
ազնիւ պակսիմաթ, բրինձ, ցո-
րեն, ալիւր, գինի, վառօդ, գըն-
տակ (կիւլլէ, սաչմայ). հոն գը-
տաւ թնդանօթ, հրացան (թիւ-
ֆէնկ, փիշտով,) և զանազան
թուրեր, դանակներ, նաև կա-
ցիններ, սղոցներ, մկրատներ,
կռաններ (չէքիճներ), և այլ շատ
պէսպէս երկըթէ գործիքներ ։
Դարձեալ՝ տեսաւ հոն կերպ
կերպ ամաններ, ափսէներ, և
ամէն սեղանի և խոհարանի բա-
ներ ։ Վերջապէս գտաւ հոն ա-
մէն տեսակ զգեստներ, հագնե-

լու լաթեր, կտաւ, չուխայ, կօշիկ, գուլպա, և այլ շատ բաներ, մինչև Ռօպէնսօնին խելքը գլխէն գնայ։

Նմանցմէ մէկ բան մը եթէ իրեն տեղէ մը ցցընէին առաջ՝ սիրով կուտար այն իրեն ոսկիէ գունտը, որ արդէն ձգեր մոռցեր էր։ Իսկ Ուրբաթ գերին այսչափ զանազան բաներ տեսնելով՝ սասանեցաւ մնաց. ամէնն ալ իրեն անծանօթ էին, և ամենևին գործածութիւնը չգիտեր։ Եւ ընդհակառակն՝ Ռօպէնսօն ուրախութէն կուլար տղու նման, որն որ ամէն բանի կըդպչէր, և ամէն տեսած բանին վրայ կուրախանայ թէ պիտի առնէ. ուրիշ բան մը տեսնէ, աւելի աղէկ կարծելով առջինը կըձգէ՝ անոր կըփակչէր սիրտը։ Հուսկ յետոյ Ռօպէնսօն ուզեց նաւին տակն ինջնիլ, բայց տեսաւ որ լեցուն ջուր է, որպէս թէ նաւին գոգը լիճ դարձեր էր։

Սկսաւ մտածել թէ առջի գառնալուն ինչ բան պէտք էր տանել ցամաքը. ամենևին չի կրցաւ որոշել, թէ որը առնէ, և որը թողու։ Երբեմն մէկ բանը կուզէր առնել. երբեմն ուրիշ բան; որ իրեն կերևնար թէ բացարձակապէս աւելի հարկաւոր է. շատ անգամ ալ պիտանի բանը կը ձգէր, ուրիշ բան մը կընտրէր. ետքը անալ կը ձգէր։ Հուսկ յետոյ այսպէս որոշեց իր ընտրութիւնը, նախ ուզեց հանել ամէն բանէն աւելի պիտանական սեպած բաները. զոր օրինակ ա. երկու տակառ (Ֆըչի) վերցուց՝ մէկը վառօդ, մէկալը մանր գնտակ. բ. երկու հրացան և երկու զոյգ ատրճանակ (փիշտով). երկու թուր, և երկու դանակ. գ. երկու հագուստի լաթեր, մէկը իրեն համար, մէկալն ալ գերիին. դ. երկու կապոց շապիկ. ե. երկու կացին, երկու սղոց, երկու քերիչ, (ռէնտէ), և երկըթէ գաւազան-

ներ, քանի մը կռան, և շատ եր-
կաթեղէն պիտանի գործիք. Դ
քանի մը գիրք, Ճերմակ թուղթ
գրիչ՝ մելան. Ե Հրահանգներ
(չափման) աբեթով և քարով.
Զ մէկ տակառ պակսիմաթ. Է
քանի մը կտոր հաստ կտաւ. Ը
այծը ։ Որովհետև Ռօպէնսօն
սաստիկ գթած ըլլալով չի կրցաւ
այս կենդանին հոն ձգել անխը-
նամ վտանգի մէջ. որ կրնար ի-
րենց դառնալէն առաջ նաւը
ընկղմելով կորսըվիլ ։ Մանաւանդ
թէ ամէն հարկաւոր բաներէն
առաջ այծին տեղ շինեց լաստին
վրայ, կասկածելով չըլլայ թէ
մոռնայ ։ Զարմանալին այն եղաւ
որ գինի ըմպելու բաներուն չի
դպաւ, վասն զի անարժան հա-
մարեցաւ առնել այնպիսի բա-
ներն որ Եւրոպա մեծ համարում
ունին ։ Նաւապետին խուցին
մէջ գտեր էր աման մը ոսկիի
մանրուք. և մէկ սնտուկ լեցուն
անգին անդամանդ (էլմաս).

բայց չի կամեցաւ մօտենալ անոնց, որ իրեն օգուտ մը չունէին ։

Շատ անգամ ժուռ գալով նաւին մէջ դիտեց առաւ պէտք եղած բաները՝ զետեղեց լաստին վրայ, ինչ որ կուզէր տանիլ, մինչև ամէնը կատարեցաւ ։ Ընելու այլ բան չի մնաց, բայց եթէ քիչ մը ատեն կուզէր որ մակընթացութիւնը սկսի ․ ասոր համար հարկադրեցաւ որ սպասէ ու ետքը ճամբայ ելլէ, որ լաստը ջրերով ցամաքն երթայ ․ որովհետև առանց մակընթացութեան անկարելի էր ցամաք հանիլ ։

Ռոպէնսոն այս միջոցս ուզեց կերակուր ուտել եւրոպայի կերպով, որ երկար ատեն էր չէր կերած ։ Գնաց նաւին մէջ փնտռեց չորցած միս, և չոր ձուկ գտաւ, քանի մը պաքսիմաթ, կարագեղ, և պանիր, գտաւ նաև շուշայ մը գինի, սեղան դրաւ նաւավարին խուցը ․ կանչեց գերին՝

աթոռներով սեղան նստան ։ Ա-
հա այսպիսի սեղան նստիլ դա-
նակով պատառաքաղով կտրել
ուտել եւրոպացիի պէս՝ մեծա-
պէս զըւարճացուց Ռօպէնսօնին
սիրտը ․ մանաւանդ եւրոպայի
կերակուրներն ու հացը ․ մինչև
ուրախութէն չէյտէր թէ ինչ
ընէ ։ Այս բաներուս շատ ան-
գամ այնչափ տարի կըփափաքէր
ու չէր գտնէր ։ Մարդ չի կրնար
երևակայել թէ անոր քիմքը
(տամաղը) ինչպիսի համ և ինչ
քաղցրութին կառնէր ։ Եւ իրա-
ւունք ունէր, որովհետև 9 տարի
միակերպ զրկըված էր բոլոր այս
կերակուրներէն, և ամէն հան-
գստութէն ։

Իսկ գերին՝ որ չէյտէր թէ
եւրոպացոց կերակուրը և սեղա-
նը ինչ է, խիստ զարմացեր էր,
և չէյտէր թէ ինչպէս գործածէ
դանակն ու պատառաքաղը (չա-
թալը) ․ Ռօպէնսօն կըսորվեցը-
նէր իրեն ։ Գերին ալ բաղձալով

նմանիլ տիրոջը՝ պատուաքաղով կտոր մը միս առաւ բերանը տանելու ատենը՝ իրեն սովորութիւնը պատուաքաղին կոթը ձեռքին հետ բերանը տարաւ, և մսին կտորը դէպ 'ի ականջը գընաց։ Ռօպէնսօն գինի մը ուզեց անոր խմցընել. հրաժարեցաւ գերին խմելու, որ մինակ ջուր խմելու սորված էր. և բնութիւնը չէր կրնար տանել բարկ խմելիքի։ Բայց պակսիմաթին վրայ խեցաւ՝ ախորժակին յարմար ըլլալով։

Մակընթացութիւնը երբ սկսաւ՝ անոնք ալ իջան լաստին վրայ, ու մեկնեցան նաւէն. ջրին բարձրանալովը հանդիստ լաստը դէպ 'ի ցամաք կերթար. մինչև քիչ ժամանակին մէջ կղզին հասան և պատրաստուեցան ցամաք հանել բաները որ լաստին վրայ բեռցուցած էին։

Գերին հետաքրքրութիւն ունեցաւ գիտնալ թէ ինչ զօրու-

թէ և ինչ օգուտ ունէին այն բաներն որ դուրս հանեցին ։ Ասոր հետաքրքրութիւնը լեցընելու համար Ռօպէնսօն ծառի մը ետին անցաւ, ու իր լաթը հանեց ․ Նաւէն հանած լաթերը հագաւ, գուլպաները և կօշիկները ոտքն անցուց, կատարեալ զօրապետի կերպարանք մտաւ ․ գլխարք (շափղայ) մը գլուխը դրաւ, սուրն ալ մէջքը կապեց ․ մէկէնիմէկ եկաւ Ուրբաթ գերիին երևցաւ ։ Գերին զարմանալով հիացաւ ու ետև ետև փախաւ ․ վասն զի մէկէն չի ճանչցաւ տէրը, կարծեց թէ գերազանց հոգի է ։ Իսկ Ռօպէնսօն չիկրցաւ զինքը բռնել՝ որ չծիծաղի, սկսաւ բարեկամութեամբ ձեռք ընել քովը կանչել՝ հաստատելով թէ ես միշտ նոյն Ռօպէնսօն եմ, և միշտ քեզի բարեկամ ․ միայն հագուստս ու բաղդս փոխվեցաւ ։ Յետոյ հանեց Նաւավարին հագուստ մը տուաւ գերիին, ու հասկըցուց ինչպէս

պիտի հագնէր. և պատուիրեց որ երթայ ծառաներուն ետին լաթերը փոխէ։

Պերին գնաց լաթը փոխելու, բայց զարդարանքը երկար քշեց. վասն զի ամէն մէկ լաթը ծուռ կը հագնէր, որչափ որ փորձեց՝ չեղաւ. զօրօրինակ երկու ոտքը խօթեց շապիկին թևերուն մէջ. նմանապէս երկու թևը անցուց վարտիքին մէջէն, որ վարտիքով գլուխը գոցվեցաւ. կը ջանար որ բաճկոնը կռնակին դիէն կոճկէ։ Վերջապէս փորձելով փորձելով հագիւ հասկըցաւ սխալանքն ու շտկեց։

Երբոր շիտակ կարգով լաթերը հագաւ՝ ուրախութենէն վեր ցաթկեց տղու պէս. մանաւանդ երբոր հասկըցաւ թէ որչափ հանգիստ և պիտանի էին այս հագուստներս, որ ճանճերուն խայթելէն ալ կը պահէին զինքը. Միայն կօշիկներուն վրայ չուրախացաւ, որ անհանգիստ և անօ-

գուտ բան կերևնային իրեն. ուստի խնդրեց որ անոնք ձգէ չի հագնի. Ռօպէնսօն ալ իրեն կամքին ձգեց, ինչպէս որ ուզէ՝ անանկ ընէ: Ետքը իրեն սորվեցուց կացինին գործածութիւնը, և ուրիշ գործիքներուն օգուտը. որով գերին շատ զարմանալով ուրախացաւ: Այս գործիքներով մէկէն սկսան շինել լաստին համար կայմ (տիրէկ). որպէս զի առագաստին օգնութ̃ը կարենան երթալ մեծ նաւուն քով առանց սպասելու մակընթացութ̃. Ինքը կայմը կըշինէր՝ գերին ալ խրկեց որ երթայ բնակարանը լամաները կթէ. որովհետև երկու օր էր որ ձգեր էր կենդանիները: Գերին որ անկէ հեռացաւ: Ռօպէնսօն լեցուց հրացանը պահեց՝ որ նետելով զարմացընէ ընկերն ու զըւարճանայ:

Գերին դառնալու ատենը տեսաւ Ռօպէնսօնին ջանքն որ լմընցուցեր էր գործքը, շատ զարմա-

ցաւ ։ Իսկ Ռոպէնսօն մէկ ծովու-բադ մը տեսաւ, որ ձուկ մը բերանը կըլթռչէր ․ ըսաց գերիին թէ՝ նայէ՛ սա թռչունը հիմա պիտի խեղդի ․ նոյն կէտին Ռոպէնսօն ծնկան վրայ եկաւ, ու թըռչունին նշան առնելով նետեց հըրացանը, նայիս մէկէն թռչունը վար ինկաւ ։ Մտմըտա՛մ թէ ինչ վախ, և ինչ սարսափ եղաւ գերիին ․ որ մէկէն գետինն ինկաւ, որպէս թէ իրեն զարկած ըլլար։

Քուտ մը իր առջի աւելորդապաշտութիւնը միտքն եկաւ ։ Թուփան չա̃ծին տեղը դնելով։ Այս վախին մէջ միտքը դըրաւ՝ թէ Ռոպէնսոն է Թուփան չա̃ծը։ Մէկէն վեր ելաւ ծնկան վըրայ եկաւ, դողալով թևերը բացաւ Ռոպէնսօնին դէմ աղօթք ըրաւ, չէր կրնար բան մը խօսիլ։

Ռոպէնսօնին սիրտը չի քաշեց այս բաներուն վրայ զըւարճանալ, որովհետև մոլորական բան տեսաւ գերիին վրայ։ Այս աւե-

լորդապաշտուէ կարծիքը տեսնելով շատ նեղացաւ, ու անկէ ետեւ ջանաց որ շտկէ ընկերին պակասութիւնը ։ Ուստի Ռօպէնսօն բարեկամաբար վերցուց գերին ու դրկեց սիրով, յորդորեց որ դադրեցընէ վախը ապահով ըլլայ․ ետքը ըսաւ՝ թէ ասկէ ետեւ քեզ ալ կըսորվեցընեմ հրացանը կրակելով անանկ ձայն հանել տալ կայծակի նման․ անոնք ուրիշ բան չեն, բայց եթէ բնական գործքեր են ։

Հասկըցուց գերիին, թէ գիտե՞ս վառօդը ի՞նչ զօրութիւն, և ի՞նչ գործք ունի ։ Անատենը հրացանին հնարքը և շինուածքը իրեն բացատրելու համար՝ լեցուց հրացանը և տվաւ ձեռքն որ նետէ ։ Սակայն գերին մեծ վախի մէջ ըլլալով աղաչեց Ռօպէնսօնին, որ առնէ ինքը նետէ ։ Անալ 100 քայլ հեռուն նշան մը դրաւ՝ նետեց հրացանը զարկաւ, գերին քովը կեցած էր ։

Մինչ ձեռաց Նորէն գետինը պիտի բուսնէր գարին. Ինչոր տեսաւ և լսեց՝ իրեն կուգար թէ բնութէն դուրս բան է: Դրած նշանը կոտր կոտր եղած էր նետած գնտակէն, որ շատ առաջ գացեր էր մինչև անտառին մէջ հասեր էր: Ռօպէնսօն այս պարագան հասկըցնելով անոր՝ հետևեցուց, թէ ասկէ ետև որչափ ապահով կրնան հալածել վայրենի մարդիկ, ասանկ որոտում հանելով, և այս արուեստաւոր կայծակը անոնց վրայ նետելով:

Ահա այս գործքը և նաւին մէջ միւս բաները ապացոյց եղան ու գերիին սիրտը անանկ շարժեցին՝ որ մեծ յարգութի, և խորին ակնածութի մը ունեցաւ եւրոպացոց վրան ընդհանրապէս, և Ռօպէնսօնին վրան մասնաւորապէս. որ այնչափ օրուան մէջ անկարելի եղաւ Նորէն ունենալ բարեկամին հետ այն ընտանի եղանակն, որ արդէն առաջուց

սորված էր ։ Իրիկուն որ եղաւ՝ Թողուցին այն երջանիկ օրուան աշխատանքն ու հանգչեցան ։

## ԻԴ. Դիպուած.

Ռոպէնսօն քանի որ իր կըղզին մէջը էր անանկ անոյշ և հանգիստ քուն չէր քնացեր, ինչպէս այս գիշերուան քունը ։ Որովհետև այսպիսի երջանկութի ոչ երբեք տեսած էր. բայց չէ եղած որ մարդ մը ասոր նման ա͞ծային բարերարութիւնը Ճանչնայ, ու ստեղծողին սիրովը վառվի. որուն մեծապէս պարտական էր՝ տեսած երջանկութե͞ր համար ։ Որչափ որ մինակ կըղզար. ինչ ջերմեռանդութիւներ և քանի՛ երկրպագութի կըներ յարգութ͞ք երկնաւոր Թագաւորին՝ վասն այնչափ բարերարութեանց որ իրեն շնորհեր էր ։

Բնական չի համարեցաւ իր երախտագէտ սիրտը, ուզեց գերին ալ հաղորդել, անոր ալ սորվեցուց պառկելէն առաջ, մէկ շնորհակալութե երգ մը՝ տուած շնորհացն համար. Երբոր սկսան երգել, աւելի սրտերնին շարժեցաւ գովել և փառաբանել իրենց երկնաւոր հայրը :

Հետևեալ օրը խիստ կանուխ ելան՝ բոլոր հանած քարերը տարին անտառին մէջ դրին, վրան ալ ծածկեցին տերևներով, որ անձրևէն պահվին՝ եթէ անձրևեր : Երբոր ծովը սկսաւ բարձրանալ, Նորէն Ճամբայ ելան որ նաւուն քով երթան, լաստին վրայ քանի մը թի էին շիներ, որ քաշելով քիչ ժամանակին մէջ յաջող հասան հոն, որ մէկէն նաւը մտան ու որչափ տախտակ գտան դրին լաստին վրան. որպէս զի աւելի մեծնայ, ու աւելի բեռ առնէ, և առջի օրւընէ շատ բան բերէ ցամաքը :

Սօպէնսօն նորէն մտածեց նաւը պարպելուն համար, որ ընտրելով աւելի պիտանական բաները հանէ այնչափ զանազան բաներուն մէջէն. վասն զի անհնարին էր բոլորը մէկէն դուրս հանել: Այս անգամ պաշարվեցաւ մնաց, որովհետև առջի անգամ ամէն հարկաւոր բաները հաներ էր. ուստի չէր կրնար որոշել թէ ինչ բան հանէ: Վերջապէս որոշեց որ նաւուն թնդանօթին մէկը դուրս հանէ. վասն զի իր վիճակին նայելով խիստ հարկաւոր համարեցաւ թնդանօթը. որպէս զի ապահով և հանգիստ կարենայ ըլլալ:

Իբր զի՝ լաստը պարպած տեղը ուր որ բաները առ ժամն կըհանէին՝ բաց տեղ էր, և անյաջողութե̃ մօտ էր այն տեղին՝ ուր որ կուգային կեղևին վայրենի մարդիկ. Ճշմարիտ է թէ առանց թնդանօթի ալ կրնար ապահով ըլլալ, եթէ ծեծկռվիլ ալ պէտք

ըլլալ՝ կրնար հրացանով թշնամիները հալածել. բայց իրեն կերևնար թէ մեծ անգթութի է վայրենի մարդիկը հրացանով ջարդել մեռցընել. հապա բաւական էր զանոնք վախցընել երբոր հոն մօտենային : Ասոր կըմտածեր որ եթէ մէկ թնդանօթ մը դնէր ծովին քով, և լեռան մարդիկ թէ որ նաւով գային մօտենային կղզիին, թնդանօթը վերէն նետելով կրնար զանոնք վախցընելով ետ դարձընել :

Ռոպէնսօնին ասանկ խորունկ մտածմունքը շատ մարդու խրատ կրնայ ըլլալ, որ ամէն բանին ետքը մըտածէ. և ուրիշին միտքը չի հասկըցած՝ վրան դատաստան չի կըտրէ և ըրած բանը չիդատէ. որ շատ անգամ կըխաբվինք չի ճանչնալով թէ ինչ մտքով ըրած է այն բանը. որովհետև անկարելի է, թէ մէկ բանին ամէն պարագաները ճանչնանք. հապա

ինչպէս դատաստան կրնայ կըտրվիլ։ Ասոր համար գիտուն մարդը ուրիշին գործքը չի կըրնար դատել. միայն իր գործքին նայելով կըզգուշանայ։ Ամէն մարդ ասանկ պէտք է ընել. ուրիշին միտքը չի հասկըցած վրան դատաստան չընէ. ինչպէս որ մեծապէս կըսխալէր՝ թէ որ մէկը Ռոպէնսոնին ըրած բաները դատէր անգիտուք։ Այսպէս Ռօպէնսօն ետքը մտածելով Թնդանօթը դրաւ լաստին վրայ. Նաև հարկ համարեցաւ՝ որ այս բաներն ալ առնէ. ա̄ իրեք տօպրակ հնդեղէն. բ̄ երկու սնտուկ գամ ու գինի. գ̄ 12 կացին. դ̄ տակառ մը վառօդ և կապարէ գնտակ. ե̄ մէկ առագաստ մը առաւ, և մէկ երկանի քար՝ ցորեն աղալու համար. որ իրեն աւելի հարկաւոր ըլլալով անդամանդը ձգեց ու այս քարերը դրաւ լաստին վրայ։

*Նաւէն դեռ չէին զատված.

Ռօպէնսօն նաւը քննեց նայե-
ցաւ, որ ջուրը լեցուն է մէջը.
և ալիքները զարնելով ապառա-
ժին՝ երկու կողմէն ալ շատ տախ-
տակներ փրցուցեր էին, ուստի
հասկըցաւ որ ալէկոծութի՛ մը
եղածինպէս պիտի խորտակէ նա-
ւը. այս պատճառաւ պատրաստ-
վեցաւ, որչափ որ կրնայ մէջի
բաները պարպէ ազատէ։

Որովհետև անատենը հովը
ծովէն ցամաքը կրփչէր, առա-
գաստը բացին թի քաշելով գա-
ցին հասան յաջողութ. Թէպէտև
տեղատուութիը սկսած ըլլալով
ջուրը իրենց ներհակ էր։ Ճամ-
բան գալու ատենը Ռօպէնսօնին
միտքը բան ընկաւ և ինք զինքը
անարգելով գզջաց, որ ոսկին ու
անդամանդը չէր բերած հոն թո-
ղուցեր էր։ Թէպէտ այն վիճա-
կին մէջ իրեն հարկաւոր չէր.
սակայն ասանկ կըմտածէր թէ
կրնայ ըլլալ՝ որ տէրը ողջ ըլլայ,
ու օր մը գայ այս կողմերս քննէ,

թէ բան մը կընայ գտնել ։

Նաւ կըսէր, թէ որ հովը զարնէ դաւը կտոր կտոր ընէ եւ նորէն չի դարձած՝ ոսկին ու անդամանդները ծովը որ երթան, ես ալ առջին պարտական չեմ մնար ․ Ինչպէս պիտի արդարանամ արդար դատաստանէն և իմ խիղճմտանքէս, որ ուրիշ բան չազատեցի ․ միայն ինծի պէտք եղած բաներուն նայեցայ, առանց ջանալու ուրիշին անգին բաներն ազատելու ․ որպէս զի ազատածներս ալ արդարութ̅ք եղած ըլլային ։ Կըրնար ըլլալ որ տիրոջը բաղդը և շատ մարդու յաջողութ̃ը այս պզտի ուշադրութ̃էս կըկախվէր՝ որ ես զանց ըրի ։ Ռոպէնսօն Ռոպէնսօն՝ կանչեց ինքնիրեն դըժգոհութ̅ք ․ քանի՜ հարկաւոր է որ դուն արդար ըլլաս՝ ինչպէս որ պարտական ես ։ Նոյն կէտին կարելի ըլլար, լաստը Ճամբայէն ետ կըդարձընէր՝ որ նորէն նաւուն մօտենայ, այն բաներն ա-

զատելով խիղճմտանքը շտկէ, որ խռովված էր արդարութեան դէմ ընելուն համար, որով պարտաւորութեան տակ զինքը կըճանչնար։ Սակայն ցամաքին մօտեցան, տեսան որ հանած բաներուն վտանգաւոր ըլլայ և ծովը պիտի թափին. որովհետև դեռ ջուրը քաշւելու հետ էր։ Ասանկ ըլլալով եղած տեղերնին ցամաք էր, լաստին գլուխը աւազին վրայ խրեցաւ մէկէն, ու ետևի կողմը բարձր մնաց ջրին վրայ. որ միշտ ցածնալու հետ էր։ Ա՟ծ տուաւ որ Ռոպէնսոն ու գերին լաստին ետևի կողմն էին, որ թող չէր տուվին ետևի բաները ծովը թափելու, որ ծովուն ալիքները զարնելով ջուրը պիտի ձգէին։

Լաստը աղէկ մը հաստատելէն ետև, վրայի բաները ցամաքը կրեցին տղմին (ջամուռին) և ջրին մէջէն անցնելով, որ մինչև ծունկը կըհասնէր. անանկ ջանքով և զգուշութ՟ պարպեցին,

որ անվնաս բան մը չի կորած՝ ամէն բան ցամաքը դըրին, ու ջուրը չի բարձրացած նորէն դարձան ։

Ռոպէնսօն նաւուն վրայ ելածին պէս մէկէն ոսկիին ու անդամանդին սնտուկը դըրաւ լաստին վրան. որ խիղճմտանքին բեռէն ազատի ու պարտական չի մնայ, միայն իր բանին նայելուն համար ։

Այս ճամբորդութ՟ ուրիշ բաներէն ՚ի զատ դուրս հանեց քանի մը պզտի սայլեր (արապա), որ գտաւ նաւուն վրայ. չգիտեմ ի՛նչ բանի համար. շատ զգեստներ, և կտաւներ հանեց. գործիքներ, և տան գործածելու բաներ, կանթեղ մը, նաև բոլոր թղթերն որ գտաւ նաւավարին խուցը հանեց ։

Երբոր ծովը սկսաւ բարձրանալ, նորէն ճամբայ ելան, շուտ մը հասան ցամաքը ջրին բերելովը և հովին օգնութ՟ ։ Ռոպէն-

սօն մնացած օրը չուզեց այլ եր-
թալ. ուրիշ բանի աշխատեցաւ
զգուշութ համար, որ իրեն խիստ
հարկաւոր կերևնար. վասն զի
վախուն կըդողար որ չըլլայ թէ
անձրև գայ, որով անկարելի էր
թէ կարենայ վառօդը գործա-
ծել, որ այնչափ ցանկալի էր ի-
րեն: Այս դիպուածէն պահվե-
լու համար, նոյն օրը տաղաւար
(չատրը) մը շինեց բերած առա-
գաստէն՝ որ ազատեր էր. որուն
տակը պահեց իր գանձերը անձ-
րևէն:

Որովհետև Ռոպէնսօն մկրատ,
սանր և թել հաներ էր նաւէն,
մէկէն սկսաւ գործածել կարել
տաղաւարը և գերիին ալ սորվե-
ցուց գործածութիւն. որ իրեն
օգնութի ընելով կըզարմանար
եւրոպացոց ճարտարամիտ գտու-
մին վրայ՝ որ սանրն ու մկրատը
հնարեր էին. և անդադար մտա-
ծելով կըբաղդատեր իր ազգը
եւրոպացոց հետ. ուրիշ բան չէնք

կրօնէր , բայց եթէ խեղճ յիմար Թանձրամիտ ։ Այս գործքս կատարելէն ետև՝ Ռօպէնսօն տեսաւ թէ իրիկուան ըլլալու դեռ ժամանակ կայ , ուզեց որ գերիին հասկըցնէ Թնդանօթին զարմանալի գործքը զըւարճութե համար ։

Թնդանօթը զետեղեց ծովուն դէմ անոր համար՝ որ ռումբը ծովին երեսը ցաթկըտելով գերին որոշ տեսնէ թէ որչափ հեռուն կըրնայ երթալ ։ Ռօպէնսօն կրակ տըւաւ Թնդանօթին ։ Երբոր գերին Թնդանօթին ահեղ ձայնը լսեց՝ անանկ խռովեցաւ որ բոլոր մարմինը կըդողար , թէպէտ երկու անգամ հրացանին ձայնը լըսած էր ։ Խելքը չէր հասնէր թէ ինչպէս կըցաթկըտէր ռումբը ծովին երեսը . որ ծովին ջուրը խռովելով սաստիկ գնաց հեռուն , մինչև մտաւ ջրին մէջ անէրևոյթ եղաւ ։ Գերին վկայեց , որ եթէ միանգամ նե-

տես այս գործիքը, բոլոր իմ ազգս ասոր ձայնէն կըհալածին թէպէտ բիւրաւոր ըլլան. վասն զի չե՛ն տարակուսիր թէ այս որոտումը թուփան չա̃ծին ձայնն է։

Երբոր գիշեր եղաւ՝ Ռօպէնսօն բերած կանթեղը վառեց, որ կարդայ նայի թէ հանած թղթերը ի՛նչ են. որպէս զի հասկընայ նաւին տրամադրութիւնը թէ ուսկից ու՛ր պիտի երթար. բայց դժբաղդութե̃ բոլոր գրերը անանկ լեզուով գրված էին, որ չէր կրնար հասկընալ։

Հոս նորէն կսկիծ մը ունեցաւ, որ մանկուէ̃ առենը ծուլութե̃ չէր սորված ուրիշ ազգի լեզուները՝ բայց այս կըսկիծը անանկ առեն ունեցաւ որ աւելորդ և անօգուտ էր, ժամանակը անցեր գացեր էր։

Սակայն և այնպէս երկու մասնաւոր բան դիտեց, որ իրեն շատ լոյս տվին այս նաւին համ-

բորդուքը և վախճանին համար ։ Անոնց մէջ քանի մը բարեւագէր գտաւ Պարպատ կղզիին վրայով որ Ամերիգա է, ուր մեծ առուտուր կըլլայ գերիներու. ինչպէս առաջուց պատմեցինք՝ որ Ափրիկէ ալ կըլլայ այս առուտուրը Սեւերուն մէջ ։

Այս սեւ ազգերը թամձրամիտ ըլլալով գազանի վարք ունին. որոնց իշխանը կամ թագաւորը իրենց պէս վայրենի ըլլալուն համար սաստիկ կըկառավարէ ։ Երբոր եւրոպացիք հոն կերթան՝ ասոնք անասունի պէս կըծախեն մէկզմէկ ։ Իրենց հարազատ հայրը կըբերէ փուճ բանով կըփոխէ կամ կըծախէ որդին. եւրոպացիք ասոնցմէ բազմութի գնեն Ամերիգա կըտանին՝ ու ծանր աշխատանքի մէջ կըծառայեցընեն մեծ նեղութը ։ Որովհետեւ այս գերիներուն վիճակը այսպէս է՝ կըկոչվին թըշուառ ողորմելի. շատը աւելի կըփափաքին մեռ-

նելու քան թէ ողջ մնալու. ահա այս առուտուրը այն կղզին ալ շատ կըլլար, որ է անիրաւ վաճառականութի. յոյս կայ որ ժամանակով դադրի այս անօրէն մարդու առուտուրը :

Սօպէնսօն թղթերուն մէջ մէկ ծանուցման թուղթ մը կըտար. ասով քիչ քիչ հասկըցաւ թէ նաւուն մէջ հարիւրաւոր գերիներ կային, որ այն կղզին պիտի տանէր : Այս բանս գերիին հասկըցնելէն ետև ըսաց. ո՞վ գիտէ թէ, այս խեղճ գերիները ինչպէս շնորհակալ եղան ալէկոծութէն, որ նաւը ցամաք հասնեցուց ու իրենք ազատեցան : Ո՞վ գիտէ թէ ի՞նչպէս ազատեցան մակոյկին մէջ մտնելով. արդեօք կրցա՞ն կղզիի մը մօտենալ : Կըրնայ ըլլալ որ իրենց բռնաւոր տէրը վրանին չըլլալով հիմա հանգիստ են իրենց խեղճութէն և ուրախ :

Պերին ալ հաւանելով հա-

տատեց՝ թէ այդ կործիքդ պէտք է որ ճշմարիտ ըլլայ ։ Ուրեմն բարի է սիրելի՛ ընկեր՝ ըսաւ Ռոպէնսոն տաքնալով. Հիմա դուն կրնա՞ս այն բանը ինծի ցուցել, որ առաջ կըհարցընէիր թէ ի՞նչ օգուտ կրնայ բերել փոթորիկն՝ որ մեր նաւակը քշեց տարաւ ։ Գերին ամըչնալով սկսաւ առաջը նայիլ ։

Ո՞վ Ուրբաթ կանչեց Ռոպէնսոն ա՜նպաշտուէ նախանձով մը. Ճանչցի՛ր ըստեղծող թագաւորին ամենակարող ձեռքն, որ այս դիպուածով յայտնի ըրաւ իմաստուն կառավարութիւնը. մտմտա՛ թէ այս փոթորիկը մեզի ո՞րչափ բարիք ըրաւ. ի՞նչ բաներ հանեցինք. մէյմը նայէ՛ թէ ո՞րպիսի զանազան ուտելու և հագնելու բաներ ունեցանք, որով երջանիկ և հա՛նգիստ կեանք մը կրնա՛նք վարել ։ Ասոնք ո՞ւր տեղէն պիտի ունենայինք թէ որ փոթորիկը եղած չըլլար ։ Ճշմարիտ է որ

աղէկ բան չէ ուրիշին խեղճութիւը երջանիկ ըլլալ. սակայն այս նաւին մէջ եղողներուն շատը՝ կրնայ ըլլալ որ առաջվանէն երջանիկ եղած ըլլան այս դիպուածովս ։ Որովհետեւ այս ենթադրութիւս ճշմարիտ կերեւնայ, հիմա դուն ինչ կըմտածես Ամենակարողին վրայ, որ աշխարհք կըկառավարէ ։

Պատասխանեց գերին թէ ես կըմտածեմ՝ թէ Ամենակարողը պէտք է որ ունենայ անհուն իմաստութիւն, եւ անճառելի բարութիւն. իսկ ես եմ մէկ տխմար թանձրամիտ մը ։ Այս բանիս վրայ գերին աչքն ու թեւերը երկինքը վերցուց՝ լալով թողութիւն խնդրեց սխալանացը համար, որ յիմարութեամբ գործեր էր ։ Ռոպէնսոն զգուշութեամբ կըպահէր թըղթերն ու ոսկին եւ անդամանդը. որպէս զի թէ որ եւրոպա երթայ, կարենայ անով հասկընալ եւ հաստուցանել գանձը տիրոջն,

որ նաւէն հաներ էր ։ Վեց օր շարունակ օրը երկու երեք անգամ նաւը կերթայի՛ն, ու որչափ կարելի էր՝ մէջի բաները ցամաք կը բերէի՛ն ։ Հազար տեսակ բան կար մանտրըմունտր, որ մենք երեսը չենք նայիր, ուրովհետեւ անանկ բաներ չունենալը մեզի պակսութիւն չենք սեպեր ։ Բայց անոնց քով մեծ յարգ ունենալնուն՝ բոլորը չի մոռցան ժողվեցին ։ Նաւուն մէջ շատ փղի ակռաներ կային եւ շատ տակառ խահվէ ։ Ռոպէնսօն ձգեց հոն չառաւ . որ իրեն բանին չէին ծառայեր . մանաւանդ՝ առաջադրեր էր՝ աւելորդ սովորութիւ մը չունենալ եւ աւելորդ բան չընել, թէպէտեւ զուարձալի բան եղած ըլլայ ։ Սակայն շատ տախտակներ փրցուցին ցամաք բերին, որ իրենց խիստ պիտանի եւ հարկաւոր էին ։ Նաեւ հինգ թնդանօթ ղուրս հանեցին եւ որչափ երկաթ գտան, ու փրցու-

ցին ամէնը բերին ։

Մերջապէս 18 անգամ ժամբայ ընելէն ետև և յաջողութ-ուղած բաները հանելէն ետև վերջի անգամն որ նաւուն մէջն էին, դիտեցին որ փոթորիկ պիտի ելլէ. պատրաստուեցան շուտով ժամբայ ելլել յուսալով թէ փոթորիկ չելած ցամաքը կըհասնին թի քաշելով։ Սակայն այս յոյսը պարապ ելաւ. վասն զի կէս ժամբան չի հասած յանկարծ սոսկալի հով մը ելաւ հանդերձ կայծակով անձրևով և որոտումով. անանկ ծովը խռովեց, որ ալիքները լաստին վրայէն անցնելով բոլոր բաները տարին ծովը։

Այս միջոցիս մէջ երկուսն ալ կայմին փաթթըվեցան ուժով մնացին, որպէս զի ալիքները զիրենք չի տանին. թէպէտ երբեմն երբեմն ալիքները կուգային գլխըներէն բարձր վերաներէն կանցնէին։ Հուսկ յետոյ տկար լաստը երկար ատեն չդիմացաւ սոսկալի

ալիքներուն դէմ․ կապերը թուլ-
ցան որ բռներ էին գերանները,
բոլորը ցրուեցան իրարմէ ։

Ողորմելի մարդիկ, տես ինչ
բան եկաւ գլուխնին ։ Գերին կը-
ջանար որ լողալով ցամաքն ել-
լէ․ իսկ Ռոպէնսոն գերանի մը
վրայ փաթթըված, երբեմն ծո-
վին անդունդը կիջնէր, և եր-
բեմն ալիքներուն վրան կելլէր,
խեղճը անանկ խռոված էր որ
ոչ բան կըտեսնէր և ոչ կըլսէր ։
Սաստիկ ուժէն տկարացեր էր
ողորմելին, արդէն խելքն ալ
կորուսեր էր․ սոսկալի աղաղա-
կեց, ու մէկէն զինքը թաղված
գտաւ ահագին մեծ ալիքի մը
մէջ, որ իրեն գերանն ալ առաւ
տարաւ ։

Ծ տվաւ որ հաւատարիմ
գերին միշտ քովէն չէր հեռա-
նար․ որ եթէ ուզենար շատոնց
կըհասնէր ցամաքը ։ Երբոր տե-
սաւ թէ Ռոպէնսոն ծովին տա-
կը կերթայ անշարժ առանց լո-

ղալու, հասաւ վրան բռնեց ձախ թևէն, կաշխատէր որ ջրին տակը չերթայ. վերջապէս սաստիկ ուժ տալով յաջողեցաւ, որ քանի մը րոպէէն ետև ցամաքը բերաւ հանեց Ռոպէնսօնին մարմինը՝ անշարժ ամենևին ողջուե̃ նշան մը չունենալով։

Պերին ցամաքին վրայ երկընցուց տէրն ու յուսահատեցաւ, սրտին կսկըծուն վըրան ընկաւ բարձր ձայնով կըպօռար. երբեմն կըշարժէր և երբեմն կըշփէր բոլոր մարմինը, ետքը բերանը բերնին դրաւ, որ իր շունչը անոր հաղորդելով շունչ կուտար իրեն։ Ի՞նչ սոսկալի կսկիծի մէջ էր խեղճ գերին։ Վերջապէս յանկարծ ողջութե̃ նշան մը վրան տեսնելով սիրտ առաւ անպատմելի ուրախութե̃։ Այնչափ շարունակեց այն բաներն որ մինչև Ռոպէնսօնին զգայութի̃ը վրան եկաւ։ Նայիս աչքը բացաւ, ես ո՞ւր եմ հարցուց տկար և ողոր-

մեկի ձայնով մը ։ Պատասխանեց գերին լալով թէ սիրելի տէր իմ, ահա իմ գիրկս ես ։ Այն տեղը անանկ խեղճ պատկեր մը ձևացաւ՝ որ կրկտըրտէր մարդուն սիրտը ։ Ռոպէնսոն շնորհակալ ըլլալով գերիին՝ դուն իմ ազատիչս ես ըսաւ ։ Իսկ գերին տեսաւ որ տէրն ողջընցաւ, ուրախութէն խելքը գլխէն գնաց ։

## ԻԵ. Պէպուած.

Ռոպէնսոն ահա այսանգամ ալ ազատեցաւ մեռնելէն ։ Նոյն գիշերը գերին տեղ չինեց տաղաւարին տակը տարաւ պառկեցուց զինքը, բոլոր գիշերը քնացաւ մինչև 'ի լոյս ։ Արթնցաւ որ ուժ առեր է . շնորհակալ եղաւ Այ, որ զինքը պահեց կենդանի, և առողջ ։ Իսկ փոթորիկը բոլոր գիշերը տևեց ։ Ռոպէն-

սօն անհամբերութիւն կընայէր որ աղէկ մը լուսնայ ու տեսնէ թէ ինչ եղաւ նաւը ։ Արեւն որ կելլէր նայեցաւ Ռօպէնսօն՝ տըրտմութիւն տեսաւ որ նաւն աներեւոյթ եղեր է ։ տախտակները ասդին անդին ցրւած են ծովուն քովերը, հասկըցաւ որ ալէկոծութիւնը խորտակեր է նաւը ։ Ասանկ որ տեսաւ՝ մխիթարւելով գովեց ըրած ջանքն, որ առանց ծուլութեան այնչափ բաներն ազատեր էր ։

Երանի՜ այն մարդուն որ իմաստութիւն և խոհեմութիւն կըրվարէ իր գնացքը և ամէն դիպուածի մէջ կրնայ օգուտ մը հանել ։ ինչպէս որ Ռօպէնսօն այս դիպուածին մէջ իրեն ընկածն ըրաւ խոհեմութիւն առանց պակասութեան ։ Այս բանը խրատ ըլլայ տըրտընջողներուն, որ տժգոհութիւն իրենց նեղութիւնը աւելի կըդառնացընեն ։

Ռօպէնսօն ու գերին աշխատեցան բոլոր նաւուն տախտակները ժողվեցին ծովուն քով դի-

զէցին․ գիտնալով թէ ատենով
ամէն մէկը կրնան իրենց ծառայ-
ել։ Այս գործքը լմընցնելէն
ետև կարգի դրին իրենց բանն
որ հետևաբար պիտի ընէին․
Նախ և առաջ կուզէին որ հա-
նած բաները տանին բնակարա-
նին մէջ, բայց իրենց վնասակար
երևցաւ այս բանս․ որովհետև
ամէն մէկ անգամ երթալու ա-
տենը՝ մնացած բաները ձգէին
հեռանային պիտի անկէ երկար
ատեն, կրնար ըլլալ՝ որ թշնամի-
ները գային տիրէին այն զէնքե-
րուն․ ուստի Ռոպէնսոն կարգա-
ւորեց՝ որ մէկը առտուանց սպա-
սէ մէկալը բաները կրէ, ընկերն
ալ իրիկվան տանի այս կերպով։
Թնդանօթը լեցուց պատրաստե-
լով ծովին քով դրաւ շտկեց դէպ
'ի ծովը։ Քովն ալ կրակ վառե-
ցին․ ով որ պիտի հոն սպասէր,
պէտք էր որ զգուշութ̃ նայի
կրակը․ պատրոյգն ալ բռընկցու-
ցին թնդանօթին քով դրին, որ-

պէս զի պատրաստ գտնուի նետելու՝ երբոր հարկը պահանջէ, կամ թէ երբոր մէկը հոն մօտենայ։ Ռօպէնսօն առջի ճամբորդութենէն ընելով սկսաւ բաները կրել. և որպէս զի հագած աղէկ լաթերուն վնաս մը չի գայ՝ հանեց զանոնք, նաւավարի լաթ հագաւ. և փոխանակ հին զէնքերուն՝ մէջքը զարկաւ մեծ դանակ մը, և երկու լեցուցած ատրճանակ (փիշտով։)

Նախ և առաջ տարաւ իրեն սայլովը տակառ մը վառօդ և ուրիշ պիտանի բաներն, որ կը վախնար խոնաւութենէ, չըլլայ թէ հոն մնալով թրջին։ Իսկ շունը ոչ երբեք իրմէն կը զատվէր, սկըսաւ ընկերութիւն ընելով հետը երթալ։ Ռօպէնսօն ալ կապեց շունը սայլին առջին՝ որ քաշելով կօգնէր առաջ տանելու։

Որովհետև եւրոպայի շները կրթած են այսպիսի բաներ ընելու, այս շունն ալ մէկէն սկսաւ

քաշել անանկ՝ որ որպէս թէ բուն քաշօղ կենդանին է ։ Նաև կապոց մը բան ալ բերանը բռնէր կրտանէր, ըստ որում առաջուց սորված էր ։

Ի դարձին Ռօպէնսօն բոլոր լամաները առաւ հետը բերաւ որ վրանին քան բեռցընէ ։ Ասոնք 7 հատ էին, որ յիսունական հօխայ բեռ կրնային բերել, զարմանալի բան էր, որ ամէն անգամ այնչափ ծանրուն̃ կըքերէին առանց հոգնելու ։

Այսչափ բանը բնակարանին մէջ չի սղմելով պէտք եղաւ որ քովի համբարանոցն ալ լեցընեն, և բակին մէջ ալ զետեղեցին ։ Ութ օրուան մէջ բոլորը կրեցին բաց'ի տախտակներէն, որ ծածկի տակ դրին և խիտ մացառներուն մէջ շարեցին ։ Իսկ այծը դրին լամաներուն գոմին մէջ, որ բնական ընտանուն̃ ունենալով անոնց հետ խիստ աղէկ կերթար ։

Ո՛րչափ մեծ զբաղմունք ունեցան հիմա, որ առաջ չունեյին. հազիւ թէ կրնային որոշել թէ նախ ո՞ր բանն ընեն, և ո՞ր բանը շտկեն: Սակայն Ռօպէնսօն կարգաւոր բան ընելու սորված ըլլալով, շուտ մը որոշեց ամէնէն աւելի հարկաւոր բաներն ընել. և քիչ հարկաւորները ետքը ձգեց: Ամէն բանէն հարկաւոր իրեն կերևնար, որ մէկ տեղ մը շինէ, որ դուրս մնացած բաները ծածկի տակ առնէ, ու ապահով պահէ: Ուստի առաջ կամեցաւ հիւսնութի̃ ընել և տախտակները շտկել. Թէպէտ երկուքն ալ արուեստին տեղեակ չէին:

Բայց ի՞նչ դժուարութի̃ կրնար ըլլար Ռօպէնսօնին պէս ճարտարամիտ մարդուն, որ ամէն հարկաւոր բաները ձեռքէն կուգար: Ո՛րչափ մեծ աշխատանք և դժւար բան ըլլար՝ որ տեղեկութի̃ ալ չունենար այն բանին, իրեն

առջին խաղկընելիք էին․ որ առանց օգնութեան գեղեցիկ յաջողութիւն գլուխ կըհանէր։ Զարմանալի արագութիւն փայտերը կտրեց, գերանները ու տախտակները տաշեց․ պատերը շինեց շտկեց վրայի ծածկը շինեց նախ տախտակով, յետոյ քօքօյի տերևով ծածկեց։ Ահա պզտի շէնք մը շինեց լմընցուց, որ գեղի տըներէն աղուոր եղաւ։ Ռօպէնսօն նաւին պատուհանները փրցուցեր էր, որոնք յարմարցուց դրաւ իր շէնքին․ իսկ ապակի (Ճամերը) մեծապէս զարմացուցին Ռօպէնսօնին միտքը, թէ ինչպէս կըլլայ, որովհետև բնաւ չէր տեսած․ բայց փորձելով հասկըցաւ թէ որչափ գեղեցիկ և պիտական բան էին։

Այս գործքս կատարելէն ետև՝ բաները դրան մէջը կարգաւորեց․ մտածեց որ իր առաջւան շինած բերդին ճամբայ մը շինէ, որ առանց անոր ոչինչ էր․

ուստի միտքը դրաւ որ դուռ շի-նէ, ու շարժական կամուրջ մը դնէ, որովհետեւ ամէն բան առա-տապէս ունէր այս գործքիս ծա-ռայելու համար, գամ, երկաթ, շղթայ, կղպաք, եւն. ասոր հա-մար շուտով այս գործքիս ալ ձեռք զարկաւ։

Ուստի երկուքը միատեղ կաշ-խատէին դուռն ու կամուրջը շի-նելու. ետեւ լուսամուտ շինեցին պատին և պատնէշին դրանը հա-մեմատ։ Ասոնք կարգի դնելէն ետեւ կանգնեցին շարժական կա-մուրջը դրան դիմացը, վրան ալ ծածկոց շինեցին։ Այսպէս կա-տարելէն ետեւ պատնէշին վրան թնդանօթներ շարեցին. երկու-քը աջ կողմը շտկեցին, երկուքը ձախ կողմը. երկուքն ալ բերդը պաշտպանելու համար շտկեցին։ Անկէ ետեւ բոլորովին ազատե-ցան վախէ 'ի կողմանէ վայրենի մարդկանց. ուր միայն մէկ դուռ մը կար ելլելու մտնելու այսպի-

սի հանգստութիւն ։

Հնձելու ժամանակն ալ եկաւ, Ռօպէնսօն սուր մանգաղ մը ա-ռաւ որ նաւէն հաներ էր, սկսաւ կտրել մայիզը, և ժողվեց, նաև գետնիխնձորն ալ հանեց խիստ մեծ դիւրութիւն նոր գործիքնե-րովը · շատ զըւարճութ այս բա-ներս լմընցուց առանց դժուարու-թեն ։ Ցետոյ շինեց երկու գաւա-զան մայիզը ծեծելու համար, որ զատեց յարդն ու երկու ա-մանի մէջ լեցուց պահեց ։

Թէպէտ Ռօպէնսօն նաւէն շատ պախսիմաթ հաներ էր, բայց իրեն տարեկան հացը պատրաս-տեց, ինչպէս որ հարկաւոր էր · ուստի ուզեց փորձելով հաց շի-նէ · և որովհետև նաւէն երկան-քի քար էր հաներ, մայիզը ա-ղաց ալիւր ըրաւ մաղեց ու խմոր շինեց, փուռը դրաւ եփեց հաց ըրաւ խիստ պատուական ։ Ցետոյ տօպրակ մը շինեց մէջը դրաւ պահեց ։

Ան այսպէս երկու տեսակ հաց ունէր. մէկն էր հաճարի ալիւրէ, որ նաւէն ազատեր էր, մէկալն ալ էր մայիզի ալիւրէ, որ է մորացորենի նման, բայց առջինը աւելի համով էր: Այս բաներըն ըրաւ պատրաստեց անձրևները չըսկըսած: Ռոպէնսոն միտքը դրաւ որ հաճար ալ ցանէ, որ իրեն աւելի ախորժելի էր. ուստի գերիին օգնականութ՟ը շատ դաշտեր հաճար (չաւտար) ցանեց մայիզին տեղը՝ մինչև հացի կարօտ չի մնաց. և հոն տարին երկու անգամ առատապէս կըհասցընէր:

Այս բաներուն վրայ նայելով Ռոպէնսոն ուզեց որ երկրագործու՟է ամէն գործիքներըն ունենայ, և այս գեղեցիկ արուեստ հոն լաւ ծաղկեցընէ: Որովհետև ամէն բան ունէր, բայց աղէկ բրիչ չունէր. գերին կարծր փայտէ շիներ էր, բայց այն հողին աղէկ բրիչ պէտք էր. անոր համար

ծկսաւ դարբինի խանութ մը շինել, որ ուզած գործիքները կարենայ շինել։

Անձրևներն որ սկսան՝ Ռօպէնսօն ծովէն հանած տախտակներով դարբինի խանութը կատարեց, ու այն թաց եղանակին մէջ բրիչը և ուրիշ պէտք եղած բաները շինեց. նաև իր ուժին համեմատ սայլ մը շինեց, որ բաները բառնար կրտանէր հեռու տեղեր ալ կաշխատէր։ Որովհետև հօն ձի կով չի կար, անանկ շինեց սայլն որ երկուսին ուժովը դիւրին կրշարժէր, և ուզածներուն պէս կրգործածէին։

Ռօպէնսօն անպատմելի կուրախանար այս յաջողուեց վրայ. մանաւանդ գտուածներուն, որ ուզած բաները կրհնարէր. ինչպէս հին ատենը նոր բաներ որ կրհընարէին՝ մեծ իմաստուն կրսեպվէին, որոնք Ռօպէնսօնին շինած բաներէն պարզ էին. մանաւանդ շինած սայլը անանկ պիտուական

բան էր, որ հին ատենին ըլլար, մեծ բան էր, մինչև գտնողնե-րուն մեծային պատիւ կուտային: Զոր օրինակ կառքը (արապան) փիւնիկեցոց մէջէն Դափնի անունով մէկը գտաւ. այնչափ մեծ բան համարեցան որ երկնային էակ ըրին իրեն և որդի երկնից:

Թէպէտ լամաները աւելի բեռ կրելու յարմար էին քան թէ սայլ քաշելու, սակայն Ռօպէնսօն անանկ կրթեց որ ամէն բանի կըծառայէին յաջող, ինչպէս հոս եզն ու ձին կաշխատին:

Ընծրեան որ կտրեցաւ ցանեցին հաճար, գարի ոլոռն, որ 5 ամիսէն ետև տասնապատիկ աւելի պտղաբերեցին, որ իրենց շատ էր. բայց խոհեմութիւն մտածելով աւելի կըպահէր, որ չըլլայ թէ դիպուած մը պատահի ու չըլլայ: Ուստի որոշեց որ համբարանոց մը շինէ, որ վեց ամիսէ վեց ամիս հնձեզէն կըլեցընէր ու կըպարպէր: Ռօպէնսօն ամէն

կերպ աշխատանացը յաղթեց, և բոլոր ուզած բաներն ըրաւ։

Իսկ այծը յղի ըլլալով երկու ձագ ծնաւ. շունը պահապանի պէս գիշերը զիրենք կընայէր. Փօլ թութակը իրենց հետ ժուռ գալով կըխաղար։ Իսկ լամաները առաջվաններէն շատ պիտուական եղան. վասն զի կաթէն կըշինէին մածուն, եղ, և պանիր. դաշտին մէջ ալ միշտ կաշխատցընէին։

Ռօպէնսօնին երջանիկ կեանքը ուրիշ պակսութի մը չունէր, միայն կըփափաքէր որ ծնողքը տեսնէ, և մէկ քանի ընկեր ալ ունենայ. որովհետև երկու հոգի ըլլալով, եթէ մէկը մեռնէր, մէկալը ամէն մարդկային ընկերութենէն զուրկ ըլլալով խիստ ողորմելի կըլլար։ Սակայն Ռօպէնսօն զգուշանալով մեղք կըսեպէր ուրախութը վրայ դառնութի լեցընել այսպիսի մտածմունքներով։ Այլ այսպէս կըսէր ինքնիրեն. այն ստեղծօղ

տէրն որ մինչեւ հիմա զիս հոգացեր իր անհուն բարութ՟ը, ասկէ ետքն ալ կրնայ հոգալ։

Այսանկ խորհելով բոլոր օրերը ուրախութ՟ գոհ կանցընէր առանց այլայլութե՟։ Մեծապէս կըզըւարճանար Ներսէսն հոգւոյն հանգըստութե՟ը վրայ. դուրսէն ալ կուրախանար, որ ոչ պակասութի՟ մը, եւ ոչ տեղէ մը վախ ունէր. կատարեալ երջանիկ էր իւր ուզածին պէս։

ԻԶ. Գլուխ.

Ռոպէնսօն այսպէս զբաղելով հանած բաներուն հետ՝ ամէն օր նոր նոր գործքեր կըհնարէր և զանազան բաներ կըշինէր այն գործիքներով։ Ուստի ասանկ փորձեր ընելով գրեթէ ամէն արուեստի բան շինեց, և ամէն արուեստաւորի կատարելու՟

ունէր • զոր օրինակ հիւսնութիւն կընէր, դարբնութիւն, դերձակութիւն (թերզութիւն), կօշկակարութիւն, հացագործութիւն, պարտիզպանութիւն, ձկնորսութիւն, որսորդութիւն, բրուտութիւն, ևն:

Նմանկ յաջող և ճարպկութիւն այս գործքերս կընէր, որ քիչ ժամանակին մէջ շատ կերպ կերպ բաներ հնարեց պիտուական և գեղեցիկ, որ Եւրոպայի մէջ վարպետ մարդիկ միայն կրնային ընել: Եւ այսպէս այս մարդիկ շարունակ աշխատելով թէ՛ իրենց մարմիններն առաւելապէս յարգմար եղան գործելու, և թէ հոգիներն և խելքերնին աւելի ուշիմութիւն առատացան, և օգտակար գործքերով օրէ օր կատարելութեան հասան: Ասկէ յայտ է թէ ամէն մարդ ունի միակերպ յարմարութիւն մը արուեստի • սակայն հետզհետէ կրթըվելով բան կըսորվի, ու հարկաւ առաքինի քաջ և խելացի կըլլայ:

Վեց ամիս շարունակ զուար-ճալի` գործքեր շինելով զբաղեցաւ, բայց գերին ամենեւին չի համարձակեցաւ ըսելու թէ երբ պիտի երթանք իմ հայրենիքս ։ Սակայն շատ անգամ երբոր ձեռքի գործքը կըկատարէր` կելլէր լեռանը վրան չորս դին կըդիտէր և ծնած կղզիին կողմը նայելով սրտանց կըհառաչէր, ու կուլար իր ողբալի վիճակին վրան, որ հօրմէն զատվեր էր, ու կրնար ըլլալ, որ ալ չի տեսնէ ։ Իսկ Ռօպէնսօն իր կողմանէ ամենեւին բան չէր խօսէր, որովհետև ատեն չունէր անոր փափաքը լեցընելու ։ Ուստի համբերեց մինչև որ այս պէտք ըլլալու բաները բոլոր կատարեցան, որ նոր վիճակին և նոր եղանակ կենացը համար աշխատեր շիներ էր ։

Երբ պէտք եղած օգտակար բաները կատարելէն ետև` Ռօպէնսօն առաջարկեց գերիին որ ուրիշ նաւ մը շինենք, ու եր-

Թանք հայրդ փնտռենք ։ Այս բանս որ լսեց գերին այնչափ ուրախացաւ, և մեծապէս պարտաւոր ճանչցաւ զինքը Ռօպէնսօնին ։ Միւս առտու մէկէն նաւին շինելն սկսաւ․ որ կտրուկ կացիններուն և ուրիշ գործիքներուն օգնութեամբ քիչ ժամանակին մէջ թէ՛ աղէկ և թէ դիւրին կերպով շինուեցաւ նաւը՝ առաջուանէն շատ աղէկ ։

Մ՝էկ առտու մը Ռօպէնսօն գործքի հետ ըլլալով խրկեց գերին ծովուն քով, որ կրիայ բերէ․ վասն զի երկար ատեն էր որ չէր կերած ։ Քիչ մը անցաւ նայիս վազելով դարձաւ եկաւ խռոված՝ շունչը հատած վախէն և վազելէն․ մինչ զի հազիւ կրցաւ թոթովելով զրուցել, թէ ահա՛ եկան․ ահա՛ հոս են ։ Ռօպէնսօն զարհուրելով հարցուց մէկէն թէ ինչ կըխօսիս ։ Պատասխանեց գերին, թէ ո՛վ տէր իմ, ո՛վ տէր իմ, մէկ, երկուք, իրեք,

վեց քանօդ նաւ էն . այնչափ
սարսափած էր որ մինչև 'ի վեցը
չի կրցաւ համրել ։ Ռօպէնսօն
վազեց բնակարանին վրան ելաւ
տեսաւ որ գերին չէ խաբված .
ահա՛ վեց նաւ լեցուն լեռան
մարդիկ կուգան . և մօտեցեր
էին ցամաքին ։ Շուտով վար ին-
ջաւ , ու սիրտ տուաւ գերիին որ
կըդողար . և հարցուց , թէ որ
պատահի թշնամիները վրանիս
գան՝ ամէն ուժդ թափելով
հաւատարմութ̃ը պիտի ծեծկը-
վի՞ս մինչև 'ի մահ ։

Պատասխանեց գերին թէ ա-
րիւնովս և կեանքովս կեցեր եմ ,
և անկէ ետև ժամանակ անցնե-
լով կամաց կամաց վախն անցաւ
սիրտ առաւ , որ ծեծկըվի ։ Խիստ
աղէկ ըսաց Ռօպէնսօն , հիմա
պէտք է ջանալ որ արգիլենք վայ-
րենիներուն գարշելի տօնախըմ-
բութ̃իը ; և չի թողունք կատա-
րելու ։ Ես քեզ կըհասկըցնեմ
կըսէր ընելիքս երթալու ատենս,

երթանք շուտով ատենը չէ խօ-
սելու, պէտք է ջանանք։ Նոյն
կէտին մէկ Թնդանօթը բերդին
վրայէն վար առին դրին սայլին
վրան, ու անիւները ամըրցու-
ցին, վեց հրացան լեցուցին և
չորս ատրըճանակ, և երկու սու-
սեր. ատոնց կէսը մէկին առաւ,
կէսն ալ մէկալն առաւ մէջքը
խօթեց. Նմանապէս հրացան-
ներն ալ կռնակնին առին, բա-
ւական վառօդ և գնտակ առին
հետերնին, քաշեցին Թնդանօ-
Թը հետերնին կըտանէին ցամա-
քէն. և ամէնային պատերազմա-
կան պատրաստութ̃ դաշտին ճամ-
բայէն կերթային։ Երբոր շինած
կամուրջէն անցան քիչ մը հան-
գիստ առին։ Գերին մտաւ բեր-
դին մէջն ու կամուրջը վերցուց,
դուռն ալ ամըրցուց։ Ետքը չուա-
նէ սանդուղով ելաւ եկաւ տի-
րոջը քով։ Ռօպէնսօն տեսնելով
Թէ այս զգուշուի̃ը խիստ հար-
կաւոր էր զանց չըրաւ. վասն զի

եթէ պատերազմը չի յաջողէր կասկած ունէր որ չըլլայ թէ թշնամիները գային տիրէին բերդին ։

Այս միջոցս Ռօպէնսօն կըպատմէր գերիին թէ ինչ պիտի ընէր. կըսէր թէ լեռանը ետեւէն պարտինք խիտ անտառներուն մէջէն երթանք, որ չի տեսնեն թշնամիները. ետքը մտնենք կառգաւ ծառերուն մէջ, որոնք գրեթէ մինչեւ ծովին քով կըմօտենային. եւ այսպէս կըմօտենանք վայրենի մարդկանց առանց երեւնալու. երբոր մօտ կըհասնինք մէկէն թնդանօթը կընետենք գլուխներէն վեր. բարբարոսները վախերնուն կըձգեն իրենց որսն ու կըփախչին նաւերուն մէջ ։ Գերին խիստ հաւնեցաւ այս խորհուրդիս. Ռօպէնսօն երթալով այսպէս կըսէր, թէ մեզի բաւական է որ ազատենք խեղճ գերիները՝ որ պիտի ուտեն, առանց կաթ մը արիւն թափելու ։

Սակայն եթէ այս ըստածիս
հակառակն ըլլայ, անատենը ա՛-
ըսելի պէտք է մեր ջանքը մեր քա-
ջութի̃ը յայտնենք կորիճութի̃՝
առանց վախնալու. որպէս զի
եթէ վտանգ հանդիպի՝ դէմ
դնենք ծեծկըվինք բարի դիտա-
ւորութ̃ի։ Իսկ ամենադէտն Ա̃Ծ
երբոր կըտեսնէ թէ վտանգի մէջ
պիտի իյնինք, կըպահէ մեր կեան-
քը եթէ օգտակար է։ Եւ այս-
պէս եղիցի կամք տեառն օրհ-
նեալ։ Այս խօսքերս խօսելէն
ետև իրար գրկեցին, և իրարու
երդում ըրին որ մինչև ետքի կա-
թիլը արեան թափեն և իրարու
օգնեն։ Երբոր հասան առանց
ձայնի մօտ տեղը, քիչ մը հան-
գիստ առին. Յօդէնսօն կամաց
մը ըսաց դերիին որ գետնին
վրայէն սողալով երթայ մինչև
ծառին ետին, որ խիստ մօտ էր
անոնց. որպէս զի աղէկ մը դի-
տէ հասկընայ թէ թշնամիները
ինչ կընեն։ Գնաց հոն ինչպէս

պէտք էր գիտեց նայեցաւ որ վայրենիները կրակին չորս դին շարված էին. ու գերիի մը ոս-կորները կրկրծէին, որ մօրթեր միսը կերեր էին : Նաև քիչ մը հեռուն մէկ կապած մարդմ՝ ալ գետինն ընկած էր, որ էր մօ-րուքաւոր և ձերմակ, ան ալ պի-տի մօրթէին ուտէին :

Ռօպէնսօն երբոր այս բանե-րը լսեց գերիէն սիրտը կտըրտե-ցաւ, մանաւանդ լսեց որ ձեր-մակ էր կապած մարդը՝ շուտ մը գիտակը հանեց, որ նաւէն հա-ներ էր. գնաց ծառին ետին դի-տեց տեսաւ՝ որ Ուրբաթ գերի-ին ըսածը իրաւ է. և 50 մարդա-կեր կային որ կրակին չորս դին նստած էին, և որոշ տեսաւ որ կապած գերին էր եւրոպայի : Այնչափ սիրտը շարժեցաւ որ չէր կրնար զինքը բռնել, արիւնը կեփէր, թէ որ սրտին տաքութը հետևէր՝ մէկէն առանց մտածե-լու պիտի երթար մարդակերնե-

ներքուն հետ զարնըվէր, ու արիւնը թափէր. բայց գիտէր որ կոյր կըրից շարժմունքը մտաց դէմ ըլլալով միշտ վնաս կըբերէ և ետքը չար կըլլայ անխոհեմութեան։

Որովհետև եղած տեղերնին խիստ մօտ էր և մորմենին կըդոյէր զանոնք՝ որուն ետին մըտան, Թնդանօթն ալ բերին հոն դրին, և արուեստով շտկեցին, որ ռումբը գլխըներուն վրայէն անվնաս անցնի մարդակերներուն, և սորվեցուց գերիին ալ թէ ինչ պիտի ընէ։ Երկու հրացանը գետինը դրաւ մէկը ձեռքն առաւ գերիին ալ այնպէս ըրաւ. ետքը Թնդանօթին մօտեցաւ ձեռքը կրակ, տվաւ կրակն ու ետ փախաւ։ Երբոր Թնդանօթը բարձրէն նետվեցաւ՝ մարդակերները բոլոր միատեղ գետնին վրայ բըռվեցան ընկան, որպէս թէ մէկէն մեռած ըլլային։ Ռօպէնսօն ու գերին՝ որ կըդիտէին եղած բաները, չգիտելով թէ ինչ պիտի

ըլլայ, իրենց կողմանէ պատ-
րաստուեցան որ պատերազմին,
թէ որ պէտք ըլլայ։ Նոյն կէտին
մէջ մարդակերներուն խելքը
գլուխնին եկաւ վեր ցատկեցին,
որոնք որ աւելի վախկոտ էին ի-
րենց նաւերը վազեցին փախան.
և որոնք որ կտրիճ էին զէնքեր-
նին ձեռք առին որ կռուին։

Ասոնք միայն թնդանօթին
ձայնէն սաստիկ զարհուրեցան,
առանց տեսնելու կրակին ու ռում
բը. բայց առջի վախը չի մնաց
իրենց քով, աչքերնին չորս դին
տնկեր կընային, ամենևին վա-
խու բան մը չի տեսան. ուստի
ապահովութ̃ պատրաստըլուեցան
կռուելու. Նաև փախչողներն ալ
մէկէն ետ դարձան, ու սկսան
զարհուրելի կերպով ոռնալու
ձայներ հանել. և պատերազմի
պար խաղալով զէնքերն ալ ձեռ-
քերնին առած կատաղութ̃, կը-
շարժէին զանազան ձևերով։

Ռօպէնսօն անանկ կեցաւ ապա-

ռեց, մինչև որ խաղը լմնցաւ․ բայց զարմանալով դիտեց, որ մարդակերներուն խումբը ոչ միայն առջի եղած տեղերնին եկան, այլև իրենցմէ երկու հոգի վազեցին որ Եւրոպացի գերին մորթեն, ու զուարճանան․ բայց անկարելի եղաւ իրենց այս բանս ընելու․ վասն զի Ռօպէնսօն նայեցաւ գերիին ու ցած ձայնով ըսաց, դուն աջ կողմէն, ես ալ ձախ կողմէն կոխենք մեր կարողութիւնը․ երկուքը միատեղ հրացաննին նետելնուն պէս նայեցան որ ձախ կողմէն 5 հոգի ընկան, և աջ կողմէն 3 հոգի միայն ընկան․ բայց աջ կողմինները մեռած էին, ձախ կողմինները վիրաւորած էին․ Մնացածներն անանկ սարսափեցան, որ փախչելէն 'ի զատ՝ ուրիշ բանի չի նայեցան։ Ուստի ոմանք մէկ դի փախան, ոմանք ալ մէկալ դի, ամէնքը սոսկալի ձայներ հանելով հալածեցան։ Ռօպէնսօն ծառե-

րուն մէջէն դուրս ելաւ թուրը ձեռքը. որպէս զի երթայ շուտով ազատէ եւրոպացի կապած գերին. բայց զարմանալով տեսաւ՝ որ քանի մը հոգի թշնամիներէն յանկարծ միացան, ու կամեցան նորէն դէմ դնել. ուստի պէտք եղաւ որ Ռոպէնսօն ու Ուրբաթ գերին հրացանը նետեն անոնց վրայ։ Նայիս 2 հոգի ընկան անոնցմէ և շատը վիրաւորած փախան զարհուրելի աղաղակով. այս միջոցիս մէջ 3 հոգի ալ ընկան փախչողներէն, բայց ողջ էին։

Ռոպէնսօն ձեռքի հրացանը ձգեց ու լեցուն հրացանը առաւ. և գերիին ըսաց որ հիմա դուրս ելլենք երևնանք թշնամիներուն. երկուքն ալ յայտնի դուրս ելան, Ռոպէնսօն վազեց կապած մարդուն վրայ ազատելու համար՝ որ զոհ պիտի ըլլար։ Երբոր մօտեցաւ անոր՝ նայեցաւ անդին որ ոմանք փախչողներէն առաւել

կատաղի ըլլալով՝ երբոր տեսան իրենց թշնամիները կեցան հոն մէկտեղեցան որ ծեծկըվին. ուստի Ռօպէնսօն զանոնք նորէն ցցուց Ուրբաթին, և ըսաւ որ առաջ երթայ նետէ հրացանը. անալ նետեց մէկ հոգի մը ձգեց։

Նոյնատենը Ռօպէնսօն դանակը հանեց կտրըտեց չուանները, որ կապեր էին խեղճ գերիին ձեռքերն ու ոտքերը։ Հարցուց իրեն ինկլիզերէն և նեմցէյերէն թէ դուն ո՞վ ես։ Այն խեղճ ողորմելին ալ պատասխան տվաւ լատիներէն, թէ Սպանեօլ Քրիստոնեայ եմ։ Սակայն վերջի աստիճանի տկար ըլլալով այլ չի կրցաւ խօսելու։ Ռօպէնսօն առաջուց հոգալով հետը լաւ գինի առեր էր, որ եթէ յանկարծ զարնըվէր՝ կըրնար իրեն պէտք ըլլար։ Այս գինիէն խմցուց Սպանեօլին, որ շուտմը ուժ առաւ։

Երբոր մարդը աղէկ մը զօրացաւ՝ Ռօպէնսօն տվաւ իրեն սուր

և զէնք, որ իրեն օգնէ եթէ նորէն ծեծկըվին · իսկ Ուրբաթին ալ պատուիրեց, որ հրացանները լեցընէ։ Սպանեօլը զէնքերը ձեռքըն առածին պէս կատղած գազան դարձաւ, ու մէկէն վազեց Թշնամիներուն վրան յանկարծ երկու հոգի զարկաւ մեռցուց։ Ուրբաթն ալ հրացանին մէկն առաւ վազեց. երկուքը միատեղ գնացին Թշնամիներուն վրան, բայց իրարմէ զատ։ Սակայն սպանեօլը կորիճ մարդակերի մը վըրայ հասաւ կըծեծկըվէր։ Ուրբաթն ալ մէկալ կողմը հրացանը պարպելէն ետև չարաչար տաքցած սուրը ձեռքը կըծեծկըվէր քանի մը հոգիի հետ, որոնցմէ մէկ քանին զարնըվեցան, ոմանք ալ ծովը նետվեցան, որ լողալով քանօղին մէջ մտնեն փախչին. Մնացածն ալ անտառներուն մէջ պահվեցան։

Իսկ սպանեօլը անանկ տաքցած կըծեծկըվէր, որ այնչափ

տկարութե՟ը մարդակերին հետ . սաստիկ կռուեցաւ՝ երկու անգամ սրովը անոր գլուխը վիրաւորեց չարաչար : Բայց այս վերքը անանկ կատղեցուց Թըչնամին՝ որ իրեն քարէ շինած ծանր դանակովը վազեց՝ սպանեօլին վրայ ընկաւ նեղը ձգեց . Թէպէտ անալ սաստիկ դէմ դնելով շատ զինքը պաշտպանեց : Բայց վերջապէս այս վայրենի կատղած մարդուն հետ գլուխ չի կրցաւ ելլելու , մինչև զինքը տակն առաւ ու սուրը ձեռքէն առաւ որ պիտի մեռցըներ . յանկարծ Րօպէնսօն տեսաւ , ու նոյն կէտին պարպեց հրացանը լեռան մարդուն գլուխը զարկաւ խորտակեց :

Սպանեօլը վեր ցաթկածին պէս առաւ լեցած հրացանն՝ ու նոյն կատաղութ՟ Ուրբաթին հետ միատեղ վայրենիներուն ետևէն ընկաւ , որոնք անտառը փախած էին . որովհետև շատը ջարդը֊

ված էին՝ քիչը մնացեր էր։ Ռօպէնսօն ուզեց որ մէկէն չերթայ պատերազմը, կենայ ու դիտէ փախչողներուն շարժմունքը, որոնք քանօդներուն մէջ լեցվեցան փախան։ Այնատենը եկան հոն հասան երկու ծեծկըվողները, և պատմեցին Ռօպէնսօնին թէ անտառը փախչողներուն մէկը չի մնաց բոլորը ջարդեցինք։

Երկուքը միատեղ ուզեցին որ շուտ մը մնացած քանօդին մէջ մտնեն ու նաւով փախչողներուն ետևէն հասնին մեռցընեն, որ առագաստը բացեր հեռացեր էին. բայց Ռօպէնսօն զանոնք արգելեց։ Սիրելի՛ք ըսաց, բաւական է այսչափս. կարծեմ չափէն աւելի արիւն թափեցինք. թողուցէ՛ք որ ողջ մնան, որոնք ասկէ ետքը չեն կրնար մեզ վնաս մը բերել։

Պատասխանեց Ուրբաթ գերին. թէ որ մենք ազատ թողունք զանոնք, նորէն կըդառնան

սաստիկ ուժով մեզի հետ կըզար-նըվին ։ Կրկնեց Ռօպէնսօն բա-րեկամաբար կոնակը ծեծելով, և սպանեօլը անոր ցցընելով թէ հիմա առտըվընէ աւելի չէ՞ մեր զօրութիը ։ Մենք հիմա կարող ենք դէմ դնել մեր տկար թշնա-միներուն մեծ խումբին. սակայն եթէ կամենանք, կրնանք սպա-նել այս փախչօղ թշնամիներուն. երբեմն պէտք է դիտել, որ յան-կարծ չիգան ։

Արդարև ահա Ռօպէնսօնին իմաստուն և մարդասէր գործքը, վասն զի գիտէր որ հարկ չեղած տեղը մարդ մեռցընելն է անգը-թութի. Թէպէտև տարակոյս չունէր որ այս թշնամիները թէ որ կարողութի ունենային՝ զի-րենք չարաչար կըմեռցընէին. և անանկ մոլորութե մէջ էին որ մեծ բարեգործութի կըսեպէին մեռ-ցընել ուտել իրենց թշնամինե-րը ։ Որովհետև մանկութե ա-տենէն ամենևին կըթութի չու-

նին, և խրատ մը չէին առած այսպիսի բաներու համար. Նաև իրենց ծնողները հայրն ու մայրը միշտ կը զօրվեցընեն իրենց, թէ շատ աղէկ հոգևոր բան է մեռցընել ուտել թշնամիները:

Ուրեմն տարակոյս կըմնայ ասանկ տղուն վրան. Հարկաւորապէս որչափ հասակը առնի, այս կրթութիւն ալ հետը կառնի, որ մարդ ուտելով տօնախմբութիւն կատարէ: Ահա այս պատճառաւ այս չար մարդակեր մարդիկ այսպիսի մոլորութեան մէջ մնացեր են: Շնորհակալ ըլլանք Այ, որ մեզ անոնց մէջ չէ ստեղծեր. Նաև տուեր է մեզ այսպիսի բարեպաշտ ծնողք, որոնք [illegible] կրթեր են մեզ որ կրնանք չարն ու բարին ճանչնալ, արդարութիւն ու անիրաւութիւնը որոշել:

Իսկ առաջինին և մարդասէր Ռօպէնսօն պատերազմ եղած տեղը ժուռ գալով կուլար, ու ցաւելով օգնութիւն կընէր զար-

նըւազօրներուն, որ դեռ շունչ կու-
տային կառնէին. ոմանց վէրքին
վրայ գինի լեցընելով կըկապէր,
և կըզօրացընէր որ ողջ մնան.
ոմանք ալ իր գրկին վրայ հոգի
կուտային: Եւ այսպէս վայրենի-
ներէն 21 հոգի նոյն օրը կոտրան.
Իսկ յաղթողներուն բան մը չե-
ղաւ, առանց վէրքի մնացին. մի-
այն թէ ծեծկըռվելու ատենը Սպա-
նեօլին մարմինը չարաչար ճըզմը-
վեր էր: Այս միջոցիս մէջ Ռօ-
պէնսօն ատեն չունեցաւ հարցը-
նելու, թէ սպանեօլը ինչպէս
վայրենիներուն ձեռքն ինկեր էր.
անոր համար պէտք եղաւ որ
հետևեալ դիպուածին մէջ հաս-
կընայ:

## ԻԵ. Դիպուած.

Հետաքըրքիր Ռօպէնսօն ե-
լաւ գնաց քանօզները նայելու,
որ վայրենիները ձգեր էին հոն.

երբոր մօտեցաւ մէկ նաւին. քովը խիստ շատ զարմացաւ. վասն զի մէջը գտաւ ուրիշ ողորմելի գերի մը՝ ձեռքն ու ոտքը կապած , ինչպէս էր սպանեօլը. որ աւելի մեռած կերևնար քան թէ ողջ ։ Ռօպէնսօն մէկէն վազեց որ կապերը կտրէ , և ուզեց որ վերցընէ. սակայն խեղճը ոչ կրնար շարժիլ , և ոչ կրնար խօսիլ , միայն կըհառաչէր. կերևնար թէ հոգեվարք է ։

Բայց որովհետև այս մարդս եւրոպացի չէր , հապա լեռան մարդ էր որ մեռնելու վրայ էր՝ Ռօպէնսօն կանչեց Ուրբաթ գերին , որ բնական լեզուն խօսի հասկընայ , թէ ինչ մարդ է ։ Գերին տեսածին պէս խելքը գըլխէն գնաց. և անանկ ողորմելի տեսարան մը եղաւ , որ Ռօպէնսօն ու սպանեօլը սկսան արտասւօք լալ ։ Իբր զի Ուրբաթը այս կապած գերին որ տեսաւ՝ մէկէն վազեց վրան ընկաւ , խելագարի

նման գրկեց զինքը փաթթըվե-
ցաւ. երբեմն կուլար, երբեմն
կըխնդար, մէյմը կըխաղար.
ձեռքերը կըսըղմէր, երեսին
կուրծքին կըզարնէր. նորէն կը-
պօռար, կըցաթկէր՝ ինչպէս
խենդ մը։ Երկար ժամանակ Ռօ-
պէնսօն հարցընելով և ստիպե-
լով, հազիւ կրցաւ բերնէն առ-
նել այս երկու խօսքս, թէ այս
իմ հայրս է։

Անկարելի է գրով պատմել ա-
մէն եղած գործքերը որդիական
սիրոյ, որ այս առթիս մէջ ցցուց
հօրը այս սքանչելի պատանին։
Քսան անգամ քանօթէն ցամա-
քը ցաթկեց, և ցամաքէն քանօ-
դը ցաթկեց։ Մէկէն նստեցաւ,
բացաւ իր կուրծքը բռնեց հօրը
գլուխը ծոցը խօթեց, որ տաք-
ցընէ, երբեմն կըշփէր ձեռքին
ու ոտքին յօդուածները. որ սաս-
տիկ կապերէն միսերը կըտըրտեր
և գօսացեր էին. և երբեմն նո-
րէն վրան կըփաթթըվէր ու կը-

պագնէր։ Իսկ Ռոպէնսօն քիչ մը գինի ունէր ամանին մէջ, որ-վաւ իրեն՝ որ հօրը անդամները լուայ, որ չարաչար ուռած էին. յետոյ թոյլ տուաւ առանձին թո-ղուց, որ Ուրբաթ գերին գլխա-վին ուրախութեան մէջ ընկղմի։ Քիչ մը ժամանակ անցնելէն ետև ե-կաւ հարցուց՝ թէ արդեօք հայրը ուտելու բան մը կուզէ՞։ Անօթի ծերը պատասխան տուաւ զինքը ցցընելով՝ թէ անօթութենէս ես զիս կերած եմ արդէն։

Ռոպէնսօն իր ուտելու նա-խաճաշիկէն անոր ալ տուաւ, ո-րուն չէր դպած, և գերին ալ իրեն բաժինը հօրը տուաւ։ Հայ-րը առածին պէս կերաւ. որդին փութացաւ ցաթկեց դուրս ելաւ նաւէն, ու սկսաւ վազելով եր-թալ, անանկ որ Ռոպէնսօն այս խօսքս չի լմընցուցած թէ ո՞ւր կերթաս՝ Ուրբաթը աներևոյթ եղաւ, նայիս մէկէն եկաւ ձեռքը ամանով ջուր, և ուտելու բան.

որ ջուրը հօրը տուաւ, և կերակուրը տիրոջը տուաւ, որպէս զի տէրը անօթի չի մնայ կերակուր ուտէ, որ իր հօրը տուեր էր· ծերը ջուրին որ տեսաւ հոգին առաւ զօրացաւ· վասն զի ծարաւը զինքը մահին դուռն էր հասուցեր։

Նատենը Թօպէնսօն դարձաւ սպանեօլին գին, որ հոգնելէն խոտին վրայ մարեր ընկեր էր· որուն ծառայութիւն ընելով Ուրբաթը շատ զօրացուց։ Սպանեօլն ալ իր կողմանէ կըջանար որ անոր հասկցնէ իրեն երախտագիտութիւնը։ Փորձեց որ վեր ելլէ, չի կրցաւ· վասն զի կապերուն տեղերը խիստ կըցաւէին, որ սաստիկ ուժով կապած ըլլալով ուռած էին չարաչար։ Ուրբաթը տիրոջը հրամանով կըջանար սիրով նայի և օգնէ սպանեօլին, շարունակ գինիով շփելով կապերուն տեղերը· անանկ կըհոգար ինչպէս որ կըհոգար իր հայրը։

Հո՛ն քեզի մէկ խեղճ տեսարան մը, ազնիւ պատանին բոլոր սրտով կը հօգար սպանեալը. և ամէն մէկ վայրկեան կըդարձընէր գլուխը հօրը կընայէր, թէ ինչպէս է խեղճ ծերը հանգիստ պառկելու համար երկընցաւ. որդին անհանգիստ ըլլալով մէկէն քովը վազեց, բայց տեսաւ որ հանգիստ պառկեր էր, նորէն գնաց սպանեալին ծառայութի ընելու։ Ոսպէնսօն ուզեց որ գերիին օգնութը վերցընէ սպանեալը քանօթին մէջ դնէ. բայց չի կըցաւ. վերջապէս գերին զօրեղ պատանի ըլլալով կռնակին առաւ ու նաւը բերաւ. անկէ ետքը որչափ որ բան կար հոն՝ հրացանները, թնդանօթը և մեռածներուն զէնքերը բերաւ նաւը դրաւ։

Այս քանօթ նաւերը երկուք էին. Ուրբաթ գերին մտաւ մէկին մէջ թէպէտ հովը հակառակ էր, բայց անանկ ուժով թի

կըքաշէր, որ Ռօպէնսօն ցամա-
քէն վազելով չէր կրնար անոր
արագութեանը հասնել: Մինչ զի՝
Ռօպէնսօն կէս ճամբան չի հաս-
սած գերին հասաւ բնակարանին
քով. նաւը հոն կապեց ու ետ
դարձաւ որ մէկալ նաւն ալ բե-
րէ: Անանկ սոսկալի արագութ̃
կաշխատէր, որ Ռօպէնսօն հա-
սաւ բնակարանին քովի նաւին
քով, որուն մէջ հիւանդները
էին, նայիս գերին մէկալ նաւն
ալ բերաւ:

Նաւերը բնակարանին դիմա-
ցը կապեցին. Ռօպէնսօն գնաց
պատգարակ (թէճկէրէ) ճարե-
լու, որ դիւրութ̃ կարենան հի-
ւանդները բերել բնակարանին
մէջ. և այս կերպով բերին հի-
ւանդները պառկեցուցին: Ի՜նչ
մեծ ուրախութիւն եղաւ Ռօպէն-
սօնին՝ որ միշտ կըփափաքէր ըն-
կերութիւնը շատնալ և եւրոպացի
մը տեսնել. սաստիկ բերկրութեն
սիրտը կըդողդղար՝ երբոր կըմ-

տանէր թէ այլ ազատեցայ թըշուառ մինակութենէ, անպատմելի կուրախանար ։ Տեսաւ թէ Հիւանդները կերակուրէն աւելի դեղի կարօտութիւն ունէին, ելաւ գլխի տաքցուց, ու ուռեցները փաթթեց. գերին ալ իրենց տեղ շինեց մէկէն պառկեցան ։

Հիմա մնաց այս երկու օտարականներուն լաւ կերակուր մը պատրաստել. գերին Հրաման առաւ որ երթայ լամայի ձագ մը մորթէ. մէկալ բաներն ալ Ռօպէնսօն կըպատրաստէր, ու կենար կենար կըծիծաղէր կըզըւարճանար, երբոր ընկերներուն վրայ կընայէր՝ իրեն կերեւնար թէ կամաց կամաց թագաւոր կըձեւանար ։

Որովհետեւ բոլոր կղզին իր տէրութենը տակն էր, Հպատակներն իրենց կեանքը անոր պարտական էին՝ որ օրինաւոր տէր կըճանչնային զինքը, թէ որ պէտք ըլլար կեանքերնին ալ անոր Հա-

մար կըրդնէին։ Բայց մէկ դիտե-
լու պարագայ մը։ կար՝ որ հպա-
տակներուն ամէն մէկը մէյմէկ
հաւատք ունէին. սպանեօլը ուղ-
ղափառ էր. գերին դեռ չէր մկըր-
տած, հայրը կռապաշտ էր։ Հի-
մա ինչ ընելու է կըսէր Ռօպէն-
սօն. արդեօք չի՞ կրնար ըլլալ որ
բռնադատելով ամէնուն հաւատ-
քը մէկ ընենք։ Ժամանակ կու-
գէ՝ որ կըսէր այս բանիս վրայ
մտածենք. վասն զի մարդկուն
դէմ բան կըսեպէր հաւատքի
համար գերիին նեղութիւն տալ.
միայն բարի օրինակ տալով պէտք
էր ուրիշին հոգին շահիլ՝ չէ թէ
բռնութիւ, որ շատ անգամ աւե-
լի գէշ կըլլայ. իբր զի՝ առանց
առաջը դնելու ուրիշին մոլորու-
թիւը և առանց համոզելու միայն
բռնադատելը ինչ շահ կրնայ
ընել. մանաւանդ աւելի կատա-
ծի մէջ կըձգէ դիմացինը, և ա-
ւելի մոլորութիւնը կըհաստատէ,
երբոր նեղութի տալով կուզէ ընդ-

ունել տայ իրեն հաւատքը. Թէպէտ ճշմարտութիւնը ինք զինքը յայտնի կընէ։

Ինչ է միայն աղբիւր ճշմարտութեան, անոր կրնի փոխել մարդուս սիրտը. և ճշմարիտ հաւատքը պայծառացընել լուսաւորելով մոլորելոց միտքը։ Ոսպենոսն այսպէս մտածելով կըսէր, թէ հեռու ըլլայ ինմէ որ այսպիսի աւելորդ նախանձով ուրիշը բռնադատեմ. և այսպիսի կոյր կատաղութեամբ մարդու մը հալածանք տամ կենացս մէջ հաւատքի համար։ Ասանկ բան ա̃ծ չի տայ որ իմ կղզիիս մէջ ըլլայ. ես միայն պարտական ըլլամ իմ քաղաքացիներուս բարի օրինակ տալու։ Անոնց ներողութիւն տալով ես երջանիկ չեմ ըլլար, և իմ հաւատքիս ճշմարտութիւնը ասով չի պայծառանար. հապա իմ վարքս աղէկ ըլլալով և անով ուրիշները խրատելով։ Բնաւ չեմ ուզեր որ հաւատքիս

համար մարդ մը զիս փառաւորէ, և ինձի հաւատայ, որ իրենց պէս մարդ եմ սխալական․ այլ կուզեմ որ միայն այ̃ հաւատան, և այ̃ պատուիրանացը հետևին առանց իրարու հետ հակառակութ̃ի ընելու[1]։

Այս միջոցիս մէջ Ուրբաթ գերին կերակուրները պատրաստեց բերաւ․ և նոյն օրը մեծապէս ուրախանալով կրկին տօնախմբութ̃ի կատարենք ըսաց Ռօպէնսօն․ մէյ մը երկու ընկեր ազատեցինք մարդակեր գազաններուն ձեռքէն, մէյմ' ալ որ հայրդ գտար․ ուստի որչափ աղէկ բան ունինք, պէտք է որ սեղանը դնենք այսօր։ Իսկ Ուրբաթ

1 Երանի՛ թէ Ռօպէնսօնին այս խրատը ամէն մարդ պահէ․ վասն զի ամէնքը կըփափաքին որ ուրիշները դարձի բերեն, ու իրենք իրենց վարքը չեն շտկեր, որ բարի օրինակ տալով ակարները զօրացընեն․ շատ մարդ ուղղափառ հաւատքին վրայ կըպարծի, ու սիրտը նախանձով լեցուն ըլլալով մեռած է հաւատքը։

գերին անանկ անպատմելի ու-
րախութիւն ունէր, որ կենացը
մէջ չէր տեսած. անդադար ծի-
ծաղելով կըցաթկըրտէր. որչափ
ուրախութիւն և ցնծութիւն կրնար
ընել, բոլորն ըրաւ չափազանց
եղանակով։ Եւ այսպէս առանց
պակասութեան ամէն բան պատ-
րաստեցին։

Իսկ երկու նոր օտարականնե-
րը վեր ելան պառկած տեղերէն.
թէպէտ դեռ ոտքերնին ու թևեր-
նին կըցաւէին, սակայն շատ հան-
գիստ և զօրացած գտան զիրենք
Ռօպէնսօնին և Ուրբաթին դար-
մանովը։ Ուստի եկան սեղան
նստան. ծեր ամերիգացին կե-
րակուրներուն վրայ նայելով
զարմացաւ. մանաւանդ տեսնե-
լով որդւոյն ճարտարութիւն՝ որ
եւրոպացոց կրթութիւն սորված
էր, և ամէն բանի մէջ յաջող։

Ուրբաթը թարգման եղաւ
տիրոջն ու երկու օտարականնե-
րուն մէջ. Ռօպէնսօն ինչ որ խօ-

սեցաւ, Ուրբաթը կըթարգմա-
նէր սպանեօլին ու ծեր ամերի-
գացոյն ։ Որ թէպէտ չգիտէր ըս-
պանեօլի լեզուն, բայց սպանեօ-
լը 6 ամիս վայրենիներուն մէջ
ըլլալով բաւական կրնար խօսիլ
Ուրբաթին քաղքի լեզուն, և
կրնար հասկցնել ։

Իսկ թէ սպանեօլը ի՞նչպէս
ընկաւ վայրենիներուն ձեռքը,
ահա այսպէս է պատմութիւնը.
մեր նաւը կըսէր որոշուած էր՝ որ
սև գերիներու վաճառականութի-
ընէ, որ աֆրիկէի կողմէն ելեր
էինք. գերի բերինք, որ փոխենք
ամէն կերպ ազնիւ բանի հետ.
այսինքն ոսկիի, փղոսկրի, և ան-
դամանդի հետ ։

Այս բազմութ̃ի գերիներուն
Պարպատ կղզին պիտի տանէինք
վաճառելու համար. որոնցմէ
արդէն 20 հոգիի չափ մեռեր
էին, իրարու վրայ լեցուցած ըլ-
լալով ։ Մէկ սաստիկ երկարատև
հով մը մեզ մեր ճամբայէն մո-

լորցուց, և նետեց պրատիկլեային կողմերը։ Նայիս նաւը ջուր առաւ չի համարձակեցանք բացէն երթալ, շտկեցինք նաւը դէպ 'ի ցամաք երկիրը։ Այս միջոցս նորէն ալէկոծութի՞ն ելաւ, անանկ սաստիկ կըփչէր արևմուտքէն, որ մեզ շատ հեռացուց ցամաքէն. յանկարծ գիշերանց նաւերնիս քարի վրայ նստաւ կըղզիի մը մօտ։ Շատ թնդանօթներ նետեցինք, և ուրիշ նշաններ տվինք որ լսեն ու մեզի օգնեն՝ ճար չեղաւ. ուստի որոշեցինք որ մինչև ետքը նաւը չի ձգենք. գերիներուն երկաթները հանեցինք ազատ ըրինք, որ մեզի օգնելով նաւին ջուրը պարպենք։

Բայց նաւը ամէն դիէն ջուր կառնէր։ Իսկ գերիները ազատելնուն պէս ամէնքը միաբանեցան բռնի առին մակոյկներն, որ փախչին, և իրենց կեանքն ազատեն։ Մենք ի՞նչ կրնայինք այնչափ մարդկանց ընել, անհնարին

էր որ բռնութեն կարենայինք անոնց տիրել. վասն զի մենք 15 հոգի էինք, անոնք 80 հոգի, որոնց շատը քաշեցին զէնքերնիս ալ առին ։ Քանի՞ ողորմելի էր մեր վիճակը այնպիսի նաւի մը մէջ՝ որ մակոյկ չունի, տեղէն չի շարժիր, ջրով լեցուն է. մեզի մեռնելէն 'ի զատ՝ ուրիշ ճամբայ չի կար ։

Սկսանք մտմըտալ թէ ինչ ընենք, կաղաչէինք կաղաղակէինք խեղճ ընելով կըխնդրէինք՝ որ աղորմին մեզի հետերնին դուրս հանեն. Սակայն այս սև գերիներուն մեզի ըրած մարդավարութիւնը չի պատմըվիր ։ Որոնք թէպէտ մեզմէ շատ խստութիւն տեսեր էին և շատ վիշտ քաշած էին, բայց ողորմեցան մեզի խիստ մեղքընալով, և թող տվին որ մակոյկներուն մէջ լեցվինք այս դաշամբ որ զէնք չառնենք հետերնիս ։ Ուստի առանց զէնքի թափեցանք մակոյկներուն մէջ,

որոնք անանկ ծանրացած էին բեռով, որ ամէն րոպէ կըսպասէինք որ պիտի ընկղմինք։

Իսկ մենք՝ որ հոգւով մարմնով կըջանայինք որ կղզին երթանք հասնինք, անհնարին եղաւ. վասն զի հովը շուտով փոխվեցաւ ու մեզի դէպ 'ի ծովը բացաւ, թէպէտ և սաստիկ ուժով թի կըքաշէինք։ Անատենը հասկըցանք որ անտարակոյս մահը մեզի հասաւ։ Մակոյկները անհնարին լեցուն, և ալիքները սոսկալի վրանիս կուգային. բայց ա՟յ յաջողութ՟ը դէմ կըդնէինք, չէինք ընկղմէր. վերջապէս աւանց մէկ մարդ մը կորսընցնելու հասանք անծանօթ կղզի մը, որուն բնակիչքը մարդավար և բարեսիրտ ըլլալով սիրով մեզ ընդունեցին[1]։

1 Ահա այս կղզին էր Ուրբաթ գերիին քաղաքը, և այն նաւն էր Ռօպէնսօնին պարպած նաւը. որ ձգեր փախեր էին. իսկ Ուրբաթին հայրը իրենց քաղքին մէջ երեւելի մարդ էր, որ թշնամիները բռներ էին։

Որչափ որ մնացինք այս վայրենի մարդկանց քով՝ միշտ կըջանային մեզ պատուել, և որչափ կրնային՝ մեզ կը հոգային առանց կարօտութե̃ թէպէտ աղքատորէն: Խեղճերը աղքատ ըլլալով ուրիշ ապրուստ չունէին, բայց եթէ ձուկ և պտուղ, որ ինքնիրեն կելլէր այն կղզիէն: Իրենց ապրուստը կըբաժնէին՝ կէսը մեզի կուտային կէսն ալ իրենք կառնէին: Մենք ալ իրենց ձուկ բռնելու կերպերը սորվեցուցինք, որպէս զի կարենանք մենք ալ առատ կերակուր գտնելու: Ուր սև գերիներուն վիճակը մերինէն շատ աղէկ էր, Նախ որ ազատեցան գերութե̃. Երկրորդ իրենց վարքին յարմար ըլլալով հանգիստ կը վարվէին; որուն արդէն սորված էին: Ատեն մը այսպէս անցնելէն ետև՝ մօտակայ ազգ մը եկաւ ասոնց երկիրներուն տիրեց. ուստի բոլոր ժողովուրդը զէնք առին որ պատե-

րավմին. մենք ալ պարտաւորե-
ցանք միատեղ պատերազմ եր-
թալ, որոնք մեզ այնչափ պատ-
ւելով բարերարութիւն ըրեր էին։
Ես այս զօրաւոր ծերուն հետ
միատեղ էի, որ քաջութիւն կը-
ծեծկըվէր առիւծի պէս. Նայիս
մտաւ խիստ զօրաւոր թշնամի-
ներուն մէջ խառնըվեցաւ, տե-
սայ որ զինքը փաթթեր էին,
վրայ հասայ որ ազատեմ. բայց
թշւառութիւն անոր հետ միատեղ
բռնըվեցայ գերի եղայ։

Այս սարսափելի գերութեան
մէջ երկու օր երկու գիշեր մնա-
ցինք ձեռքերնիս ոտքերնիս չա-
րաչար կապած, առանց բան մը
ուտելու. այնպիսի անարգանօք
մեզ կընայէին՝ որ ինչպէս ան-
պէտ անասուն մը, բերին առաջ-
նիս հոտած ձուկ մը ձգեցին՝ որ
ծովը բերեր էր աւազին վրայ։

Այս առաւօտ արևը չի ծա-
գած մեզ առին քանօղներուն
մէջ ձգեցին, որ դուրս տեղ եր-

Թալով՝ ինչպէս որ բարբարոսնե-
րը սովորութիւն ունին, մեզ ու-
տելով տօնախմբութիւն պիտի ը-
նէին ։ Սակայն ա̃ծային Նախախ-
նամութիւնը ձեզ խրկեց մեզի օգ-
նելու համար, ո՛վ գերազանց և
ողորմած մարդիկ՝ դուք մեզ ա-
զատեցիք, կեանքերնիս ձեզի
պարտական ենք, անանկ որ հա-
տուցում չպիտի կարենանք ընել
ամենևին ։

Այս միջոցս Սպանեօլին սիրտն
ելաւ սկսաւ սաստիկ լալ. Ռօ-
պէնսօն իր կողմանէ զարմացաւ
մնաց, թէ նաւը գտած ատենը
ինչ կարծիք որ ըրած էր, բոլորը
համեմատ եկաւ այս պատմութեան.
կատարեալ իրենց գտած նաւն
էր, որ պարպեցին ։ Ուրբաթ գե-
րին ալ տիրոջը հետ միատեղ
կըզարմանար ա̃ծային իմաստու-
թեանը վրայ ։

Հարցուց թէ ի՞նչ բեռ դրեր
էիք նաւը. սպանեօլն ալ պա-
տասխան տուաւ, թէ շատը զէնք

և գործիք էին, որ երկու վաճառական բարձրուցած էին Քատիչէ քաղաքէն[1]. մէկը հրաման էր տուեր իրեն՝ որ սև գերի գնէ. իսկ մէկալը այսպիսի վաճառականութիւնը անիրաւ սեպելով պատուիրած էր՝ որ ծախած բաներուն տեղը ոսկի բերէ:

Վերջապէս Ռօպէնսօն բռնեց սպանեօլին ձեռքէն տարաւ ընակարանին մէջ, ետքը տարաւ շինած խուցին մէջ, և իրեն ըրցուց նաւէն հանած պիտուական բաները, տեսնէ թէ կըճանչնայ բան մը: Ուրբաթ գերին սկսաւ բոլոր պատմութիւնը անոր պատմել. Սպանեօլը այս պատմութիւնս լսելով զարմացաւ մնաց, անանկ

1 Քատիչէ է մեծ և հռչակաւոր քաղաք սպանեօլներուն. այս քաղաքիս նման հարուստ և վաճառականութեան քաղաք չի կայ եւրոպայի մէջ. ամէն ազգութեան նաւեր լեցուն են միշտ, մանաւանդ չինաց, հնդկաստանու, և ամերիկայի: Այս քաղքէն ելեր էր այն նաւն որ Ռօպէնսօն գտաւ պարպեց:

որ բան մը չէր կրնար խօսել։ Ռօ-
պէնսօն դարձեալ ցցուց անդա-
մանդները և աղւոր հագուստ-
ները։ Հասկցաւ որ ասոնք էին
մէկ ինկիլիզ զօրապետի մը, որ
երկար ատեն հնդկաստան նըս-
տեր էր, յետոյ Ինկիլթէրա
դառնալու ատենը՝ Ճամբան կը-
հիւընդնայ, կըխնդրէ որ զինքը
ցամաքը հանեն Ափրիկէի կողմը,
և հոն կըմեռնի. իսկ նաւը այս
բաներս կառնէ Ամերիգա կեր-
թայ դէպ 'ի Պարպատ կղզին՝ որ
յետոյ անկէ Ինկիլթէրա պիտի
երթար։

Հուսկ յետոյ Ռօպէնսօն ցը-
ցուց անոր բոլոր թղթերն որ
նաւէն հաներ էր. Սպանեօլը
կարդաց գտաւ թէ ոսկին և հան-
դերձները այն մեռնող զօրապե-
տին կնկանը պիտի հասնէին։
Անկէ ետքը Ռօպէնսօն անանկ
զգուշութ̄ը կընայէր անդամա-
գը՝ ոսկին և թղթերը, ինչպէս
մէկ նուիրեալ աւանդ մը՝ որ ի-

րեն հաւատացեր էին ։ Իրիկուընն որ մօտեցաւ, ամէնքը չարաչար հոգնած ըլլալով նոյն օրուան մէջ՝ ուզեցին շուտով պառկիլ հոգնութիւն առնելով զօրանալ, և հանգիստ քնանալով ուժ առնել ։ Ուստի շնորհակալութիւն ընելով ա̃յ գացին պառկեցան ։

## ԻԲ. Դիպուած.

Հետևեալ օրը Ռոպէնսօն միաբանեց իր տէրութեան ուժն՝ որ պէտք եղած բաները միաբանութեամբ կատարէ առանց ուշացընելու ։ Իբր զի թշնամիներուն մարմինը դաշտին մէջ ձգած էին և կըհոտէին, կըվախնար որ չըլլայ թէ օդը ապականէ, ու հիւանդութ̃ի պատճառէ հոն ։ Ուստի մէյմէկ կացին առին եկան պատերազմ եղած տեղն՝ որ չէ թէ փոս փորեն թաղեն, հապա փայտ կտրեն կրակ վառեն, ու

մեռածներուն բոլոր մարմիններն երեն [1]։

Թէպէտ մեռել երելն է հընդկաստանցոց և հին ազգերուն սովորութիւնը, բայց Ռոպէնսոն չուզեց եւրոպացոց սովորութենը հետևիլ. որոնք իրենց մեռելները եկեղեցիներուն, և քաղքին մէջ կըթաղեն. որ ողջերը այն հոտած օդը շնչելով մեծապէս կըվնասին հիւանդութե։ Այս վտանգաւոր սովորութիւնը հին ըլլալուն համար՝ դժուար է վերնալ. ինչպէս ուրիշ շատ հինցած սովորութի ալ կայ վնասակար, որ դժուար է վերցընել։ Այս պատճառաւ միշտ պէտք է խոհեմութե կառավարվիլ և ամէն բան ըստ տեղւոյն կատարել։

1 Ռոպէնսոնին կղզին տաք ըլլալուն համար պէտք եղաւ այսպէս ընել՝ որ չապականի օդը. վասն զի թաղելով ալ չէր ըլլար, արեգակին տաքութիւնը օդը կաւրէր վնասակար գոլորշիքներով. անոր համար խոհեմութեն բանեցուց Ռոպէնսոնին ու երեց զանոնք։

Սամն գի մէկ անկարգութեն մը սովորութիւն եղածին պէս՝ դժուար է վերցընել. Թէպէտ վը.. նասակար ըլլալը ամէնուն յայտնի ըլլայ ։ Ահա ամէն աշխարհք գիտէ թէ մռելըն հոտած գոլորշիքը ող ջերուն թօյն ըլլալով մեծ վնաս կըբերէ, և սակայն շատ քաղքի մէջ հորեր փորած կայ, կըտանին մռելները հոն կըլեցընեն. որ ասոնց հոտը ապականելով օդը կընայ հիւանդութիւն պատճառել։ Այսպէս շատ բան կայ որ վնասակար ըլլալը ամէնքը գիտեն ։ Բայց հին սովորութեն ըլլալուն համար չեն փոխեր, այնպէս կըմնայ ։ Ահա՛ այս է նախապաշարումն, որ միտքը պաշարվելով ինչ որ տեսեր է այն կընէ. և սակայն պէտք չէ կուրօրէն հին սովորութեն ետևէն երթալ առանց որոշելու աղէկն ու գէշը. հապա պիտի աղէկ բանին հետևիլ անկարգ բաները ձգել, և անխելք բաներն ալ կա-

տարերլադործել. որպէս զի ամէն աշխարհք, ամէն քաղաք, և ամէն տուն՝ բարեկարգ ըլլայ, և բարեպաշտութե՛ն զարդարուի [1]։

Ամէն տեղայ պարտական է որ ուսման եռանդն ըլլալով խելք սորվի, հասկընայ թէ այն ազգերն որ միայն իրենց նախնեացը հետևելով աղէկ բանի եռանդ չեն եղած, մինչև հիմա կոշտ մնացեր են. և այն կոշտ ազգերն որ իրենց նախնեաց անկարգ բաները ձգելով, բարեկարգութեանց եռանդ եղեր՝ իրենք զիրենք շըտկեր են, խիստ գիտուն և բարեպաշտ են եղեր [2]։

1 Եւրոպացիք հին ատենը ամէն ազգէն կոշտ և անխելք էին. բայց հռոմայեցիք երբոր սկսան ուրիշ ազգերուն տիրել, ամէն ազգին աղէկ բաները ժողվեցին, իրենց հաստ բաները ձգեցին աղէկին հետևեցան. կամաց կամաց ամէն աղէկ բան խելք և իմաստութիւն սորվեցան, ու մի միայն բարեկ և գիտուն եղան. ինչպէս որ կերևնան։

2 Հնդկաստանցիք և Չինք մինչև հիմա իրենց նախնեաց սովորութիւնը չի ձգերու հա-

Ուստի այսպէս ճանչնալէն ետև մէկ տղայ մը պէտք է, որ մեծցած ատենը երբոր բանի մէջ մտնէ ձեռքէն եկածին չափ բարեկարգութ̃ի ընէ՝ թէ իր ազգին, թէ իր հայրենեացը, և թէ

մար՝ շատ խենդ բաներ ունին. շատ տեղ իրենց թուաբանութ̃ը չուանի կապերով կընեն, և անով շատ դժուարաւ իրենց տղոցը կըսորվեցընեն. մինչև որ լաւ մը չափահաս չըլլան բան չեն հասկցըներ. վասն զի իրենց նախնեացմէ ասանկ առեր են ասանկ կերթան. ոչ միայն չեն ետևէ ըլլար եւրոպացոցմէ խելք, և թուաբանութ̃ե սորվելու. այլև կըդայթակղին անոնց վրայ, որ պզտի տղոց ալ բան կըսորվեցընեն: Մեր ազգին մէջ ալ կըգտուին այսպիսի թանձրամիտ մարդիկ. որ իրենց սովորութեանը հետևելով խելք սորվիլ չեն ուզեր, և սորվողներուն վրան ալ կըդայթակղին թէ ինչ պէտք է. ինչ որ ունինք մեր նախնեացմէ, և ինչ որ գիտենք բաւական է. երկու կտոր գիրք մեզի կօգտէ: Այսպիսի յիմարներուն պատասխան կուտան գիտունները, թէ մեծ կուրութ̃ի է նախնեաց յիմարութ̃ը հետևելով տգէտ մնալ, և նոր նոր գիրքեր կարդալով աղէկ բաներ չի սորվիլ. վասն զի մարդս քանի որ ողջ է, պէտք է միշտ բան գիտնալ և ուրիշին բան սորվեցընել:

իր տանը. ինչպէս որ Ռօպէնսօն գիտնալով թէ մեռելները անանկ ձգել, կամ փոսի մը մէջ լեցնել օդը կապականէ, ուզեց երբեք որ հիւանդութիւն մը չի պատճառի, թէպէտ իր Ամպուրկ քաղաքը մեռելները ժամերուն մէջ կըթաղէին:

Արդ՝ Ռօպէնսօն մեռելներն երելէն ետև՝ ընկերներուն հետ միատեղ դարձաւ իր բնակարանը: Ուրբաթ գերին իր հայրը խրատելով կըհասկըցնէր, թէ դազանի պէս մարդու միս ուտելը որչափ գարշելի և սոսկալի բան է Եւրոպացոց առջին, և ամէն քաղաքականութեան դէմ գործք է: Այս բանիս վրայ ծերը խիստ կըզարմանար. իսկ որդին ինչ որ սորվեր էր իր տիրոջմէն, բոլորը կըհասկցընէր հօրը. որպէս զի գարշելի երևցընէ իրեն այնպիսի բարբարոսական սովորութիւնները:

Իսկ Ռօպէնսօն որովհետև

Ուստի այսպէս ճանչնալէն ետև մէկ տղայ մը պէտք է, որ մեծցած ատենը երբոր բանի մէջ մտնէ ձեռքէն եկածին չափ բարեկարգութիւն ընէ՝ թէ՛ իր ազգին, թէ՛ իր հայրենեացը, և թէ

մար՝ շատ խենդ բաներ ունին. շատ տեղ իրենց թուաբանութիւնը չուանի կապերով կընեն, և անսալ շատ դժուարաւ իրենց տղոցը կըսորվեցընեն. մինչև որ լաւ մը չափահաս չըլլան բան չեն հասկցըներ. վասն զի իրենց նախնեացմէ ասանկ տեսեր են ասանկ կերթան. ոչ միայն չեն ետևէ ըլլար եւրոպացոցմէ խելք, և թուաբանութիւն սորվելու. այլև կըգայթակղին անոնց վրայ, որ պզտի տղոց ալ բան կըսորվեցընեն: Մեր ազգին մէջ ալ կըգտուին այսպիսի թանձրամիտ մարդիկ. որ իրենց սովորութեանը հետևելով խելք սորվիլ չեն ուզեր, և սորվողներուն վրան ալ կըգայթակղին թէ ինչ պէտք է. ինչ որ ունինք մեր նախնեացմէ, և ինչ որ գիտենք բաւական է. երկու կտոր գիրք մեզի կօգտէ: Այսպիսի յիմարներուն պատասխան կուտան գիտունները, թէ մեծ կոշտութիւն է նախնեաց յիմարութեանը հետևելով տղէտ մնալ, և նոր նոր գիրքեր կարդալով աղէկ բաներ չի սորվիլ. վասն զի մարդս քանի որ ողջ է, պէտք է միշտ բան գիտնալ և ուրիշին բան սորվեցընել:

իր տանը . ինչպէս որ Ռօպէնսոն գիտնալով թէ մառեւելները ա-նանկ ձգել, կամ փոսի մը մէջ լեցնել օդը կապականէ, ուզեց երել որ հիւանդութիւն մը չի պատճառի, թէպէտ իր Ամ-պուրկ քաղաքը մառեւելները ժա-մերուն մէջ կըթաղէին ։

Մրդ՝ Ռօպէնսոն մառեւելներն երելէն ետև՝ ընկերներուն հետ միատեղ դարձաւ իր բնակարա-նը ։ Ուրբաթ գերին իր հայրը խրատելով կըհասկըցնէր, թէ գազանի պէս մարդու միս ուտե-լը որչափ գարշելի և սոսկալի բան է եւրոպացոց առջին, և ա-մէն քաղաքականութեան դէմ գործք է ։ Այս բանիս վրայ ծե-րը խիստ կըզարմանար . իսկ որ-դին ինչ որ սորվեր էր իր տիրոջ-մէն, բոլորը կըհասկցընէր հօրը. որպէս զի գարշելի երևցընէ իրեն այնպիսի բարբարոսական սովո-րութիւնները ։

Իսկ Ռօպէնսոն որովհետև

որդուն անունը Ուրբաթ դրեր էր, հօրը անունը Հինգշաբթի դրաւ. մենք ալ անկէ ետև այնպէս պիտի կոչենք ։ Ռոպէնսօն ուզեց խորհուրդ ընել, զամէնքը կանչեց Ուրբաթը անոնց գլուխ և թարգման ըրաւ. որ խորհուրդին մէջ անոնց հասկցնէ այս պատուիրանները ։

Սիրելի՛ բարեկամք ըսաց. քանի՛ հոգի որ հիմա հոս ժողված էք՝ գիտեմ որ կուզէք հանգիստ և երջանիկ կեանք մը վարելու. սակայն ես կըփորձեմ, որ այս ամէն բարիքը վայելելով իմ սիրտս չպիտի հանգչի, մինչև որ չգիտնամ թէ արդեօք կա՞ն իսմէ արժանաւոր մարդիկ, որ գերութէ մէջ կըտանջըվին զուրկ ամէն աղէկութէ. թէ՛ եւրոպացի ըլլան, թէ՛ սպանիօլ ըլլան, և թէ ուրիշ ազգ, որ մարդակերներուն ձեռքն են ընկած. արդ ես կըփափաքիմ, որ ձեր կարծիքն ինձի հասկըցընէք, որ

կերպով դիւրին կըլլայ այն խեղճերուն օգնութիւն հասնիլ. որպէս զի անոնք ալ գան մեր միջակին մասնակից ըլլան ։

Մէջէն մէկը սկսաւ ինքնիրեն մտածել. Սպանեօլը առաջ նետուեցաւ, որ մինակ երթայ իր ընկերները փնտըռէ. ուստի ուզեց մտնել մէկ քանօթին մէջ թըշնամիներուն ետեւէն երթալու համար[1] ։

Հինգշաբթի գերին ալ ըսաց որ ես ալ պատրաստ եմ. որդին պատասխանեց հօրը թէ դուն ծեր ըլլալով պէտք է հոս մնաս.

1 Ռօպէնսօն կըպատմէ՝ թէ կասկած ունէի որ փախչօղ վայրենիները նորէն բազմութեամբ դառնան կուգան, անոր համար միշտ զէնքով և պատրաստ ժուռ կուգայի. սակայն Հինգշաբթի գերին ապահով ըրաւ թէ անոնք երկար ատեն վախերնուն հոն չեն հանդիպիր. իսկ Սպանեօլը կըսէր թէ 16 հոգի եւրոպացի էինք այն կղզին, որ ալէկոծութեամբ գացինք ընկանք. ոմանք Սպանեօլ են՝ ոմանք Փորթուգալ. խեղճերը հոն մնացին, պէտք է որ երթամ զանոնք ազատեմ ։

աւելի ինծի կըվայլէ Սպանեօլին հետ միատեղ երթալ. ծերը որդուն դէմ կենալով ատոնց մէջ մէկ ազնուական հակաճառութի̄ մը ծագեցաւ ։ Վերջապէս Ռօպէնսօն նայեցաւ որ այս վէճը չի լմըննար՝ ատենը կանցնի, մէջ մտաւ որոշեց որ ինքն ինչ որ ըսէ՝ այնպէս ընեն. հրամեց որ ծերը սպանեօլին հետ մէկ տեղ երթայ թշնամիներուն ետեւէն. Ուրբաթը քովը մնայ, վասն զի մտերիմ բարեկամութի̄ը թող չի տվաւ որ գերին քովէն զատէ և վտանգի մէջ ձգէ. մանաւանդ որ հայրը աւելի փորձ էր և որդունմէն աղէկ գիտէր նաւավարութի̄ ։ Իսկ Սպանեօլին երթալը խիստ հարկաւոր էր. վասն զի կրնար ըլլալ՝ որ իր քաղաքացիները ազատէին ու գային Ռօպէնսօնին հարկիքը վայելէին ։ Այս միջոցս արտերը բոլոր ցանեցին տասնապատիկ աւելի. որովհետեւ մէկ դիէն կըբազմա-

նայլին, պէտք էր որ ուսեալներնին ալ շատցընեն ։ Այս գործքերս շատ աշխատելով կատարեցին քանի մը շաբթըվան մէջ. աղէկ սրտով աշխատելնուն համար, անանկ աղէկ աճեցան բոյսերն՝ որ 15 օրուան մէջ բաներնին լմընցաւ. պատրաստվեցան որ ձամբայ ելլեն մտքերնին դըրածը կատարեն ։

Բայց յառաջ քան ձամբայ ելլելը, Սպանեօլը փորձ մը ցցուց. ոչ միայն իր պատուոյն և երախտագիտութ̃ը համար որ ունէր առ Ռօպէնսօն, այլև նախատեսութ̃է և զգուշութ̃ը համար ։ Յայտնեց Ռօպէնսօնին որ միւս սպանեօլները իրեն պէս չէին, հապա նաւավար էին. ուստի կըրթութ̃ի մը չունէին, և հաստ մարդիկ ըլլալով իրեն կատարելութ̃իը չունէին ։ Եւ որովհետև գիտէր որ Ռօպէնսօն էր կըղզին տէրը՝ առաջարկեց որ դաշնադրութ̃ի մը հաստատէ, որ-

պէս զի հոն եկօղը այն դաշինք-
ները նախ գիտնայ ընդունի ու
անանկ գայ բնակի հոն ։

Ռոպէնսօն շատ ուրախացաւ
ասոր հաւատարմութե̄ը վրայ․
և հաւանեցաւ խորհուրդին, շի-
նեց մէկ դաշնադրութի̄ մը, որ
այս բանիս վրայ կըկայանար։ Ո՛վ
որ կուզէ Ռոպէնսօնին կղզին բը-
նակիլ՝ հանգիստ կեանք վարե-
լու համար, կըհրաւիրէ որ գան
մասնակից ըլլան իրեն բարեացը
այս պայմանով․ ա̄․ Պէտք է հը-
նազանդ ըլլալ օրինաւոր տիրոջը
կղզին․ այսինքն ամենայն յօ-
ժարութե̄ պիտի հնազանդի օ-
րինաց և կանոնաց՝ ինչպէս որ
կարգադրեր է քաղաքապետը
հասարակաց բարւոյն համար ։

բ̄․ Պէտք է ըլլալ առաքինի
աշխոյժ և աշխատասէր․ իսկ դա-
տարկ՝ գինով՝ և ախտաւոր մար-
դիկ ամենևին չի մտնեն այս կըղ-
զին ։

գ̄․ Ամենևին կռիւ և խռո-

վութէ չըլլալու համար, նաև զրկողութեն դիպուած պատահելով չըլլայ թէ մարդ ինքնիրեն դատաստան կտրէ. հապա պէտք է քաղաքապետին երթալ դատը հասկցընել, կամ թէ ով որ դատաւորի պաշտօն ունի՝ անոր քով երթալ դատաստան տեսնել։

դ̃. Առանց տրտնջալու պէտք է ամէն աշխատանքը յանձն առնուլ, որ վասն օգտի ընկերութեն կըպահանջըվի. և երբոր հարկաւոր ըլլայ, մինչև արիւնը թափէ, և կեանքը տայ հետևելով քաղաքապետին։

ե̃. Եթէ մէկը յանդգնի դէմ ելլել այս հաստատ օրէնքներուս, բոլոր մնացած բնակիչները միաբան դէմ ելլեն անոր՝ ու բըռնութբ̃ հնազանդել տան օրինացը. նաև աքսորեն կըղզիէն դուրս, որ մէյմ՝ ալ չի հանդիպի հոն։

Ամէն մէկը յորդորեց որ ազէկ մը հաստունութբ̃ մտածեն

այս կանոններուս վրայ, և լաւ-ուշ դնեն որ համաձայնութիւն չըլլայ բառերուն, և ուրիշ կերպ չի հասկըցվի. որ լաւ որոշվելէն ետև ամէն մարդ հաւատարմութբ պահեն բոլոր այս կանոններս։ Սպանեօլը այս դաշինքս առաւ իրեն լեզուովը թարգմանեց, ու Թուղթ գրիչ առաւ գրեց՝ որ տանի իր քաղաքացիներուն ցոյց տայ, հոն չի բերած հասկցընէ իրենց։ Ասկէ ետև այն երկու-քանօդին մէկ լաւն ընտրեց և պատրաստվեցաւ երթալու։ Թէ-պէտ այս քանօդը քիչ կուգար բոլոր սպանեօլները հոն բերելու համար, սակայն Սպանեօլը գի-տէր որ իրենց նաւուն մակոյկը բան չէր եղած, պէտք էր որ անով գային.

Ճամբու պաշարը հոգացին հովն ալ յաջող կըփչէր, այս եր-կու ճամբորդները նաւը մտան, առագաստը հովին տվին. մէկ տրտմալի սիրով մը բարևելէն

եւս Ռոպէնսօնն ու Ուրբաթը՝ զատուեցան ։ Այս զատուիլը անանկ տրտմեցուց Ուրբաթին սիրտն, որ աչքին արտասուքը չի կտրեցաւ, և ախորժակը գոցեց բան չի կրցաւ ուտելու ։ Հօրմէն զատուելու ատենը այնչափ անմխիթար էր, որ միշտ հօրը կրփաթթըվէր կուլար, չի զատվեցաւ իրմէն. մինչև ծերը բռնի զատուեցաւ մտաւ նաւը Ճամբըվեցաւ. բայց որդին ծովը նետվեցաւ լողալով գնաց ցամաքին ծայրը կեցաւ, որ հայրը անկէ անցնելու ատենը ետքի բարեւն ալ տայ անանկ գայ. որ ապա լալով դարձաւ եկաւ բարձր տեղ մը նստաւ միակերպ քանօղին ետևէն նայելով կուլար, մինչև որ բոլորովին անյայտ եղաւ տեսութէն ։

Իսկ Ռոպէնսօն՝ գերին մխիթարելու համար, բոլոր օրը միատեղ որսի գնաց և լեռներուն վրայ ելան ժուռ եկան ։ Ալ ա-

ւաշ պիտի երթային՝ տեսան որ շունը իրենց հետ երթալու ատենը՝ ապառաժի մը տակ որ բոլորովին փուշերով ծածկած էր, կեցաւ անդադար կըհաչէր։ Երբոր մօտեցան տեսան որ ծակ մը կայ ապառաժին վրայ, որուն մէջ սողալով միայն կրնային մտնել։ Որովհետև Ռօպէնսօն կուզէր որ ամէն տեսած բանը քննէ, գերիին ըսած որ փորձէ նայէ կրնա՞յ ներս մտնել. գերին ալ փորձելով գլուխը ներս խօթածին պէս անանկ զարհուրեցաւ ու սոսկալի պոռաց, և անանկ խենդի պէս փախաւ արագուլթը՝ որ Ռօպէնսօնին ձայնը ամենևին չէր լսէր, որ զինքը անդադար կըկանչէր։ Վերջապէս տէրը իրեն հասաւ զարմանալով հարցուց թէ ինչ եղաւ, ինչո՞ւ կըփախչիս։ Պատասխան տուաւ թէ ո՛հ սիրելի տէր իմ՝ փախչինք ազատենք մեր կեանքը. ահա՛ այս քարանձաւին մէջ

մէկ ահեղ հրէշ մը կայ. աչքե-
րը կրակի նման կը փայլին և բե-
րանը անանկ լայն է, որ երկուք-
նիս ալ կրնայ միատեղ կլլել:

Այս ի՞նչ սարսափելի բան է
եղեր ըսաց Ռոպէնսոն. պէտք է
որ ես տեսնեմ զայն: Աղաղակեց
գերին ուժգին ընկաւ, թէ ի՞նչ
կընես՝ այ՟ համար ըլլայ մի մօ-
տենար, անտարակոյս քեզ կըկլը-
լէ. և խեղճ Ուրբաթը անտէր
պիտի մնայ:

Պատասխանեց տէրը խնդա-
լով, թէ քեզ կերա՞ւ: Գերին
վախուն պատասխան չի տուաւ:
Ռոպէնսոն խրկեց զինքը բնակա-
րանն որ երթայ լապտերը կամ
(գողլի Փէնէրի) բերէ, որ նաւէն
հաներ էին: Այս միջոցս գնաց
Ռոպէնսոն ծակին մօտ հրացա-
նը ձեռքը, մտիկ ընելու թէ ի՞նչ
կայ: Արդեօք ի՞նչ կրնայ ըլլալ
որ այսչափ սարսափեցուց Ուր-
բաթը: Արդեօք կատղած գա-
զա՞ն կայ, առի՞ւծ կայ, վա՞գր

կայ, կամ թէ ասոնց նման կեն-
դանի՞ մը կայ, ի՞նչ կայ։

Յանդգնութի̅ կըսեպէր ծա-
կէն ներս մտնել. բայց այնպիսի
կատղած կենդանի չէր տեսած
այն կղզին մէջ. եթէ գազան
ըլլար՝ Ուրբաթը ինչպէս կրնար
փախչիլ անկէ։ Չէ՞ կըսէր, կե-
րևնայ թէ անանկ կատղած կեն-
դանի չպիտի ըլլայ. սիրտ կընէր
որ ներս մտնէ նայի՝ թէ ինչ է.
վասն զի մանկութենէն 'ի վեր այս-
պէս սորված ըլլալով բանէ մը
վախ չունէր։ Այս խորհուրդիս
վրայ Ուրբաթն ալ վառուած կան-
թեղը ձեռքն եկաւ. որ լալով
կաղաչէր ու կըջանար՝ որ տէրը
այս խորհուրդը ձգէ, և զինքը
այնպիսի յայտնի վտանգի մէջ
չի ձգէ. վասն զի իր կարծիքովը
անտարակոյս պիտի կորսըվէր։
Իսկ 'Ռօպէնսօն՝ որ վախ ըսած
բանը չգիտէ, երբոր մէկ բանի մը
վրայ լաւ կըմտածէր հաստատու-
թ̅, անկէ ետև ոչ երբէք ետ

կրկենար. ուստի յորդորեց Ուր-
բաթն որ սիրտ առնէ զօրանայ,
և լապտերը մէկ ձեռքն առաւ՝
հրացանն ալ մէկալ ձեռքը, սկը-
սաւ երթալ ծակին քով։

Գլուխը ներս խօթածին պէս
ճրագին լուսովը զարհուրելի
բան մը տեսաւ, բայց չի փախաւ.
այլ դէպ 'ի ներս երկնցուց լոյսն,
որ լաւ տեսնէ այն հրէշ կենդա-
նին։ Երբոր աղէկ մը նայեցաւ
որոշ տեսաւ՝ որ ծեր լամա մը
պառկեր էր, ծերութէն չէր կը-
նար շարժիլ։ Զորս դին դիտելէն
ետև հասկըցաւ որ ուրիշ կեն-
դանի չի կար անկէ 'ի զատ, ներս
մտաւ ու կանչեց որ գերին ալ
ետևէն երթայ։

Իսկ գերին անանկ սարսա-
փած ըլլալով չի կրցաւ տեղը մի-
նակ ձգել, այլ վերջի ճիգն ընե-
լով վախը մէկ դի ձգեց, ու սիրտ
առնելով տիրոջն ետևէն գնաց.
մէկէնիմէկ զարմացաւ մնաց եր-
բոր տեսաւ թէ ինչպէս փուճ

տեղը ի՞նչ կերպ վախցեր էր, ու լամային աչքին և քերնին մեծութիր այնչափ ինքը սաստիկ խռովեր էր. երբոր ներս մտաւ, Ռօպէնսօն զուարճանալով ըսաց իրեն, տեսա՞ր սիրելի թէ վախը ի՞նչ բան կընէ մարդուն. ո՞ւր է կրակի պէս աչքերն որ կըպտտամէիր. և ո՞ւր է սարսափելի բերանն որ տեսեր էիր։

Պատասխանեց Ուրբաթը՝ թէ ինձի կերևնար թէ անանկ կըտեմնէի ճշմարտապէս։ Կրկնեց Ռօպէնսօն, թէ տարակոյս չունիմ, գիտեմ որ քեզի այսպէս երևցաւ. բայց պէտք է գիտնաս, որ վախը շատ անգամ կըխաբէ մարդը. անանկոր չեղած բաները երևակայութ̃բ կերևցընէ. և հազար կերպ բան կըցցընէ, որ մէկը չի կայ։ Մտի՛կ դիր սիրելի Ուրբաթ, և գիտցի՛ր, թէ այսպիսի բաները երևակայութի̃ են, և պարզ մտմտուքէ առաջ կուգան։

Շատ անգամ վախկոտ ծերերը, կամ վախկոտ կանայք որ երեխեց բան կ[illegible]ենայ, երեւակայելով քեզի պէս կըօնեն, թէ չէ տեսած բան տեսանք. Մէկը երկուք կերեւնայ, և ոմանց ալ սիրտը վախով պաշարուած ըլլալով կնկէ մարդէն աւելի վախկոտ և տկար կըլլան: Գերըեն խօսք տուաւ որ անկէ ետև զօրանայ, բանէ մը չի վախնայ:

Այս միջոցիս մէջ ծեր լաման տեղէն ելաւ՝ Ռօպինսօնն ու գերին հրեցին դուրս ձգեցին. յետոյ քննեցին նայեցան այն բնակարանը, տեսան որ խիստ ընդարձակ պատուական տեղ էր զով և ցամաք՝ նաև խիստ զուարճալի, որ շատ հարկաւոր կըլնար ըլլալ իրեն: Այս քարանձաւը կերևնար թէ կամաւ շինած էր բնակելու համար, որ չոր էր առանց խոնաւութե, և պատերը ապակիի (պիլօռ) քարի նման ըլլալով ամէն դիէն լոյս

կըցուլար . որպէս թէ չորս դէմն ձերմակ պատուած ըլլար .

Ոսպէնսօն որոշեց որ իրեն հանգստութեան տեղ ընէ . հոն քանի մը ժամ զըւարճացաւ զով տեղը արևին տաքութենէն . միտքը դրաւ ուտելու բաներն ալ հոն պահէ, որ առանց այլայլու֊թեան ցամաք և անապականն մնան ու սաստիկ տաքութեններէն չի թթուին : Այս տեղս ընդարձակ ըլլալուն համար՝ խորհեց գեբերին որ երթայ գործիքները բերէ . որով նախ դուռը մեծցուց, և երկուքը միատեղ աշխատելով լաւ մը շըտկեցին, ամէն օր ուրախութեամբ կաշխատէին [1] :

1 Շատ մեծ կատարելութիւն է մարդուս ամէն գիտցածի մէջ անխտրով մնալ՝ և մեծ անկատարութեան նշան է քիչմը բանով այ֊լայլիլ . ինչպէս որ կըսէին հին փիլիսոփա֊ները . որովհետև մարդը միշտ նոյն ըլլալով միտքը չի փոփոխիր . գիտցածը կըփոփոխի . ուրեմն հարկ չի կայ որ մարդը փոփոխելով այլայլի : Սակայն այս կատարելութիւնը՝ ճըշ֊մարիտ ճանապարհաւ մարդը կրնայ ունենալ .

ու ելաւ լեռանը վրան՝ որ դի-
տէ ։ Յայտնի տեսաւ աչքովն որ
մակոյկ մը հեռուէն կուգայ
դէպ իր կղզին ․ բայց երբոր դի-
տակով նայեցաւ՝ նեղանալով, և
գլուխը շարժելով ըսաւ գերիին,
թէ կարծեմ թէ մերոնք չեն ․
գերիին սիրտը փրթաւ ։ Ռոպէն-
սոն կրկին անգամ դիտակը դրաւ
նայեցաւ, բայց կասկածը խռո-
վութիւն փոխվեցաւ ․ վերջապէս
որոշ հասկըցաւ, որ եկողները
իր մարդիկը չէին ․ ուստի գնաց
որ սրտին խռովութիւնը Ուրբա-
թին յայտնէ, որ արդէն սաստա-
նած էր ։ Տիրելն ըսաց, ահա ա-
սոնք ոչ սպանեօլ են, և ոչ քու
հայրդ է ․ հապա այս մէկ ինկի-
լիզի մակոյկմընէ, ինկիլիզներով
լեցուն ։ Գերին որ լսեց դող ե-
լաւ ։ Եկո՛ հետս ըսաց տէրը, ե-
լան բարձր տեղ մը ․ ուսկից աղէկ
կերևնար հիւսիսային կողմը ծո-
վին ։

Այս տեղէն ծովուն վրայ նայ-

յածնաւն ալէս պաղեցան մնա-
ցին . լեզուներն փախաւ փայտ
կտրեցան : Վասն զի երկու մղոն
հեռաւն տեսան մեծ խնկիլիզի
նաւ մը, երկըթի վրայ կայնած :
Հիմա հոս զարմանքն ու վախը,
և ուրախութիւնը փափոխակի կը-
շարժէին Ռոպէնսոնին սիրտը .
կուրախանար տեսնելով եւրո-
պայի նաւ, որ զինքը կրնար այն
կղզիէն ազատել . զարմանար կը-
վախնար, վասն զի չկյտէր թէ
ինչ պատճառով կուգային կըմօ-
տենային իր կղզին . կընայէր որ
ալէկոծութեն եկած չեն, որով-
հետև քանի մը շաբաթ կար՝ որ
ծովը խաղաղ էր . նաւուն կեր-
պին կընայէր որ հարկաւորութի
մը չէր երևնար հոն մօտենալու :
Վասն զի ինչ պատճառ կրնար
ունենալ նաւաստը հոն երթա-
լու . այն կողմը խնկիլիզները
բնակութի չունէին և վաճառա-
կանութի մը չի կար . ուրեմն
պէտք եղաւ վախնալ՝ չըլլայ թէ

այն աւազակներուն ըլլալէն, որ Թիրադ կըկոչուին. որոնք այն կողմի կղզիներուն մէջ կըբնակէին, բոլորը վայրենի մարդիկ էին և մանկութէն առանց կրթութեան մեծնալով, ամենևին մեղքը չէին ճանչնար՝ ինչ որ ըսեն փոխաչունի կըռուէին. զրկողութիւն յափշտակութիւն ըլլայ, խորամանկութիւն նենգութիւն ըլլայ, մանաւանդ ուրիշին բանը կողոպտել իրենց մէջ կտրիճութիւն էր.

Նովուն ցամաքին վրայ գողութիւն աւազակութեան իրենց որըված է, ում չարիք կընեն. Այս անզգամ ժողովուրդը թեպէտ Եւրոպացոցմէ եկած ինկիլիզ են, բայց վայրենիներուն մէջ երկար ատեն բնակելով՝ անոնց բարքը առացեր են, իրենք ալ անզգամ մարդիկ ըլլալով բոլորը աւազակ եղեր են. որովհետև միշտ պակաս չեն եղած ինկիլթեռա այսպիսի գող աւազակ մարդիկ: Արդ Ռոպէնսոն առջի տարի-

ները առանձնական խեղճ կեան-
քին մէջ ըլլալով խիստ կըցան-
կար այս Թիրաններուն ձեռքէն
ելնել, ու գերի երթալ. որպէս
զի այս միջոցով կարենայ մարդ-
կային ընկերութիւն տեսնել. սա-
կայն հիմակվան վիճակին մէջ,
որ է այնչափ կարգաւորեալ և
քաղքը, զարհուրեցաւ որ չըլլայ
թէ այն աւազակներուն ձեռքն
իյնելով կորսնցընէ իր երջանկու-
թիւը. ուստի յայտնեց կասկածը
Ուրբաթ գերիին. եղան միատեղ-
նորէն դիտեցին մակոյկն, որ կը-
մօտենար կըզզիին. և ջանացին
որ հասկընան անոնց միտքը թէ
ինչու համար հոն կուգան.

Ռոպէնսոն ու գերին գացին
բարձր տեղ մը ելան, որ ծառե-
րով գոցված էր, ուսկից առանց
երևնալու՝ կրնային դիտել թէ
ինչ կընեն եկողները. տեսան որ
մակոյկին մէջ 11 հոգի կային,
եկան ցամաքն ելան մէկ մզոն ի-
րենցմէ հեռուն: Այս մարդիկ

դուրս ելլան ցամաքը՝ ութ հոգիին զինեալ էին, և իրեքը կապած ։ Այս կապածներուն ողորմելի տեսքը յայտնի կիմացընէր՝ որ մէկալոնցմէ ողորմութիւն կըխնդրէին, որ իրենց խնայեն . վասն զի մէկէն զէնք ունեցողներուն ոտքն ընկան աղաչանք կընէին . իրենցմէ երկուքը թևերնին վերցուցած երբեմն երբեմն կըխնդրէին՝ որ զիրենք ազատեն ։ Ռօպէնսօն այս խեղճ բանին որ տեսաւ՝ սիրտը չդիմացաւ , սաստիկ կըսկըծալով կըմտածէր թէ ինչ ընէ ։ Գերիին անաստենը մօտեցաւ տիրոջն ու ծիծաղելով ըսաց ։ Բէ՛հ ահա ձեր քաղաքացիներն ալ կուտեն եղեր իրենց գերիները ։ Գնա՛ ըսաց Ռօպէնսօն բարկանալով, անոնք ասանկ բան չեն ըներ ։ Միակերպ Ռօպէնսօն անոնց կընայէր դիտակով ։

Մեծապէս զարհուրեցան երբոր տեսան թէ զէնք ունեցողները վախցընելու համար թրով

կըդպչէին մէկալոնց գըլխուն, որ ծունկ չոքած էին առաջնին ։ Վերջապէս տեսան որ այս գերիները մինակ մնացին հոն . և մէկալոնք անտառին մէջ ցրվեցան ։ Այս իրեք խեղճ գերին սաստիկ խռոված և բոլորովին յուսահատած նստեցան հոն ։

Այս ողորմելի տեսարանը Ռօպէնսօնին սիրտը շարժելով միտքը ձգեց այն խորհուրդն՝ որ կղզին մտած ատենը առաջադրեր էր, թէ երբոր հանդիպի՝ ամէն վտանգի մէջ մտնէ խեղճ գերիներուն օգնութիւն հասնելու համար ։ Ուստի մէկէն Ուրբաթը խրկեց որ նայի հրացանները և ուրիշ գործիքները բերէ՝ որչափ որ կրնայ ։

Ռօպէնսօն կամեցաւ հոն մնալ ու դիտել թէ ինչ կընեն . գերին գնաց բոլոր պէտք եղած գործիքները ժողվեց բերաւ, աղէկ մը դիտելէն ետև հասկըցան որ մակոյկը բերող նաւավարները

ծառերուն տակը պառկած էին ասդին անդին կը քնանային կէսօրուան տաքին ատենը։ Ռօպէնսոն կ ժամ դիտելէն ետեւ՝ կորիձուլթ՞ւ առաջ գնաց դէպ՚ի խեղճ կապածներուն քով, որոնք նոյն տեղը ծովին քով նստած էին կռնակնին աստին։ Ռօպէնսօն իրենց մօտենալուն պէս կանչեց, թէ ո՞վ էք դուք. անանկ զարհուրեցան որ կարծեցին թէ կայծակ զարկաւ իրենց. Մէկէնիմէկ վեր ցատկեցին կուզէին փախչիլ. Ռօպէնսօն ինկլիզերէն ըսաց իրենց՝ թէ մի վախնաք ես ձեզի օգնելու համար եկայ։ Անոնցմէ մէկը գլուխը ծռելով պատասխան տուաւ, թէ արդեօք դուք երկինքէ՞ն եկած էք մեզի համար. և զարմանալով միակերպ կընայէր անոր երեսը։

Արկնեց Ռօպէնսօն թէ օգնութ՞իը երկինքէն կուգայ. բայց հիմա ինծի այս զրուցեցէք, թէ դուք ո՞վ էք, ձեզի ինչ պէտք է

ընել, և ինչ ճամբայով կրնամ ձեզ ազատել։ Մեկը պատասխան տվաւ, թէ ես այն նաւին նաւապետն եմ. ընկերներուն համար ալ ըսաց, թէ անոնց մէկը ղեկավար (տիւմէնճիս) էր, մէկալն ալ ճամբորդ էր։ Մեր նաւավարները մեզի դէմ ելան նաւը մեզմէ յափշտակեցին. կուզէին որ մէկէն մեռցընեն զիս երկու ընկերներովս. զի անոնք չմիաբանելով անոնց՝ անարգեցին ըրած գործքերնին. բայց ետքը մտածելով մեր կեանքը մեզի բաշխեցին, թէպէտ այս շնորհքը մեռցընելէն սարսափելի է. վասն զի բերին մեզ հոս ձգեցին այս անմարդաբնակ կղզին, ուր ամէն բանէն զուրկ ըլլալով ողորմելի պիտի կորսուինք։

Սրկնեց Ռօպէնսօն թէ երկու դաշինքով ձեզ կազատեմ այս խեղճութենէս, ու ձեզի համար ոչ արիւնս կխնայեմ և ոչ կեանքս.
Ի՞նչ բան են հարցուց նաւապետ։

տր՝ ո՞վ փառաւոր այր բարեպաշտ։ Անալ ըսաց թէ որչափ որ այս կղզիիս մէջ բնակիք, պէտք է որ իմ կամացս հնազանդ ըլլաք. իսկ եթէ ձեր նաւը առնեմ, պարտական ըլլաք զիս ու ընկերս Ինկիլթէրա տանելու։ Պատասխանեց նաւապետը թէ մենք ու նաւը և բոլոր մէջի եղածները ձեզի՛ ըլլան բացարձակապէս։

Միստր բարի ըսաց Ռօպէնսօն կապերնին քակելով՝ ահա ձեզի կուտամ մէյմէկ հրացան և մէյմէկ սուր այս խօսքով, որ մինչև ես չի կարգաւորեմ, դուք չի գործածէք։ Գիտնաք որ հիմա ձեր թշնամիները պառկեր կըքընանան մէկզմէկէ հեռու. Երթանք բռնենք զանոնք կապենք առանց արիւն թափելու. Համբայ ելան, քակած չուանները գերին հետն առաւ, որ այն իրեքը կապած էին։ Նախ տեսան որ նաւավարմը մօտ տեղ բռվեր պառկեր էր գետնին վրայ, ա-

նանկ խոր կը քնանար, որ ձեռքը ոտքը շարժեցին ու բերանը բան դրին, չարթընցաւ. յետոյ ձեռքերը ետեւէն կապեցին, երբոր արթընցաւ պատուիրեցին իրեն որ նոյն տեղը անանկ մնայ առանց ձայն մը հանելու. թէ չէ՝ նոյն կէտին կըկորսընցընէ կեանքը: Այս մարդը ծովը բռնած ըլլալով գլուխը դարձած էր, և անանկ ալ ըղեղը տաքցած էր՝ որ չէյտեր զինքը. որուն գլուխը դէպ 'ի ծովը դարձուցին, որպէս զի չի տեսնէ թէ մէկալոնք ինչ կըլլան: Երկրորդ նաւավարն ալ նոյն վիճակին մէջն ըլլալով կապեցին զինքն ու անդին դարձուցին, և առջինին պէս ըրին:

Ահա այսպէս ա̃ծային նախախնամութի̃ը յայտնի եղաւ այս դիպուածիս մէջ, թէ անմեղաց պաշտպան է ա̃ծ և վրէժխնդիր անօրէնութե̃ց, որով վեցն ալ դիւրին կերպով բռնեցին կապեցին. բայց ետքի երկուքը մէ-

կէն արթընցան վեր ցաթկեցին , զէնք առին ու զէմ դրին . Ռօպէնսօն մէկէն կանչեց իրենց թէ թշուառականներ տեսէք ձեր ընկերները . Ճանչցի՞ք մեր իշխանութիւն ձեր վրան , շուտով վար ձգեցէք ձեր զէնքերը , մէկ պզտի պակասութիւն մը թէ որ ընէք՝ ձեր կեանքը վտանգի մէջ կը ձգէք :

Շուտով զէնքերնին ձգեցին ու Ռօպէնսօնին ոտքն ընկան թողութիւն խնդրեցին իրենց նաւապետէն . անոնց ալ ձեռքերը կապեցին ինչպէս մէկալնուն , և ամէնը միատեղ տարին բանտը դրին այրի մը մէջ , որ նոր գտեր էին : Իրենց ասալ պատուիրեցին թէ՝ պահապանն որ զիրենք պիտի նայէր գլուխնին կըկտրէր , եւ որ իրենց մէջէն ջանայ դուռը բանալու : Զգուշութեան համար ամէնուն վրայէն դանակները առին : Անկէ ետև Ռօպէնսօն ու գերին նաև նաւապետը իրեն ընկերներովը դարձան ծովուն քով , մա-

կոյկը ցամաքը քաշեցին ու տա-
կը ծակեցին որ չըլլայ թէ մէկը
մտնէ մէջին ու նաւն երթայ՝ մինչև
որ բանը կարգի չի դնեն ։ Որով-
հետև նաւավարներուն շատը
նաւին մէջն էին, միայն 8 հոգին
եկան որ այն խեղճերը անմար-
դաբնակ կղզին ձգեն ու նաւն
տանեն երթան ։ Այս խորհուր-
դով այսպէս ըրին, որ նաւուն
մէջի եղողները երբոր տեսնէին
թէ մակոյկը չեկաւ, հարկաւ
ուրիշ մակոյկմ՝ ալ կըխրկէին,
որ գան առջի եկողները նաւը
տանին ։

Ոսպէնսանին այս խորհուրդը
պարապ ելաւ. վասն զի կէսօ-
րէն 3 ժամ ետև՝ նաւէն թնդա-
նօթ նետելով նշան կուտային,
որ ցամաքն եղած նաւավարները
մակոյկին տանին գան. տեսան որ
դարձող չի կայ, թէպէտև 3 ան-
գամ նշան տըւին, հարկադրեցան
ծովն ինկեցրնել միւս մակոյկն ու
շտկեցին դէպ 'ի ցամաքը կուգա-

յին ։ Ռոպէնսօն ընկերներուն հետ միատեղ բարձր տեղմ՝ ելաւ՝ կըդիտէր թէ ինչ կընեն ։

Վերջապէս մանկոյկը ցամաքին հասաւ, 10 հոգի ելան մէջէն վրանին լեցուն զէնք, դուրս ելածնուն պէս զարմանալով ասդին անդին կընայէին. վեր վար կըվազէին, ու իրենց ընկերները կըկանչէին անուննին տալով. բայց տեղէ մը ձայն չի կար, պատասխան չի կար ։ Երբոր տեսան մանկոյկը ցամաքը քաշած տակը ծակ՝ սոսկացին մնացին ։ Ռոպէնսօն նաւապետէն իմացաւ որ այն գերի բռնըված նաւավարներուն մէջէն 3 հոգին ակամայ մէկալոնց վախուն հաւաներ էին ապստամբութե. ուստի խրկեց Ուրբաթն ու ղեկավարն, որ զանոնք բանտէն հանեցին բերին ։

Նաւավարը Ռոպէնսօնին միտքը հասկընալէն ետև՝ լաւ մը նախատեց զանոնք ապստամբել-

նուն համար. եւ որք այսպէս ըսաց իրենց. թէ որ մենք ձեր յանցանքը ներենք, մեզի հետ հաւատարիմ կըմնա՞ք առանց զատվելու: Ամէնքը միաբերան դողալով պատասխան տուին, թէ մինչեւ 'ի մահ ձեզի հետ մէկ ենք: Մէկէն նաւապետին ոտքն ընկան. նաւապետը կրկնեց թէ ապստամբութէն առաջ եւ ձեզ պարկեշտ եւ պատուական մարդիկ ճանչցեր էի. կարծեմ թէ դուք ակամայ միաբանեցաք ապստամբներուն հետ. ուստի առջի անուննիդ կրնաք առնալ եւ ապստամբութէ անունը վրաններէդ քերել հաստատ հաւատարմութե̃ եւ փորձով: Այս խօսքերով անանկ զղջացան այն 3 նաւավարներն՝ որ մէկէն սկսան լալ անկեղծութե̃, եւ շնորհակալ ըլլալով նաւապետին ձեռքը պագին: Անալ սիրով զիրենք ընդունեց զէնքերը իրենց տալու, ու երդմնընցուց՝ որ ամ̃ զգուշութե̃ հնա-

զանգ ըլլան հրամանաց իրենց գլխաւորին, որ է Ռօպէնսօն։

Իսկ երկրորդ մակոյկին մարդիկը անդադար կըպօռային, ու երբեմն երբեմն հրացան կընետէին յուսալով թէ իրենց առջի ընկերները ասդին անդին ցրուած ըլլալով, կուգան կըմիանան։ Հուսկ յետոյ տեսան՝ թէ բոլոր իրենց յոյսը ոչնչացաւ, իրիկուան դէմ սկսան իրենք ալ վախնալ, ուստի ամէնքը մէկ տեղ եկան, ու մտան մակոյկին մէջ սկսան երթալ։ Որոնք կըվախնային որ չըլլայ թէ նաւը չի հասած՝ նաւուն մէջինները նաւն առնեն երթան առանց սպասելու իրենց։ Ասոնց այս կերպ շարժումը տրտմեցուց Ռօպէնսօնին և նաւապետին սիրտը, խռովեցան՝ որ չըլլայ թէ փախչընեն զանոնք։ Ուստի պէտք եղաւ որ ուրիշ ճամբայ մտածելով պատուիրեն Ուրբաթին և նաւավարներուն մէկին՝ որ ծա-

ծուկ երթան մակոյկներն մօտ ծա-ռերուն տակը պահուըտին ու կան-չեն թէ հոս եկէք, որոնցմէ հա-զար քայլ հեռուն էին. սաստալ պատուիրեցին թէ երբոր մէկա-լոնք ձայներնին լսելով մակոյկէն ելլէն գան դէպ 'ի ձայնը՝ իրենք կամաց կամաց հեռանան, ան-տառներէն ձայն տան, մինչև որ լաւ մը հեռացընեն անկէ, և ու-րիշ ճամբայ տանին:

Այս խորհուրդը խիստ լաւ յաջողեցաւ. վասն զի նաւավար-ները մակոյկը մտեր երթալու ատենը նայիս ձայնը առածնուն-պէս՝ ետ դարձան ու դուրս թափեցան և հրացանը ձեռքեր-նին դէպ 'ի ձայնը վազեցին. երկուք միայն մնացին որ մակոյ-կը նային: Իսկ Ուրբաթը իր ըն-կերին հետ միատեղ խիստ աղէկ բանը կատարեց որոնք ներս քա-շելով անտառը խօթեցին զանոնք 3 մղոնէն աւելի, և ուրիշ ճամ-բայով վազեցին եկան Ռոպէնսօ-

նին պատմեցին, որ իր խորհուր-
դը հասկըցուց նաւավարին. որ-
պէս զի առանց արիւն թափե-
լու զանոնք ալ բռնեն։

Գիշերը վրայ հասաւ կամաց
կամաց մութը կոխեց։ Երբոր
ձայն ձուն տեղմը չի կար՝ Ռօ-
պէնսօն ընկերներուն հետ միա-
տեղ գնաց դէպ ՚ի մակոյկը իբր
20 քայլ հեռու առանց իմանա-
լու երկու նաւավարներուն, որ
մակոյկը կընային։ Անատենը
յանկարծ ամէնքը միատեղ մա-
կոյկին վրան թափեցան պօռալով
և զէնքերնին շարժելով սպառ-
նացան. թէ հիմա երկուքնիդ
ալ կըմեռցընենք թէ որ տեղեր-
նուդ շարժիք։ Երկու նաւավար-
ները վախերնուն անձնատուր
եղան. ասոնք ալ վրանին գացին
ձեռքերնին ետին կապեցին։
Այս բանս կատարելէն ետե
մակոյկը ցամաքը հանեցին և որ-
չափ կարելի էր հեռուն տարին.
ետքը երկու կապածներն ալ տա-

րին մօտ տեղ անտառին մէջ պա-հեցին, ու կըսպասէին միւս նա-ւավարներուն որ մոլորած կը-պտըտէին։

Վերջապէս անօթնքալ եկան ետեւէ ետեւ հասան՝ խիստ հող-նած հարփիած պարապ վազելէն։ Սակայն երբոր մակոյկը չի գը-տան հոն՝ զարհուրելով յուսա-հատեցան. և անպատմելի խռո-վեցան։ Անոնք 5 հոգի էին՝ որ միատեղ կըմտածէին թէ ինչ ընեն. բայց Ռօպէնսօն մէկ նա-ւավար մը խրկեց իրենց հար-ցուց՝ թէ կամ զէնքերնիդ վար կըձգէք ու անձնատուր կըլլաք ձեր կամքովը կղզիիս գլխաւորին, և կամ կըջարդըւիք. ահա 30 քայլ հեռուն կեցած է, որ ձեր երկու մակոյկն ալ առաւ, մէ-կալ ընկերնիդ ալ գերի ըրաւ. ուստի՛ ձեզի ուրիշ բան մը չի կայ ընե-լու, պէտք է որ ընտրէք. մեռ-նիլ կուզէք, թէ անձնատուր ըլ-լալ։

Նաստենը Ռոպէնսոն ալ ըն-
կերներուն հետ միատեղ զէնքե-
րու ձայն հանեցին, որ նաւավար-
ները զարհուրեցան ։ Արդեօք
ներսում կուտա՞յ մեզի իշխանը,
հարցուցին ։ Նաւապետը հոն մօտ
ըլլալով ձայն հանեց, և տուանց
երևնալու այսպէս ըսաց ․ Թո-
մաս Սմիթ դուն իմ ձայնս կը-
ճանչնաս․ հիմա ձգեցէ՛ք զէնքեր-
նիդ, կեանքերնիդ կըբաշխենք
ձեզի, բաց 'ի Աքին նաւավարէ,
որ էր ապստամբներուն գլուխը ։
Ամէնքը զէնքերնին վար ձգեցին։
Աքին ալ սկսաւ լալով թողու-
թի խնդրել նաւապետէն ըրած
անօրէնութենը համար, և կըցցը-
նէր թէ ինքը ուրիշներէն աւելի
յանցաւոր չէ ։

Պատասխանեց նաւապետը՝
թէ որչափ որ ձեռքէս կուգայ
միջնորդութի կընեմ իշխանին
ձեր փրկութենը համար ։ Յետոյ
խրկեց Ռոբըթը իրեք ընկերով
որ անոնց ալ ձեռքերը կապէն ։

Այս միջոցիս մէջ իրեք հոգի ալ ապստամբներէն եկան հոն հասան, որ ետև մնացեր էին. երբոր ասոնք ալ բանը հասկըցան, ամենևին դէմ չի կեցան մէկէն անձնատուր եղան, որ ձեռքներին կապեցին.

Ին առենը Ռօպէնսօն զօրապետի հագուստով երևցաւ նաւապետին հետ միատեղ, և մօտեցան գերիներուն քով. ասոնց մէջ որոնք որ ուղիղ սրտով զղջացեր էին՝ իրենց հետ միատեղ տարին բնակարանը, մէկալոնք խրկեցին բանտը: Առաջուց հոն եղած նաւավարներուն մէջ երկու հոգի ալ կային որ նաւապետը գիտէր թէ սրտանց զղջացեր են, անոնք ալ բերել տուաւ. միատեղ նոյն գիշերը անցուցին:

## Լ. Դիպուած.

Բոլոր այս եղած յաջողութիւնները շուտով որոշեցին Ռօպէնսօնին վիճակը, խիստ ծանր կուգար իրեն անկէ ետև մնալ կղզիին մէջ. վասն զի սաստիկ սիրտը եղած էր որ երթայ ծնողքը տեսնէ. բայց այս յաջող դիպուածը նաւապետէն կըկախվէր՝, որ հօգ տանի. սակայն կըմտմըտար՝ թէ արդեօք կրնա՞յ նաւուն մէջի մնացողները հնազանդեցընէ. կրնա՞յ արդեօք երթայ նաւուն տիրէ ու անոնց վրայ իշխէ: Եթէ այս բանս յաջողէր՝ ահա ուզածը կըլլար, ամէն նեղութէն կազատէր, թէ չէ՝ նոյն վիճակին մէջ պէտք էր մնայ, և յոյս չէր ունենար որ անկէ ետքը կարենայ այն կղզիէն դուրս ելլել:

Որոնց որ ներում ըրեր էր և իրեն հետ կըբնակէին՝ 10 հոգի

ջէն. մէկ գլխաւորը կանչեց ըն-
կերներուն, որ մէկէն պատրաս-
տէին նաւակը և միւս ծակ նաւա-
կըն ալ շինեն. շուտ մը նայիս պա-
տրաստեցին երկուքն ալ ծովը
իջեցուցին։ Հրաման եղաւ որ
նաւապետը մէկ նաւակին գլուխ
ըլլայ, ղեկավարն ալ մէկալին. և
նաւավարներն ալ բաժնեցին կէ-
սը մէկին մէջը մտան, կէսն ալ
մէկալին։ Բոլորը զէնք առին՝
նաւակներն ալ աղէկ մը զօրա-
ցուցին։

Ռոպէնսօն փաթթըլեցաւ նաւ-
ւապետին, և յաջողութիւն խըն-
դրելով իրենց համար՝ ճամբայ
դրաւ։ Սակայն Ռոպէնսօն չէ
թէ վախնալուն համար չի գնաց
միատեղ, հապա խոհեմութիւն ընե-
լով կեցաւ, որ չըլլայ թէ հե-
ռանալով անկէ կապած գերինե-
րը ոտք ելլեն ու տիրեն խըքնա-
կարանին։ Այս մի միայն պա-
տսպարանն, որ ամէն պէտք ե-
ղած բանը ունէր մէջը: Ինչպէս

կրնար անխոհեմութիւն վտանգի մէջ ձգել ։

Նաև նաւապետն ալ այսպէս կըմտածէր. որ երբ հասկըցաւ թէ Ռոպէնսոնն ու Ուրբաթը հօն պիտի մնան իրենց բնակարանը պահելու համար, շատ ուրախացաւ ։ Եւ մութն որ կոխեց սկսան երթալ նաւուն վրայ ։ Թէպէտ Ռոպէնսոն ամէն բան կարգի դրաւ, բայց մեծ անհանգըստութեան մէջ էր, և անանկ խռոված էր՝ որ ամենևին սիրտը հանգիստ չէր ։ Երբեմն բնակարանը կերթար, երբեմն իր բերդը կըվազէր, և երբեմն սանդուխէն վեր կելլէր բնակարանին վրան՝ որ գիշերվան լռութեան մէջ նայի՝ թէ ինչ ձայն կըլսէ նաւէն, և բան մը կրնա՞յ հասկընալ նաւին վրայ ։ Թէպէտ բոլոր նոյն օրը բան մը չէր կերած, բայց անհնարին եղաւ որ բան մը ուտէ ։ Քանի գնաց իր հոգն աւելցաւ, վասն զի կըսպասէր որ նշան

մը ձայն մը առնէ նաւէն․ այն-
պէս խօսք դրեր էին որ եթէ ի-
րենք թնդանօթ նետվէր՝ յաջո-
ղութեան նշան էր․ սակայն կէս գի-
շեր եղաւ՝ բան չի կար։ Հուսկ
յետոյ մտածեց թէ ասանկ վա-
խի և յոյսի մէջ տանջըվիլը աղէկ
բան չէ․ մէկ միտք մը եկաւ ի-
րեն, հանկըցուց Ուրբաթին,
թէ երբոր կասկածելի դիպուած
մը պատահի՝ պէտք է միշտ ձախ-
որդին սպասել։ Եթէ ձախորդը
չի պատահի, մեծ երջանկութի
կըլլայ․ եթէ իրաւ պատահի ալ,
առաջուց նախատես. ըլլալով
պատրաստ կըլլայ մարդ և ճամ-
բայ մը կըգտնէ։ Ռօպէնսօն ահա
այսպէս միայն ձախորդը մտա-
ծելով կարծէր թէ անտարակոյս
գէշ պիտի ըլլայ այս բանին վեր-
ջը․ սակայն բոլորովին ա͞ծային
նախախնամութե͞ը զինքն յանձ-
նեց, որ այս վտանգն ալ անցընէ։
Նայիս յոյսը նորոգվեցաւ երբոր
հեռուէն յանկարծ լսեց թնդա-

նօթի շփոթ ձայն մը. մէկէն ա-
կանջը դըրաւ զգուշութեամբ մտիկ
կ'ընէր՝ երկրորդ անգամ նոյն
ձայնը առաւ, յետոյ երրորդ
անգամ ալ լսեց. ուստի սկսաւ
ուրախանալ թէ անտարակոյս
նաւերն տիրեցի, և մօտեցաւ ժա-
մանակն՝ որ ելլեմ երթամ եւ-
րոպա ։

Սաստիկ ուրախութենէն խել-
քը գլխէն գնաց, մէկէն հնչաւ
եկաւ Ուրբաթին վիզը փաթ-
թըւեցաւ, որ խատին վրայ նըս-
տած կըմրափէր. անանկ կուլար՝
որ չէր կրնար բան մը խօսիլ։
Պատասխանեց Ուրբաթը աչքը
բանալով, թէ ինչ կայ, տէր իմ.
ի՞նչ եղաւ քեզի. վախուն չիյտէր
թէ ինչ եղած է այսպիսի փոփո-
խութի՞ տեսնելով տիրոջը վրան։
Ռօպէնսօն անպատմելի խնդու-
թենէն ուրիշ բան չի կրցաւ ըսե-
լու, միայն այսչափ ըսաց. Ա՞հ
սիրելի՛ Ուրբաթ։ Անալ ինքնի-
րեն ըսաց որ ա͞ծ ողորմի տիրոջս

ու խելքը գլուխը բերէ․ կարծեր թէ յանկարծ խելքին բան մը եղաւ։ Պէտք է երթաս պառկիս կըսէր սիրելի՛ տէր իմ․ և ուզեց որ ձեռքէն բռնէ բնակարանը տանի։ Ռօպէնսօն ուրախ ձայնով կրկնեց․ Ես պառկիմ Ս'ուրբաթ, ես պառկիմ այս առթիս մէջ, որ ա͞ծ ամենաբարին իմ փափաքս պիտի պսակէ, որուն այսչափ տարի կըցանկայի։ Դուն չի լսեցիր իրեք անգամ թնդանօթին ձայնը, չիյտես որ յաջողութե͞ տիրեցինք նաւին։ Գերին երբոր լսեց՝ խիստ շատ ուրախացաւ․ բայց աւելի տիրոջը համար կուրախանար քան թէ իրեն համար․ վասն զի երբոր կըմտածէր թէ իր ծնած երկիրները պիտի ձգէ երթայ, հայրը այլ չպիտի տեսնէ՝ չարաչար կըվշտանար սիրտը․ և այս խորհուրդը միայն այնչափ սիրտը դառնացուց որ, մինչև մոռցաւ այնքան տեսած աղէկութիւնները և հրաշք։

ները Ռօպէնսօնին հետ, ըլլա-լովը. վասն զի հոն տեսաւ հայ-րը, նաև մեծ յոյս ունէր ա՛լ ա-ւելի բարիքներ տեսնելու:

Իսկ Ռօպէնսօն անանկ այլայ-լութիւն չէր տեսած՝ որ ուրախու-թիւն չգիտէր ինչ ընէ, մէկէն վեր ելաւ լեռը գնաց երեսի վրայ ին-կաւ երկրպագութիւն ըրաւ ու աչ-քը վերցուց դէպ 'ի երկինքը ու շնորհակալ եղաւ, որ իրեն ողոր-մելով վերջապէս այս միջոցը տը-ւաւ՝ որ այս կղզիէն ելլէ: Անկէ շուտով վար ինջաւ եկաւ սիրելի Ուրբաթին քով միայն Ամպուրկ քաղքին վրայ կըխօսէր. և ըսկը-սաւ բաները կարգի դնել: Բո-լոր նոյն գիշերը ասանկբաներով անցուց ամենևին չի հանգչեցաւ: Առաւօտուն կանուխ չի լուս-ցած աչքը դրաւ նաւուն վրայ միշտ այն կողմը կընայէր, ուր որ նաւը երկըլթի վրայ կեցած էր: Նայելով սիրտը հատաւ, կըփափաքէր որ աղէկ մը լուս-

նայ, որպէս զի ուզածին պէս զը-ւարճանալով դիտէ նաւուն, որ զինքը պիտի ազատէր անկէ։

Ահա նոյն փափաքելի րոպէն եկաւ՝ լուսացաւ․ բայց ուրախանալու տեղը խեղճ ողորմելին աղաղակելով գետին ինկաւ, վասն զի տեսաւ որ նաւը աներևոյթ եղեր է․ ի՞նչ խեղճութի՜ թափեց, ի՞նչ ողբեր ըրաւ՝ չի պատմըվիր։ Ուրբաթը վազեց եկաւ, երկար ատեն զարմացաւ մնաց՝ թէ ի՞նչ եղած է իր տիրոջը։ Հուսկ յետոյ տէրը դողալով ցոյց տուաւ Ուրբաթին, նայէ՛ դէպ 'ի ծովը՝ կըսէր տկար և մարած ձայնով․ իսկ Ուրբաթը հասկընալով տիրոջը վշտանալուն պատճառը շատ խռովեցաւ ։

Ռոպէնսոն այս իրեն օրինակովը կըյայտնէ․ թէ ո՞րչափ պէտք է մարդուս համբերութի ունենալ, որ իր կիրքը իրեն չի յաղթէ, ու կիրքը տէր չըլլայ մարդուն․ որովհետև եթէ Ռոպէն-

սօն քիչմը առաջ այնչափ չափա-
զանց ուրախութեան մէջ ընկած չըլ-
լար, հիմա ալ այսպիսի չափազանց
տրտմութիւն չէր պաշարվէր՝, և իր
ազատ բանականութիւնը տրտմու-
թիւն չէր խաւարեր ։ Նաև կըր-
նար ուշաբերելութե միշտ ձախորդ
դիպուածին մէջ հաստատ մնալու
է, և նեղութեանց մէջ ալ կամօքը
համակերպելու է, թէպէտ և
յաջողութեան յոյս մը չըլլայ ։ Մա-
նաւանդ թե կըվայլէր իրեն մտա-
ծել, թէ ա̃ծային նախախնա-
մութիւնը կրնայ դիւրին կերպով
վերջը փոխել ուրախութեան, որուն
առջև չի կայ անկարելի բան մը ։
Այսպիսի բաներ թէ որ մտա-
ծէր, պէտք էր որ սիրտը հանգ-
չէր ու ասանկ չի յուսահատէր ։
Ուրեմն որչափ կատարեալ ըլլայ
մարդ և ծեր, պէտք է որ միշտ
զինքը կըրթէ ու փորձութեանց մէջ
անխռով մնայ ։

Երբոր Թոպէնսօն ասանկ յու-
սահատեր էր և Ուրբանթ գերին

զինքը կըմխիթարէր, յանկարծ ոտքի ձայն առին լեռանը մէկալ կողմանէն. անանկ կերևնար որ շատ մարդիկ կուգան ։ Մէկէն վեր ցատկեցին ու չորս դին կընայէին ։ Նայիս հիանալով տեսան որ Նաւապետը մէկ քանի հոգիով լեռանը վրան կելլէր ։ Ռոպէնսօն Թևերը բացած երբոր դարձաւ Նաւապետին դին, տեսաւ որ Նաւը երկթի վրայ կեցած էր արևմտեան կողմը կըղզիին՝ ահա բոլոր տրտմութիւնը ուրախութիւն փոխվեցաւ ։ Այսչափ միայն հասկըցաւ որ Նաւապետը գիշերանց Նաւը միւս կողմը տարեր էր. հոն մօտիկ տեղ ըլլալով ցամաքին և ապահով ըլլալուն համար աւելի դիւրին կըլլար իրենց բանը հոգալ. անոր համար հոն գացեր էր ։ Ռօպէնսօն ուրախութենէն Նաւապետին փաթթըված մնաց՝ չէր կըրնար զատվիլ. նմանապէս Նաւապետն ալ իրեն կողմանէ սաստիկ

ուրախութենէն՝ որ ի՛նչ խնդմու-թենէն ի՛նչ երջանկութե՜ հասաւ, գիտէր ի՛նչպէս շնորհակալ ըլլալ Ռօպէնսօնին. փնտռել անոր փափախանկի։

Նաւաստը սկսաւ պատմել թէ ի՛նչպէս յաջողեցաւ իրեն տիրել նաւուն առանց մարդ մը մեռնելու և վիրաւորելու. վասն զի մութ գիշերանց առանց մարդ-տեմնելու ընկերներուն հետ միատեղ նաւը կրմտնեն դիւրութե՜. և նաւուն մէջի եղօղներուն շատը զէնքը կրծողունին. թէպէտ ամանք աւելի չար ըլլալով ուզեցին դէմ դնել. բայց բան մը չի կրցան ընել մէկէն ստիպեցան զէնքերնին վար ձգել. Նաւաստետը պատմութիւնը լմընցուց ու ըսկըսաւ երախտագիտութի՛ ցըցնելով իրեն ազատողին շնորհակալ ըլլալ, որ այսչափ աղէկութեանց պատճառ եղաւ[1]։ Ահա դուն ես

1 Օրագրութե՛ մէջ կըսէ թէ նաւը գացողները 12 հոգի էին. որոնք երբոր գիշե-

ազատարիչս՝ ով բարեկամս Ռօպէն-
սոն՝ կըսէր լալով . որ քու ցա-
ւակցութիւն և խոհեմութիւնդ զիս
ալ ազատեցիր նաւս ալ ազատե-
ցիր ։ Սակայն քեզ կըվայլէ այն ,
ինչպէս որ կուզես անանկ կար-
գադրէ՛ նաւը . յետոյ հանեցնա-
ւէն բերած պաշարները . և նոյն-
օրը ամէնքը միատեղ մեծ ու-
րախութեամբ տօնախմբութիւն ըրին
ազնիւ կերակուրներով և գինի-
ներով ։

Նայս միջոցիս մէջ Ռօպէնսոն
ալ իրեն հանդիպած արտաքոյ
դիպուածը պատմեց . որուն վրայ
խիստ շատ կըզարմանար նաւա-
պետը ։ Յետոյ աղաչեց Ռօպէն-
սոնին , թէ ինչ որ կուզես ինծի
պատուիրէ՝ ընեմ ։ Պատասխանեց

րանց մօտեցան նաւին , նաւապետը պա-
տուիրեց մէկ նաւավարին որ ձայն տայ նաւին
մէջի պահապաններուն թէ ընկերնիս գը-
տանք բերինք ։ Ուստի մօտեցան նաւին . Նախ
նաւապետը իր ընկերներով նաւը մտան
զէնքով , մէկէն կոտորեցին միաբան ամբոխեցին
նաւուն ։

Ռօպէնսօն թէ բաց 'ի երեկվան ըրած դաշինքէս՝ որ վարձատրե-ցի քեզ ըրած ծառայութեանդ համար, իրեք չնորհք ալ տէրու-թենէդ կը խնդրեմ։ Նախ՝ կա-ղաչեմ մինչև որ Սպանեօլն ու ու Ուրբաթին հայրը չի գայ՝ չերթանք ասկէ. Երկրորդ՝ չէ թէ միայն մենք մեր մարդիքներով երթանք, հապա բոլոր սպանեօլ-ներն ալ հետերնիս տանինք ի-րենց հայրենիքը։ Երրորդ՝ խնդրի բաշխէ՛ ապստամբներուն կեանքն որ բանտն են. մի՛ պատուհասեր զանոնք վրէժխնդրութիւն իմ կըղ-զիիս մէջ. գիտնալով՝ որ այս ճամ-բայով ալ աղէկ կընայ զանոնք ուղղել։ Նաւապետը խօսք տը-վաւ, թէ ամենայն զգուշութիւ պատրաստական եմ կատարել այս խնդիրքներդ. յետոյ բերել տը-վաւ ապստամբները, և ըրած ա-նօրէնութիւնները երեսնին տվաւ ու դատապարտութեան վճիռը առաջինին դրաւ։

Երբոր լսեցին ամենուն բե-
րաննին չի բացվեցաւ. վասն զի
գիտեին՝ որ ըստ արդար օրինաց
արժանի են մահու: Իսկ Ռօ-
պէնսօն մարդավար և գթած
սրտովը խրատեց զանոնք. յե-
տոյ հասկըցուց թե ինչ եղանա-
կաւ պիտի վարվեին հոն. իրենց
խոստացաւ ոչ միայն չի պատու-
հասել, հապա՝ բոլոր կղզին ի-
րենց պիտի յանձնէր մէջի եղած
գանձովը, կենդանիներովը, և
բոլոր շինած բաներովը: Նաև
իրենց պատուիրեց շատ բաներ,
որպէս զի այ̃ ապաւինելով՝ միա-
բան սիրով աշխատին. աս ալ
հասկըցուց որ այս առաքինութիւնը
շարունակ այսպէս ընելով անանկ
կըքաղցրանայ իրենց այն կեանքն,
որ չեն ուզեր կղզիէն դուրս
ելլել:

Երբոր այսպէս կըխրատէր՝
Ուրբաթը վազելով եկաւ աւե-
տիս տվաւ՝ թե հայրս և Սպա-
նեօլը եկան ցամաքն ելան: Նայ-

իւ ամէնքը միատեղ վազեցին
դէմ գացին. իսկ Ուրբաթը թը-
ռաւ կայծակի պէս հասաւ հօրը
փաթթըվեցաւ. մէկալոնք ալ
հոն հասան: Ռօպէնսօն նայե-
ցաւ ու խիստ զարմացաւ. վասն
զի տեսաւ որ եկողներուն մէջ
երկուք ալ կնիկ մարդ կային.
հարցուց Հինգշաբթիին, իմա-
ցաւ՝ որ անոնք էին երկու սպա-
նեօլներուն ընկերները: Անոնք
երբոր լսեցին թէ Ռօպէնսօն մէկ
քանի նաւավար պիտի ձգէ կըղ-
զիին մէջ ու ինքը պիտի երթայ,
աղաչեցին որ զիրենք ալ հոն ձգէ
իրենց կնիկներովը. խօսք տվին
թէ ուր տեղ որ կամենայ, հոն
կըբնակին իրեն հրամանովը: Ռօ-
պէնսօն ուրախանալով անոնց
խնդիրքին վրայ, խիստ բարի ը-
սաց զըւարճութիւն. վասն զի շատ
հաճեցաւ որ այսպիսի մարդիկ
բնակին իր կղզին, որոնց վերայ
բարի վկայեցին ընկերները. որ-
որպէս զի կարենան վարվիլ ա-

պըստամբներուն հետ, որ պիտի հոն ձգէր. և քաղցր կարգաւորեալ կեանք մը իրարու հետ վարել: Եւ այս խորհրդով որոշեց որ ասոնց իշխանուե̄ը տակն ըլլան անոնք: Որոնց վեցը ինկիլիզ էին, և երկուքը սպանեօլ իրենց ընտանեօքը: Ռօպէնսօն ամէնը մէկտեղ կանչեց՝ իր կամքը յայտնեց իրենց այս խօսակցութեամբս:

Յուսամ թէ կըսէր, ձեզմէ մարդ մը իմ կարգադրութե̄ս չի հակառակիր, որ պիտի տրամադրեմ իմ ստացուածքս, որ է այս կղզին, և մէջի ամէն բանը. ես կըփափաքիմ՝ որ հաւատարապէս ամէնուդ բարի ըլլայ. բայց որպէս զի հաստատութի̄ մնաք հոս, պէտք է ձեզի կարգ և կարգադրութի̄. որ միայն ինծի կըխնի օրինադրել ձեզ: Ուստի ահա իմ կողմանէս ես կըդնեմ երկու սպանեօլները իմ տեղս գլուխ. որ ասկէ ետև ըլլան օ-

բինաւոր տէր կը գրիս ։ Պարտա-
կան էք որ ատոնց կատարեալ
հնազանդութիւն ընէք, որոնք
այնտեղ է որ իշխեն երկրին, և ա-
նոր մէջը բնակին ։ Բոլոր պէտքե-
րը լաւ պահեն, և զգուշութե-
նային ամէն պատերազմական
գործիքները, և բոլոր բաները ։
սակայն երբոր հարկաւոր ըլլայ՝
պարտական ըլլան ձեզի տալու
այս պայմանով, որ դուք ալ ա-
մենայն կերպով ըլլաք խոնարհ
հպատակ և հանդարտ ։ Որչափ
որ վտանգ պատահելու ըլլայ՝
պէտք է որ ամէնքնիդ միատեղ
ջանաք մէկզմէկ պաշտպանելու ։

Հասարակաբար ըլլայ նաև
երկրագործութեան աշխատանքը
թէ արտերուն մէջ և թէ պար-
տէզներուն մէջ. Նմանապէս հա-
ւասար բաժնըվի եղած պտուղը ։
Կրնայ ըլլալ որ օր մը լսեմ ձեր
բարի լուրը. Նմանապէս կրնայ
ըլլալ՝ որ օր մը դառնամ գամ
հոս կատարեմ իմ մնացած օրս.

ինչպէս որ առհա մեծապէս փորձ
եմ՝ կիմանամ թէ ինչպէս սի-
րելի է ինձի այս կղզիս ։ Անա-
տենը՝ վայ անոր որ իմ կարգիս
դէմ բան մը գործած ըլլայ . ա-
ռանց ողորմութեան սաստիկ տան-
ջանօք ծովը կընետեմ այնպի-
սին ։ Ամէնքը հաւանեցան այս
կարգադրութեան , և խոստացան
ճշմարիտ հնազանդութի ։

Յետոյ Ռօպէնսօն նշանեց՝
ինչ որ հետը պիտի տանէր . և
պատուիրեց որ մէկէն նաւը տա-
նին , որ էին ա՝ կաշիէ հագուս-
տը , հովանոցը , և երեսին ծած-
կոցը , որոնք որ ինքն էր շիներ .
Բ՝ տէգը , քարէ կացինը , և ա-
ղեղը , որ էին իր գործիքը . Գ՝
փօլ թութակը , շունը , և երկու
լաման . Դ՝ մինակութեան մէջ շի-
նած բաները և ամանները . Ե՝
ոսկիի մանրուքն ու անդամաման-
դը . նաև ձոյլ ոսկին , որ գտեր
էր հողին մէջ ։

Բոլոր այս բաները նաւը դը-

րաւ հովն ալ յաջող կըփչէր ո-
րոշեց որ միւս օրը Ճամբայ ելլէ։
Ռոպէնսոն ու Ուրբաթը պատ-
րաստեցին լաւ հարկիք մը, որ
տօնախմբութի կատարեն երթա-
լէն առաջ և աղէկ մը հարկեն
նաւապետը՝ նաև զանոնք. որ
կղզին պիտի բնակէին։ Այնպի-
սի ազնիւ բաներով լաւ պատ-
ւեցին զամէնքը, մինչև նաւա-
պետը սաստիկ զարմացաւ Ռո-
պէնսոնին ճարտարութեանը վրայ,
թէ ի՞նչպէս զամէնքը կուրախա-
ցընէր և ամէնուն սիրտը կըշա-
հէր պատուասիրութեամբ և մարդա-
վարութեամբ։ Նաւապետն ալ Ռո-
պէնսոնին նմանելով և անոր ա-
ռատասրտութեանը պատասխանե-
լու համար նաւէն բերել տուաւ
ուտելու բաներ, նաև վառօդ և
երկաթեղէն գործիքներ ու ըն-
ծայ ըրաւ նոր բնակիչներուն։

Երիկուն եղաւ՝ Ռոպէնսոն ա-
ղաչեց որ թող տան իրեն, մէկ
ժամ մը մինակ նստի մտածէ

նայի՝ երթալէն առաջ ընելու բան մը կա՛ն նէ՝ ընէ։ Ամէնքն որ իրմէն հեռացան, ելաւ լեռանը վրան չորս դին նայելով միտքը բերաւ բոլոր քաշածները, որ մինչեւ նոյն օրը քաշեր անցուցեր էր հոն. ա̃ծային բարիքները մտածելով անանկ սիրտը ելաւ, որ մորմոքելով բերանը հողին տվաւ շնորհակալ եղաւ իր բարերար ստեղծողին որդիական սիրելութե̃ն։

Ի՞նչպէս կարենամ յայտնել կըսէր՝ անհուն բարիքն որ տեսեր եմ, լաւ կըճանչնամ։ Սակայն խօսքս կըպակսի չեմ կրնար բացատրել սրտիս մէջի տպաւորած երախտիքն՝ որ երկնաւորն ինծի ըրած է, պարտական կըճանչնամ զիս յաւիտեան։ Այս խոկումներն ըրաւ կատարեց մեծ շնորհակալութե̃ն։ Ահա եկաւ ժամանակը անկէ մեկնելու. Ռօպէնսօն բարձրէն սկսաւ անոյշ խօսքերով յորդորել վարի ե-

զօղլներն, որ միաբան ըլլան, սի-
րով աշխատին միշտ. մանաւանդ
բարեպաշտ և բարի վարք ունե-
նալով միշտ նոյն խրատները սըր-
տերնուն մէջ պահեն, որոնք իր-
րև իր եղբայրները յանձնեց մ̃յ
ձեռքը. որուն շատ անգամ մե-
ծամեծ հրաշքը տեսեր էր եր-
ջանկութ̃ն: Հուսկ յետոյ վերջի
անգամին ալ աչքը դարձուց չորս
դին նայեցաւ զըւարճութ̃ն, և
նորէն մ̃յ շնորհակալ եղաւ, որ
զինքը այնչափ վտանգներէ պա-
հելով նոյն օրուան հասուց, և
այնպիսի սքանչելի հրաշքներ և
աղէկութիններ իրեն յայտնեց
մինչև նոյն օրը:

Վերջապէս եռքի մնալը բա-
րովն ալ ըրաւ նոր բնակիչնե-
րուն. բայց տրտմութէն այլ ձայ-
նը հատեր էր: Ուրբաթն ու
Հինգշաբթի գերին հետն առաւ
չորս դին բարևելով լալագին մը-
տաւ մակոյկին մէջ, գնաց մեծ
նաւը մտաւ, նաև սպանեօլներն

ալ եկան նաւուն որ միատեղ երթան։ Եւ այսպէս այսչափ տարուան բաղձանքը Ռոպէնսօնին կատարեցաւ, և 12 տարի հոն բնակելէն ետև մեկնեցաւ անկէ Ճամբայ ելաւ, որ իր հայրենիքն երթայ, ծնողքը տեսնէ։

Հովը յաջող և անոյշ կըփըչէր՝ անանկ լաւ կերթային որ նաւուն մէջի եղողներուն կերևնար թէ կղզին կըփախչի իրենցմէ արագութեամբ։ Ռոպէնսօն նաւուն վրայ կեցած շարունակ իրեն կղզիին կընայէր տրտում և անխօս, ամենևին աչքը չէր փոխէր անկէ. վասն զի 12 տարուան հոն բնակիլը, և այնչափ բաներ քաշելը և ամէն վշտաց յաղթելով յաջողութիւն գտնելը՝ բուն իր հայրենիքէն աւելի քաղցր և սիրելի ըրեր էին իրեն այն կղզին։ Հուսկ յետոյ կղզին աներևոյթ եղև տեսութենէն. սկսաւ հառաչելով երգ ըսել իր զատուելուն վրայ. յետոյ գնաց նաւապետին խուցը

մնաց Ուրբաթին և Հինգշաբ-
թիին հետ միատեղ, որ ուրա-
խական խօսքերով մխիթարէ սըր-
տին տրտմութիւնը բարեկամական
կենակցութեամբ։

Այս համբորդութիւնը այնչափ
յաջող եղաւ, որ 24 օրը հասաւ
նաւը Քատիչէ քաղաքը Սպա-
նեօլին, և հոն հանեցին համ-
բորդ սպանեօլներն, որ Ամերի-
կայէն բերեր էին։

Ռոպէնսօն քաղաքն որ մնաց,
հարցուց վաճառականներուն որ
գիտնայ թէ որուն պէտք էր տալ
ոսկիի մանրուքն՝ որ ցամաքը
նստած նաւէն հաներ էր։ Շատ
մեծապէս ուրախացաւ երբոր
գտաւ տէրը. և հասկըցաւ որ ե-
րեւելի վաճառական ըլլալով
թշուառութեան մէջ էր ընկեր նա-
ւուն կորսըվելովը. և այն մէկ
տակառ ոսկին ձեռքը ձգելովը նե-
ղութենէն ազատեցաւ. որովհետեւ
նաւին կորուստը յուսահատութեան
մէջ էր ձգեր խեղճ վաճառակա-

նը. և անանկ շփոթեր էր որ պի-
տի բացն ելլէր, բոլոր ունեցածը
բաժնելով առնելիքի տէրերուն՝
գոցէր պիտի առուտուրը։

Ահա մէկ տակառ ոսկին բա-
ւական եղաւ զինքը վերցընելու,
և առջի աստիճանը դնելու. ա-
սոր համար այնչափ մեծ ճանչ-
ցաւ իր բարերար Ռօպէնսօնին
ըրած շնորհքին՝ որ ուզեց ոսկիին
կէսը անոր ընծայ ընել, բայց Ռօ-
պէնսօն ամենեւին չի մօտեցաւ.
նաև յայտնի վկայեց թէ ես եմ
պարտական ձեր երախտագի-
տութեան, և ա՛լ աւելի պէտք էր
ձեզի հատուցանել, որ քեզի պէս
պատուաւոր վաճառական մը իր
վաճառականութեան պատիւը գը-
տաւ. ահա այս ինծի մեծ բան է։

Այն քաղքէն ելան որ ինկիլ-
թէռա անցնին, ճամբան երթա-
լու ատենը մէկ խեղճ դիպուած
մը պատահեցաւ. վասն զի Հինդ-
շարթի գետին մէկէնիմէկ հի-
ւընդցաւ, որչափ որ դեղ և ճար

ըրին ամենևին օգուտ մը չե-ղաւ։ Որդուն ըրած խեղճութենե-րը չի պատմըվիր․ տրտմութենէն յուսահատեցաւ եբբոր սիրական հայրը մեռաւ։ Երկու լամաներն ալ անոր[1] նման հիւընդցան և ծովուն օդէն երկար չդիմանա-լով մեռան։

Նաւը յաջողութբ հասաւ ինկիլթերա․ Ռօպէնսօն կըյու-սար որ կարենայ գտնել հոն Որ-բէվարի կնիկը այն ինկիլիզըն․ որուն անդամանդները քոմն էր։ Հատ փնտըռեց հարցուց՝ վեր-ջապէս փնտըռելով գտաւ․ բայց

1 Որովհետև վարի աշխարհքին օդը վերի աշխարհքին չի յարմարիր․ զորօրինակ վերի աշխարհքէն գաղթականներուն շատը կըմեռնին և կըտկարին հիւանդութբ, ինչպէս որ Ռօպէնսօն եղաւ․ այսպէս ալ վարի աշխարհ-քին մարդկանց վերի օդը չի գար։ Ուրբա-թին հայրը տարիքն առած ծեր մարդ ըլլա-լով չդիմացաւ վերի օդին և ջրին մեռաւ, նմանապէս լամաներն ալ վարի աշխարհքի կենդանի ըլլալով վնասեցան․ շատ կենդա-նի կայ հոս, որ հոն երթան շուտով կը-մեռնին։

խիստ ողորմելի աղքատ եղեր էր. որովհետեւ երկու տարիէն՚ի վեր ոչ հնդկաստանէն բան եկած էր և ոչ երկանէն օգնութիւն մը եղած էր իրեն, անոր համար իր զաւկըներովը վերջին աղքատութեան հասեր էր. Հինումին լաթերով անանկ ողորմելի էին, որ երեսնին մեռելի գոյն էր, խեղճութիւնը վրաներէն կըկաթէր:

Ոսպէնսանին մեծ ուրախութիւն եղաւ այս անգամ ալ, և շատ բերկրեցաւ սիրտը այս խեղճերուն բարերարութիւն ընելով. շընորհակալ կըլլար՝ որ ա̃ծային նախախնամութիւնը զինքը իրեն գործիք ընելով անանկ խեղճերուն սիրտը կուրախացըներ և ուրիշներուն կարօտութիւնը կըլեցըներ: Ուստի տուաւ այն խեղճերուն մնտուկ մը անդամանդը, որոնք աղքատութե̃ չորցած ծառի նման էին եղեր, մէկէն սկսան կանանչնալով ծաղկիլ հա-

րստութեամբ և մեծութեամբ։ Եւ այս-պէս իրեն պատճառ ըլլալովը՝ տեսաւ որ այս մարած տունը հարստացաւ, և մեծ ուրախու-թեամբ կըզուարճանային իրենց բաղդին վրան, որ այնչափ ողոր-մելութեան հասեր էր։

Ռօպէնսօն նաւահանգստին մէջ նաւ մը գտաւ որ Ամպուրկ պիտի երթար. հրաման ուզեց իր ինկլիզ նաւապետէն որ մէ-կալ նաւին հետ երթայ, կըվախ-նար որ անոր անոյշ բարքը կը-պարտաւորէ զինքն որ հետը ու-շանայ հոն. ուստի Ուրբաթին հետ միատեղ պատրաստուեցաւ, որ Ամպուրկի նաւը մտնէ, որն որ առանց ուշանալու շուտով պիտի ելլէր։ Այս փոփոխութիւնը շատ օգտակար եղաւ Ռօպէնսօ-նին որ շուտ մը ճամբայ ելան, ու յաջողութեամբ Հէյմիլէան ճամ-բայէն կերթային։ Վերջապէս սկսաւ երևնալ Ռօպէնսօնին ծը-նած քաղաքներուն հորիզոնը

կամ եղերքը. որ այնչափ կը փա-
փաքէր տեսնելու, մինչև ուրա-
խութենէն սիրտը կը հալէր։

Ահա հասաւ նաւը Ելպա գե-
տին բերանը. Նայիս յանկարծ
սաստիկ հով ելաւ ու սաստիկ
ալէկոծութիւն հանեց, անանկ որ
նաւը յափշտակեցաւ հովէն դէպ
՚ի ցամաքն ընկաւ բանուէն։ Այն-
չափ աշխատեցան չի կրցան նա-
ւը շտկել և անհնարին եղաւ
վտանգէն ազատել։ Մէկէնիմէկ
սաստիկ փոթորիկ մը վրայ հա-
սաւ, ամէն բան վերիվար ը-
րաւ. ետքը վերցուց նաւը տա-
րաւ ցամաք տեղ մը ձգեց՝ որ
նաւին տակը բացվելով ջուրը
լեցվեցաւ մէջն ու նաւն ընկղ-
մեց. ուստի ուրիշ բան չի կրցան
ընել, ջանացին միայն հոգինին
ազատել. բոլոր նաւին մարդիկը
լեցվեցան նաւակին մէջ մեռնե-
լէն ազատեցան։

Ռոպէնսոն ընկերներուն հետ
միատեղ հասաւ Քիւաքաւ քա-

ղաքը մերկ և աղքատ ինչպէս ու-
ղորմելի ճամբորդ մը, որ շատ
անգամ ալէկոծութիւն քաշելով
վերջապէս ցամաքն ելաւ և իր
երկիրները հասաւ՝ բայց բոլոր
հարստութիւնը կորսնցուց. միայն
հաւատարիմ շունը ազատեցաւ՝
որ ծովը նետուեցաւ ու ետեւէն
եկաւ. Նաև փոլ թութակն ալ
ալէկոծութեան ատենը քովէն չի
զատուելով ազատեցաւ։

Վիճ մը ատենէն ետև տե-
սաւ որ նաւուն մէջի բաներէն
բան դուրս զարկաւ. գնաց փըն-
տըռեց գտաւ հովանոցն ու կա-
շիէ հագուստը, և երեսին ծած-
կոցը, ասոնք առաւ պահեց. բայց
մեծ կտոր ոսկին կորաւ գնաց։
Եւ այսպէս ահա Ռոպէնսոն Ամ-
պուրկէն ելած ատենը որչափ որ
բան ունէր և ինչ աստիճանի
մարդ էր, նոյն աստիճանով դար-
ձաւ եկաւ նորէն Ամպուրկ։

Կրնայ ըլլալ որ ա̃ծ ամենա-
բարին խորհրդով այսպէս կար-

պտուղրէց․ որպէս զի խորատվին կարձամիտ պատանիք, որ չըլլայ թէ առանց մտածելու ուզէն Ռօպէնսօնին նմանիլ և աշխարհք պտըտելով շրջիլ, որ փանձ գտնեն ու հարուստ դառնան իրենց հայրենիքը։ Սակայն Ռօպէնսօն իր կողմանէ ամենևին բան մը չէր մտածեր, և կորուսածին վրայ ոչ երբէք կըկըսկըծար։ Որովհետև միտքը դրեր էր որ մնացած կեանքը պարզ և չափաւոր անցընէ, միշտ աշխատանքի հետ ըլլայ՝ ինչպէս որ սորված էր իր կղզին մէջ․ ասոր համար իրեն մեծ բան մը չէր երևնար՝ գտնէր չի գտնէր այն կտոր ոսկին ։

Ռիւսքաւ քաղքէն նաւը մըտաւ դէպ 'ի Ամպուրկ ճամբայ ելաւ․ Ելպա գետէն երթալով հասաւ Սթատին դիմացը․ երթոր ասկէ Ամպուրկին զանգակատունները տեսաւ՝ սաստիկ ուրախութէն կուլար։ Չորս ժամ

մնաց որ համնի իր ծնած քաղաքը, և սիրական հայրը տեսնէ ու կարօտն առնէ. վասն զի Քիւսքաւ քաղաքը լսեց որ մայրը մեռած է, դառն արտասուօք կուլար սիրելի մօրը վրայ։ Ծովին բարձրանալովը և հովին յաջողութ̄ըը նաւու ը անանկ կըվազէր որ աւելի կերևնար թէ կըթռչի քան թէ կըքալէ։ Անցան Պլանքէնէզը և հասան Նէօէնսթատ. և անկէ Ալթօնա։ Հուսկ յետոյ մտաւ Ամպուրկին նաւահանգիստը։

Ռօպէնսօնին սիրտը ուրախութենէն սկսաւ զարնել և դողալ, մինչև չդիմացաւ նաւէն դուրս ցաթկեց ցամաքը. և առանց նըկատելու այնչափ բազմութիւն որ կընայէին, ընկաւ գետինը՝ երեսը հողին քսելով կըհամբուրէր իր հայրենիքը. տեսաւ որ հետաքրքիր բազմութ̄ը վրան թափեցան՝ ելաւ գնաց այն տեղի եղած օթարանը որ կըսվի Պօմ։

Անկէ հօրը տունը մարդ խրկեց, որ իմացընէ թէ ողջին եկաւ, և այն անկարծելի բանը ուզեց որ կամաց կամաց իմանայ հայրը։ Խրկած մարդուն պատուիրեց որ հայրը գտնէ զուրցէ, թէ մէկը կուզէ զինքը տեսնել. և որդուն վրայ իրեն բաներ ունի պատմել, որով շատ պիտի ուրախանայ։ Անկէ ետև աս ալ ըսէ՝ թէ որդին ճամբան է Ամպուրկ պիտի գայ. վերջապէս յայտնի ըսէ որ այս լուրը բերողը քու զաւակդ է, որ եկաւ հասաւ։ Մտածեց որ՝ եթէ ասանկ չընէ, խեղճ ծերը սաստիկ ուրախութենէն պիտի վտանգի. որ կրնար մահուանն ալ պատճառ ըլլալ։

Այս զգուշութենէն ընելէն ետև, որովհետև Ռօպէնսօն դեռ կըճանչնար ճամբաները՝ ելաւ գնաց հօրը տունը. ներս մտածին պէս սաստիկ այլայլեցաւ սիրտը, և աննպատմելի ուրախութեամբ վազեց հօրը վիզն ըն-

կաւ. իրար փաթթըւելով լա-ցին ուրախութ՟ե՜, և անանկ զող-ելան՝ որ չկրնէին թէ ինչ խօ-սին. մէկը կըսէր, ո՜հ սիրելի հայրիկ. մէկալն ալ կըսէր ա՜հ սիրական որդեակ, ուրիշ բան չէին կրնար խօսիլ: Սրտերնուն զօղէն լեզունին կապվեցաւ, մանաւանդ իրարու վրայ նայելով կըդ-մայլէին. սաանկ երկուքն ալ կապվեցան մնացին:

Մերջապէս քիչմը անցաւ քաղցր արտասուքմը անոյշ ա-նոյշ սկսաւ աչքերնուն վազել այտերուն վրայ, որ սրտերնուն ուժ տալով զօրացուց. վասն զի չա-փազանց ուրախութիւնը սխմէր էր սրտերնին[1]:

[1] Անսահման ուրախութիւնը մարդուս սիրտը ուժէն ընդարձակելով խօսքը և շունչը կար-գիլէ. նոյնպէս և սաստիկ տրտմութիւնը սիրտը սխմելով արտասուքներն ճամբաները կըգոցէ՝ թող չի տար լալու: Բայց սանոնց կէսերը չափազանց ըլլալուն սրտերնին գոց-վեցաւ չէին կրնար ուրախութեն խօսիլ. մինչև որ կէսերը թուլնալով սիրտը ընդար-ձակեցաւ, որ կըցան լալ և ուրախանալ:

Ինկ գերին այնչափ զանազան և շատ բաներ տեսնելով հոն՝ խիստ զարմացեր էր, լուռ չորս դին կը նայեր ու չէր կրնար նայելով կշտանալ. այնչափ որ՝ առջի օրը ի՞նչ բանի որ կը նայեր՝ բոլորը շփոթ կը տեսներ. վասն զի տեսարանին զմայլելով խռոված էր միտքը և երևակայութիւնը ։

Բայց երբոր Ռօպէնսօնին դառնալուն ձայնը և զարմանալի դիպուածները քաղքին մէջ լսուեցաւ, ամենուն բերանը Ռօպէնսօն էր. ամէնքը փափաքէին զինքը տեսնելու, և զարմանալի պատմութիւնը լսելու իրեն բերնէն ։ Ուստի հօրը տունը առտըւանց մինչև իրիկուն լեցուն մարդկը. աշխարհք հոն թափեցաւ. մինչև չէր համնիր՝ որ բոլոր օրը պատմութիւնը պատմէ ։

Որչափ որ բան կը պատմէր միշտ այս խրատս ծնողաց կուտար, որոնք իրեն մտիկ կ'ընէին ։ „ Թէ որ կըսէր՝ կուզէք սիրել

„ ձեր զաւակը, խրատ ըլլամ ձեզի
„ որ աղէկ կրթէք զանոնք ուս-
„ մամբ, բարի վարքով, բարե-
„ պաշտական սովորութ̃ք, պար-
„ կեշտութ̃ք, և աշխատանօք”։
Որչափ որ հօն տղաք և պատա-
նիք կուգային՝ անոնց ալ այս
խրատս կուտար։ «Սիրելի՛ որ-
„ դիք հնազանդ եղիք ձեր հօրն
„ ու մօրը, նաև ձեր վարժապետ-
„ ներուն. ինչոր ձեզի կըսորվե-
„ ցընեն աղէկ ուշ դրէք ջանա-
„ ցէք լաւ սորվելու. ա̃յ վախը
„ սրտերնիդ ըլլայ. զգո՛յշ կեցէք,
„ ոհ զգո՛յշ կեցէք դատարկութ̃է,
„ որ է մայր ամենայն մոլութ̃ց”։

Ռոպէնսոնին հայրը վաճա-
ռական ըլլալով՝ կուզէր որ որ-
դին ալ վաճառականութ̃է մէջ
մտնէ, ու սորվի. որպէս զի հայ-
րը մեռնելէն ետև տեղն անցնի։
Բայց Ռոպէնսոն երկար ատեն
աշխատանքի մէջ սորված ըլլա-
լով՝ խնդրեց որ իրեն հրաման
տայ հիւանութ̃ի (մարանկոզութ̃ի)

ընելու ։ Հայրը չուզեց որ զաւա-
կը վշտացընէ՝ հրաման տուաւ որ
ուզածն ընէ։ Ուստի Ուրբաթին
հետ միատեղ փայտեղէն բաները
կըշինէր. և այնչափ առաջ գնա-
ցին՝ որ տարիէն ետև իրենց շի-
նած զարմանալի բաները երևելի
վարպետները չէին կրնար շինել։

Գործատուն մը շինեցին ու
երկուքը միատեղ կաշխատէին.
անանկ հաւատարիմ և սիրելի
էին իրարու հետ՝ որ անհնար էր
իրարմէ զատվիլ բոլոր կեանքեր-
նուն մէջ։ Աշխատանքն ու բա-
րեպաշտութիւնը այնպէս սիրելի
էր երկուսին ալ, որ երկրորդ բը-
նութիւն էր եղած. մինչ զի՝ ան-
հնար էր որ կէս ժամ առանձին
պարապ անցնէին ։

Իրենց առջի առանձնական
վարքին յիշատակ ըլլալու հա-
մար՝ շաբաթին մէկ օրը հաստա-
տեցին, որ կղզին մէջ ինչպէս
որ էին՝ հոն ալ անանկ անցը-
նեն նոյն օրը. առանձին իրենց

աղօթքին և բանին հետ ըլլալով ուրիշի հետ կենակցութիւն չէին ըներ ։

Զարմանալի էր իրենց միաբանական սէրը․ պատրաստ էին ուրիշին պակասութեանց ներելու, կուզէին որ ամենուն աղէկութիւն ընեն, ամենուն հետ քաղցրութեամբ և մարդավարութեամբ կերթային ։ Այս առաքինութիւնները այնպէս սովորութիւն եղած էր իրենց, որ առանց կատարելու չէին կրնար հանգիստ ըլլալ․ և իրենց յատուկ եղած էր պարզ անկեղծ և գործունեայ բարեպաշտութիւնը ։ Որչափ անգամ որ Աստուծոյ անունը կուտային՝ ուրախութիւն ու սէրը կըփայլէր դէմքերնուն վրայ ։ Մեծապէս կըվշտանային երբոր կըլսէին՝ թէ այս սքանչելի անունը ստեղծողին՝ պարապ տեղը թեթևութեամբ բերան կառնեն կըյիշեն մարդիկ ։

Ահա աստուածային օրհնէնքն ալ իրենց վրայէն չի պակսեցաւ ․ ինչ

քանի ձեռք որ կըշղարնէրին՝ կաջողէր : Միշտ օգտակար գործքերու հետ ըլլալով աղէկ ապրեցան առողջ և հանգիստ կենօք մինչև 'ի խոր ծերութի հասան : Ուստի երկարատև ապագայ ժամանակը պարտական է որ յարգէ մեծարէ Ռօպէնսօնին և Ուրբաթին յիշատակն, որ այսչափ և այսպիսի բարի օրինակ թողին մարդկանց․ ցոյց տալով թէ ինչպէս անցընէ պիտի հանգիստ կեանք մէկ բարեպաշտ մարդ մը ինչ վիճակի մէջ որ ըլլայ, թէ այս աշխարհքիս երջանկութենը համար, և թէ յաւիտենական երանութենը համար :

# ՅԱՒԵԼՈՒԱԾ։

Ասկէ հոս կը լըմննայ այս գիրքս. սակայն ընդարձակ պատմութեանը մէջ երկար դրած է Ռոպէնսոնին մնացած վարքը, որ համառօտելով պատմենք։

Ռոպէնսոն հօրը սիրուն համար այս առանձնական կեանքին մէջ երկար մնաց ու գերիին հետ միասին զարմանալի կաշխատէր իրեն դրած կանոնովը, և ամենևին վարքը չի փոխեց՝ քանի որ հայրը ողջ էր. որպէս զի չըլլայ թէ վարքը փոխելով վիճակն ալ փոխուի. մինչև հարկադրի նորէն հայրը ձգէ ու ճամբորդութիւն ընելով ուրիշ տեղ երթայ։

Այս միջոցիս մէջ իրեն նաւապետը դառնայ կուգայ Ամպուրկ, որուն որ կեանքն ու նաւը ազատեր էր. որ Ռոպէնսո-

նին վիճակը տեսնելով իրենն շատ ընծաներ կուտայ ։ Այս ալ առած բաները ուրիշներուն կըբաժնէ․ ով որ իրեն աղէկութի ըրեր էր երթալու ատենը՝ կըրկին կըհատուցանէ, նմանապէս փորդուքալցի նաւապետին ալ տված ստակը կուտայ ։

Ռօպէնսօն կըպատմէ՝ թէ տէրութիւը ուզեց գատաստանական քննութիւ հաստատել իմ գըլխուս եկածները․ կանչեց նաւապետը բոլոր նաւավարներովը քննեց և վճիռ ըրաւ, թէ ես նաւակործութիւ այն կղզին ընկայ այսչափ տարի նստեցայ․ և նախ հօն ոտք կոխելուս համար իրաւամբք ես եղայ տէր կղզիին․ և այս թղթերը բոլոր հրապարակներուն մէջ փակուցին կըկարդային ։ Այս նաւը ելաւ նաւէն գնաց Ամերիգայ, ու քանիմը տարիէն ետև շատ բարիքով դարձաւ եկաւ․ և շատ բան ալ Ռօպէնսօնին տվաւ, մինչև որ

լաւ մը հարստացաւ ։ Ռօպէնսօնին հայրը 7 տարիէն ետև կըմեռնի . կառնէ Ուրբաթ գերին ու վաճառականութը կերթայ հնդկաստան . և որովհետև շատ կըփափաքէր որ նորէն դառնայ իր սիրական կղզին տեսնէ, 8 ամիսէն ետև կըհասնի Ամերիգայ իր կղզին ։

Տասը տարի անցեր էր կըսէ, որ զատվեր էի կղզիէս, տեսայ որ շատ բան փոփոխած էր . Թէպէտ սպանեօլները որ իմ տեղս դրեր էի, խիստ աղէկ նայեր էին կղզին, բայց Ինկիլիզները շատ վիշտ էին հասուցեր անոնց ։ Շատ անգամ ալ վայրենիները եկեր էին հոն ծեծկըվեր էին, և անոնցմէ 5 հոգի և քանիմը կընիկներ գերի էին ըրեր . որոնցմէ շատ հոգի բազմացեր էին լեցուն տղաքներով ։

Ռօպէնսօն ատեն մը կընստի հոն, ու կարգադրելով երկիրը բնակիչներուն կըբաժնէ, որ երկ-

րագործութիւն աշխատին. Նաև ինկիլթերայէն բերել կուտայ իրենց համար վառօդ, հրացան գործիք, թուր, կացին, բրիչ, ևն: Անկէ կելլէ կերթայ Պրասիլիա որ հոն հաստատէ բնակութիւը, որովհետև հոն բազմամարդ, և վաճառականութիւն տեղ ըլլալով շատ եւրոպացի կային: Պրասիլիայէն 9 տուն ինկիլիզ կըխրկէ հոն, որ բազմանան. նաև քանիմը կով, եզ, և խոզ կըխրկէ որ չի կար հոն. որոնք խիստ աղէկ աճեցան ու շատցան:

Անկէ ետև օր մը 300 հոգի վայրենիներէն կուգան Ռօպէնսօնին կղզին կըկոխեն, սակայն բնակիչները սաստիկ ծեծկվելով քաջութիւ զանոնք կըխորտակեն, և չարաչար կըվռընտեն. անանկ որ մարդ չի կրնար անկէ ետև հոն մօտենալ. ուստի բնակիչները հանգիստ կանցընեն իրենց կեանքը շարունակ աշխատելով

Ռոպէնսոնին կարգադրութիւնը ։

Ռոպէնսոն նորէն ելաւ գնաց իր կղզին նաւաւ. տեսաւ որ բըր-նակիչները շատցեր էին՝ խրկեց սպանեօլներուն կղզիէն մէկ ուղ-ղափառ քահանայ մը բերել տը-վաւ. որ խոհեմ և սրբակաց ըլ-լալով զանոնք ուղղափառութե մէջ հաստատեց. պսակ չեղած-ները պսակեց, և չի մկըրտած-ներուն քրիստոնէութի սորվե-ցուց ու մկըրտեց ։

Անկէ ետև նորէն եկաւ Ռո-պէնսոն վերի աշխարհքը, և հընդ-կաստան ծովը եկաւ, ու մեծ վաստակով դարձաւ Պրասիլիա. և անկէ իր կղզին կերթար կու-գար մինչև որ ծերացաւ և շատ փարթամացաւ ։ Ինչպես որ ինքը կըգրէ՝ թէ Պրասիլիայէն ելլելէս ետև հնդկաստան գնացի, անկէ եկայ հայրենիքս նստեցայ 10 տա-րի անցաւ ։

Այս Ճամբաներուն մէջ շատ բաներ ալ գլխէս անցան, և շատ

կերպ կերպ վտանգներէն ազա-
տեցայ, մինչև որոշեցի որ ալ
տեղմը չերթամ. որ 72 տարուան
էի երբոր եկայ Ամպուրկ նստայ
Ուրբաթ գերիիս հետ միատեղ։
Այս դիպուածներուս մէջ լաւ
սորվեցայ՝ թէ մարդ մը հան-
գիստ և աղէկ ապրելու համար
պէտք է որ ըլլայ առաքինի, աշ-
խատասէր, առանձնակեաց, և
երկայնամիտ. որով խիղճմտան-
քը մաքուր պահելով կրնայ ըլ-
լալ ա̅ծապաշտ, և երջանիկ։

